# ՔՐԻՍՏԱՓ. ԿՈԼՈՄԲՈՍ

## ԿԱՄ

# ԱՄԵՐԻԿԱՅԻ ԳՏՆՈՒԻԼԸ

*ԳԱՂՂԻԵՐԷՆԷՆ*

ԱԶԱՏ ԹԱՐԳՄԱՆՈՒԱԾ

---

Բ. ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ



ՎԻԷՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1880.

1

# ՑԱՆԿ

## ՊԱՏՐԱՍՏՈՒԹԻՒՆ



## Ա. ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ

## Բ. ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ

## Գ. ԵՒ Դ. ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ

———

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Եթէ մարդու մը մեծութիւնը՝ իր ըրած գիւտին մեծութենէն եւ անկից յառաջ եկած օգուտներէն չափելու է, անշուշտ աշխարհքիս ամենէն մեծ ու երեւելի մարդիկներուն կարգը դնելու է զՔրիստափոր Կոլոմբոս, որովհետեւ իր գիւտն ալ աշխարհքիս մէջ պատահած ամենէն մեծ դէպքերէն մէկն է։ Մեր Ազգայինները ասանկ երեւելի մարդու մը վարուցը տեղեակ ընելու եւ իր ըրած գիւտին մանրամասն պարագաներն առջեւնին դնելու բաղձալով՝ աս պատմութիւնը կը հրատարակենք։ Բայց վախճաննիս՝ միայն պատմական ծանօթութիւն տալ չէ, հապա նաեւ ան որ մէջէն կենցաղագիտական ու բարոյական խրատ առնուի. որովհետեւ աս գրուածքիս գրեթէ ամէն մէկ երեսը կենցաղագիտութեան ու բարոյականի մէյ մէկ դաս է։

Կը յուսանք որ Ազգայինք աս մեր փոքր աշխատութիւնը սիրով կ՚ընդունին. եւ թէ՛ պատմական տեղեկութեամբ կը զուարճանան, թէ՛ բարոյական օգուտ կը քաղեն։

---

# ՔՐԻՍՏԱՓ ԿԱԼՈՄԲՈՍ

## ԿԱՄ

# ԱՄԵՐԻԿԱՅԻ ԳՏՆՈՒԻԼԸ

---

## ՊԱՏՐԱՍՏՈՒԹԻՒՆ

### Ա.

*Լուսիտանացւոց՝ ծովով Հնդկաստան ճամբայ գտնելու համար ըրած զանազան ջանքը:*

ՏԱՍՆՈՒՀԻՆԳԵՐՈՐԴ դարուն սկիզբները նաւապետները խելքով մտքով տար զբաղած էին, որ ծովով Հնդկաստան երթալու ճամբայ մը գտնեն. բայց ամենէն աւելի Լուսիտանիայի տէրութիւնն էր, որ Ափրիկէին բոլորտիքն անդադար ճամբորդութիւններ ընել կու տար:

Ժիլիանէս 1433էն սկսեալ՝ նաւարկութիւն կ'ընէր ու Նուն կամ Պոյատոր հրուանդանէն անդին անցած էր: Իրմէ յառաջ ամենեւին Եւրոպացի մը անկից անդին գացած չունէր, իսկ հին աշխարհագիրները կը կարծէին որ Ափրիկէ հարաւային կողմանէ իրեն երկայնատարած նահանգներովն Ասիային հետ միացած, եւ Հնդկաստանի ծովը երկու ցամաքի մէջ ծոց կամ լիճ մը ձեւա-

ցած ըլլայ. դարձեալ կը համարէին որ ամէն ծովերն ալ Միջերկրական ծովուն պէս իրենց չորս կողմը երկիր ունին։

Բայց արդէն յառաջուընէ աւանդութիւն մը պահուած ըլլալով որ Քրիստոսի ծնընդենէն 619 տարի յառաջ Փիւնիկեցիք Ափրիկէին չորս դին նաւարկութիւն ըրած են, Լուսիտանացիք՝ Նուն հրուանդանին սահմաններն անցան նէ՝ սկսան փնտռել որ արդեօք ստուգիւ Ափրիկէին բոլորտիքն ասանկ ճամբայ մը կա՞յ։ Աս պատճառաւ Լուսիտանիայի Յովհաննէս Ա. Թագաւորին որդին՝ Հենրիկոս իշխանը բոլոր ճգամբ ատոր ետեւէն ինկաւ. ինք աշխարհագրութեան ուսումը յորդորեց ու ոտք հանեց, որ ան ատենը շատ ետ մնացած էր, վասն զի դեռ եւ ոչ երկրին ձեւը կը ճանչնային։ Կողմնացոյցը նոր գտնուած ըլլալով՝ ատոր օգնութեամբը կրնային բովանդակ Ովկիանոսին վրայ աւելի դիւրութեամբ նաւել. բայց նոյն ատենը կարծիք մ'ալ կար որ այրեցած գօտւոյն տաքութեան ամենեւին չիդիմացուիր, եւ հոն գացողը ստուգիւ կը մեռնի։ Հենրիկոս՝ Ալկարուիայի Թագաւորութեան Սակրս բերդաքաղաքին մէջ դիտանոց մը շինել տուաւ եւ ուսումնարան մը հաստատեց, ու շատ գիտուն մարդիկներ հոն կանչեց, որոնք գործիքներն ու աշխարհացոյցները կատարե-

լագործեցին, եւ կամաց կամաց վերցուցին ան նախապաշարմունքը՝ որով մարդիկ կը կարծէին թէ հարաւային կողմը նաւելով՝ չբնակուելու երկրի կը պատահուի. եւ Ափրիկէին բոլորտիքն եղած նաւագնացութիւններուն ան աստիճանի օգնեցին, որ 1447ին Կուինէայի եզերքը հասան, եւ 1473ին կաղանդին օրը հասարակածէն անդին Աննապոնա կղզին գտան։ Ուստի աս սարսափելի սահմանը մէյ մը անցուած էր, եւ այրեցեալ գօտին նաւագնացներուն ալ վախ մը չէր պատճառեր։ Նոյն տարին Հենրիկոս իշխանը մեռաւ, եւ սաստիկ բաղձանքին կատարումը, այս ինքն Ափրիկէին քովերէն Հնդկաստան երթալու ճամբուն գտնուիլը չկրցաւ տեսնել։

Այսպիսի ատեններ էր որ Քրիստափոր Կոլոմբոս ծովային աշխատանքներու եւ վտանգներու մէջ կը կրթուէր ու կը պատրաստուէր։

## Բ.

### Կոլոմբոսին առաջին տարիները։

Քրիստափոր Կոլոմբոս Իտալիայի Ճենովա քաղաքը ծնաւ*։ Բնական յօժարութեամբ

* Կոլոմբոսի կենաց առաջին տարիները մթին ու աննշան ըլլալուն՝ իր ծննդեան տեղւոյն վրայ շփոթութիւններ ծագեցան։ Երբոր Կոլոմբոս իր հանճարովը մեծ անուն ու համբաւ հանելու սկսաւ, ան ատեն Բիաչենցայի մէջ քանի մը անուանի

մը պզտիկուց աշխարհագրութիւն եւ աստեղագիտութիւն սորվելու ետեւէ եղաւ։ Ուսում սորվելու համար ծնողքը զինքը Բաւիա խրկեցին։ Դեռ տասնուչորս տարուան եղած ատեն՝ աշխարհագրութեան տախտակներ քաշել, գծագրութիւն ընել քաջ գիտէր. անանկ աղէկ ալ գիր ունէր, որ միայն անով իրեն ապրուստը կրնար ճարել. բայց ամէն բանէ աւելի ծովի վրայ ճամբորդութիւն ընելու կը բաղձար, որուն ծնողքը հրաման տուին։ Կոլոմբոս ուրիշ Կոլոմբոյ անունով ծովապետի մը քով մտաւ, որն որ իր ազգականն էր, ու Ռենատոս թագաւորին որդւոյն՝ որն որ Յովհաննէս տ'Անժու կը կոչուէր, Նէապոլսոյ թագաւորութիւնը նորէն առնելու համար պիտի օգնէր։

Քիչ մը վերջը ինք Կոլոմբոս ալ նոյն թագաւորին ծառայութեան մէջ նաւերու

տներ սկսան զրուցել թէ Կոլոմբոս իրենցմէ է։ Բայց աս պահանջումը ճշմարիտ չէ. ինչու որ Կոլոմբոս իր կենդանութեան ատեն Ճենովային միշտ իբր իր հայրենեացը բարիք կ'ընէր, Ճենովայի հասարակապետութեան պարգեւներ ըրաւ, իր որդւոյն ալ պատուիրեց որ Ճենովայի մէջ իրեն ցեղէն միշտ մէկը պահուի, ու մեռած ատեն կտակին մէջը յայտնապէս գրած էր թէ Ճենովա ծնած եմ։ Նաեւ իր ծնողքին ով ու ինչ ցեղէ ըլլալը չիգիտցուիր. ոմանք կ'ըսեն թէ Ճենովայի կտաւամանի մը տղայ էր, ուրիշները կ'ըսեն թէ ազնուական տնէ էր։ Ի՛նչ որ է նէ, աս ստոյգ է որ Կոլոմբոսի ծնողքը իրենց երեք որդիքը, Քրիստափոր, Բարթուղիմէոս ու Ցիեկոյ, աղէկ կրթած էին։

հրամանատար եղաւ. երկայն ատեն Միջերկրական ծովուն վրայ նաւարկութիւն կ'ընէր, ու շատ անգամ մաւրիտանացի Հէներու դէմ քաջութեամբ կռուեցաւ: Իր կենացը առաջին տարիներուն վրայ տեղեկութիւննիս այնչափ է, մանաւոր դիպուածներու վրայ աւելի լուսաւորութիւն մը չունինք: Փեռնանտոյին պատմածին նայելու ըլլանք, Կոլոմբոս երեսունուվեց տարւան եղած ատենը՝ զարմանալի դիպուածով մը Լուսիտանիայի երկիրը գնաց: Փեռնանտոյի պատմութիւնն ասէ: Նաւապետ մը կար, կ'ըսէ, որն որ Կոլոմբոյ ծովապետին եղբօրորդին կը կարծուի. ասիկա ծովու յելուզակներու (կոր-սաններու) դէմ այնչափ պատերազմ ըրած ու յաղթած էր, որ ամենուն զարհուրելի եղած էր, մինչեւ մայրերը տղաքնին վախցընել ուզած ատեննին՝ Կոլոմբոյ նաւապետին անուամբը կը սպառնային: Քրիստափոր Կոլոմբոս աս նաւապետին նաւատորմղին մէկ նաւուն հրամանատարն էր: Ան (1470ին) ատենները՝ որ Ճենովայի ու Վենետիկի մէջ թշնամութիւն կար, չորս վենետիկցի նաւեր մեծամեծ հարստութիւններով լեցուած՝ Հոլանտայէն կու գային: Կոլոմբոյ Արքիպելագարի մօտ իր նաւերովը անոնց վրայ յարձակելով՝ կռուիլ սկսաւ: Քրիստափոր Կոլոմբոս իր նաւը թշնամիներուն նաւերէնն մէկուն մօտիկցուց.

երկու նաւերը շղթաներով եւ ճանկերով իրարու կապուեցան, եւ կռիւը սկսաւ: Բայց իրարու վըրայ բռնկած նիւթեր նետելով՝ նաւերը սկսան այնպէս այրիլ, որ կրակը մարելն անկարելի եղաւ: Նաւապետները վտանգը տեսնելով՝ իրենք զիրենք ծովը նետեցին: Կոլոմբոս՝ որ աղէկ լողալ գիտէր, թիակի մը օգնութեամբ երկու փարսախ տեղ լողալով՝ Լուսիտանիայի եզերքն ելաւ: Ասանկով Կոլոմբոս Լուսիտանիա մտաւ ան ատենը՝ երբոր աս թագաւորութեան մէջ Հնդկաստան երթալու ճամբուն վրայ մեծամեծ խնդիրներ կ՚ըլլային:

## Գ.

### Կոլոմբոսի Լուսիտանիա մնացած ժամանակը:

Քրիստափորին նոր երկիր գտնելու բաղձանքը Լուսիտանիա կեցած ատեն շատ աճեցաւ: Հօնտեղը Բարթուղիմէոս անունով ասպետի մը աղջկան հետ կարգուեցաւ: Աս Բարթուղիմէոս ԺԵ. դարուն անուանի նաւապետներէն մէկն էր, որն որ Հենրիկոս իշխանին տակ նաւարկութիւն ըրած, եւ Կանարեան կղզիներէն՝ Բորդոյ Սանդոյ ըսուած կղզւոյն մէջ գաղթականութիւն մը հաստատած էր: Բարթուղիմէոսին այրի կինը իր էրկանը ճամբորդութիւններէն ինչ որ գիտէր՝

Կոլոմբոսին կը պատմէր։ Անոր ամէն թղթերն ու աշխարհացոյցները Կոլոմբոսին նոր մտածելու նիւթ մը եղան. ամէն բանէն աւելի Ովկիանոսին վերաբերեալ բաները կը սորվէր։ Կուինէա ճամբորդութիւն ընող նաւերով՝ ինքն ալ իր կնոջ հետ մէկտեղ պտըտեցաւ. վերջապէս քիչ մը ատեն Բորդոյ Սանդոյ մնաց, ուր որ իր կինը կալուածներ ունէր, ու հոն Տիէկոյ որդին ծնաւ։ Նոյն տեղը Պետրոս Գորրէա անունով անուանի նաւապետի մը հետ շատ անգամ կը տեսնուէր։ Եւ որովհետեւ Կոլոմբոս սքանչելի աշխարհագրութեան տախտակներ կը քաշէր, անոր համար ամենէն երեւելի գիտուններն ալ սկսան իր վրան մեծ համարում ունենալ ու հետը թղթակցիլ կամ տեսնուիլ։ Ամենէն աւելի՝ Պօղոս Դոսգանելլի անունով Ֆիորենցացի գիտնականին հետ սիրով կապուած էր։ Այս երկու գիտուն մարդիկները՝ իրենց քննութիւններէն ծագած տեղեկութիւններն իրարու պատմելով կը զուարճանային։

‘Նոյն ժամանակները Կոլոմբոս իր մտքին մէջ այս մեծ խորհրդին վրայ սկսաւ մտածել, թէ Լուսիտանացւոց գացած ճամբէն ուրիշ ճամբով մ'ալ կրնայ Հնդկաստան նաւարկութիւն ընել։ Շատ ջանաց ու աշխատեցաւ որ իր ենթադրութիւնը մաթեմատիկական ցուցով հաստատէ։ “Երկիրը կլոր է, կ'ըսէր

Կոլոմբոս, (աս ճշմարտութեան վրայ ինք ամենեւին տարակոյս չունէր, որուն ան ժամանակը շատ գիտուններ դէմ կը դնէին․) թէ որ կլոր է նէ, ուրեմն կրնայ բոլորտիքը պտըտցուիլ․ եւ թէ որ աստիճաններու բաժնուելու ըլլայ, ու տարածութեան երեք մասը՝ Կանարեան կղզիներէն մինչեւ Ասիայի վերջի ծայրը՝ ճանչցուած սեպուի, ուրեմն Ովկիանոսը՝ աս տարածութեան չորս մասին մէկը պիտ՚որ ունենայ, ու թէ որ միշտ դէպ ի արեւմուտք նաւարկուելու ըլլայ՝ պէտք է որ Ասիայի արեւելեան եզերքը հասնուի„: Աս հետեւութիւնն ուղիղ էր․ բայց Կոլոմբոս կը խաբուէր հեռաւորութեան վրայ, զորն որ չէր կրնար ճշդիւ հաշուել․ եւ ամենեւին մտքէն ալ չէր անցներ որ Ասիայի ու Եւրոպայի մէջ Ովկիանոսին ընդարձակ դաշտերուն վրայ հին աշխարհքին չափ երկիր մ՚ալ ըլլայ: Ինք շատ քննութիւններ կ՚ընէր․ իր կարծիքը հաստատելու համար Մարկոս Պօղոսին ԺԳ․ դարուն մէջ ըրած ճամբորդութիւնը յառաջ կը բերէր․ որ Ասիայի մէջ՝ անծանօթ ու աշխարհագիրներու չգիտցած տեղերը հասած էր, ու Ասիայի արեւելեան կողմի Արքիպեղագոսներուն ստորագրութիւնն ըրած էր: Բոլոր աս բաները Կոլոմբոսին տեսական մտածմունքները հաստատելով, իր առաջին անորոշ գաղափարները հաստատուն

տուգութեան մը փոխեցին։ Ա՛լ հիմա առաջուան պէս չէր մտածեր որ արդեօք արեւմտեան կողմէն Հնդկաստան հասնիլը կարելի՞ է թէ չէ. հաստատուն գիտէր որ աս ճամբան կայ, եւ միայն գործադրութեան միջոցներ կը փնտռէր։

Բայց աս մտածմունքը՝ որն որ աս օրուան օրս պարզ բան մը կ'երեւայ, որովհետեւ իբր յայտնի է, երբ որ Կոլոմբոս սկսաւ ուրիշներուն յայտնել, վերջի աստիճանի յանդըգնութիւն կամ խենթական մտածմունք մը երեւցաւ։ Ամէն կողմանէ աս առարկութիւնները կ'ըլլային. Ո՞վ ստուգեց որ երկիրը կլոր է։ Թէ որ կլոր ալ է նէ՝ ընդարձակութիւնը ո՞րչափ է։ Կարելի՞ է որ բոլոր Ովկիանոսին ընդարձակութիւնն անցնուի։ Կարելի՞ է ցամաքէն այնչափ հեռանալ ու անծանօթ տեղեր երթալ։ — Աս առարկութիւնները կ'ընէին խորունկ մտածողները, թեթեւամիտ մարդիկ ալ նոյները կը կրկնէին. եւ ամէնքը մէկտեղ Կոլոմբոսին մտածմունքը ցնորք կը համարէին, ու իր երկայն քննութեամբ գըտած ու բարձր եւ կրօնական զգածմամբ գլուխ հանել ջանացած խորհուրդներուն վրայ կը ծիծաղէին։ Բայց ինք իր գիւտին վրայ ապահով ըլլալով՝ աս հակառակութիւնները բանի տեղ չէր դներ, եւ գլուխ հանելու միջոցներ կը փնտռէր։

## Գ.

*Ցերուսթիւններուն կէտ լրած առջի փորձերը:*

Կոլոմբոս իր ձեռք զարնելու գործքին անբաւ առաւելութիւններն ու շահը միտքը բերելով՝ կ'ուզէր որ անոնցմով իր հայրենեաց օգուտ ընէ: Անոր համար ամենէն յառաջ Ճենովայի ծերակուտին թուղթ մը գրեց. բայց երբ որ աս թուղթը չհաւնուելով մերժուեցաւ, որոշեց որ իր հայրենեացը զլացած օգնութիւնը՝ օտար տէրութիւններէն փնտռէ: Մէկ մը Յովհաննէս Բ. Լուսիտանիայի թագաւորին առջեւն ելլել ուզեց: Արդէն իր գուշակութիւններուն ճշմարտութեանը վրայ այնպէս վստահ էր, որ արտաքոյ կարգի պայծառութեամբ ու սաստիկ եռանդեամբ կը մեկնէր, եւ աս նիւթիս վրայ խօսելու համար թագաւորներու առջեւը կամ գիտնոց ժողովքներու մէջ գտնուած ատեն՝ ամենեւին վախ կամ երկբայութիւն չէր ունենար:

Յովհաննէս Բ. անանկ մարդ մըն էր՝ որ գիտութեանց եւ գիւտերու յառաջացմանը սաստիկ բաղձանք ու փոյթ ունէր. բայց քիչ մը յառաջ առթի մը մէջ դիւրահաւան գտնուելով՝ խաբուած էր: Այս ինքն՝ իրեն պատմած էին թէ Եթովպիայի մէջ Յովհաննէս անունով քահանայ մը մեծ քրիստոնէայ տէրութիւն մը կը կառավարէ: Ասոր աս

լուրէն խաբուելով՝ Եթովպիա քարոզութեան համար մարդ խրկած էր, որոնք ամէն դի շատ աշխատանքով փնտռելէն ետեւ՝ պարապ ետ դարձած էին, ու ծաղրալի բան մ'եղած էր: Ասոր համար թագաւորը ինք իրմէ բան մ'որոշել չուզելով՝ Կոլոմբոսի առաջարկութիւնը՝ մասնաւոր ժողովքի մը քննութեան տակ ձգեց: Բայց աս քննութիւնն ըլլալու ատեն՝ թագաւորը ժողովքին անդամներէն մէկուն նենգաւոր խորհրդին ետեւէն գնաց, որն որ մէկ կողմանէ կը ձեւացընէր որ Կոլոմբոսին առաջարկութիւնը պարզ ցնորք ու երեւակայական բան մըն է. բայց մէկալ կողմանէ թագաւորին խրատ կու տար որ ճշմարտութիւնը ստուգելու համար՝ առանց Կոլոմբոսին բան մ'իմացընելու՝ անոր տուած տեղեկութիւններուն համեմատ՝ նաւով մը փորձ մ'ըլլայ: Ասիկա բուն գիւտը գտնողը պատուէն զրկել էր. բայց անօրէն խորհուրդը յառաջ չգնաց: Այսպիսի վտանգաւոր գործք մը գլուխ հանելու համար մարդկային բնութենէ վեր եռանդ ու քաջասրտութիւն պէտք էր: Խրկուած նաւին նաւապետը առջի օրերը ձանձրանալով՝ ետ դարձաւ եւ սկսաւ Կոլոմբոսի մտածմունքը ծաղր ընել:

Կոլոմբոս քննիչ ժողովքին խնդրելովը՝ շինած էր ան թղթերն ու տախտակները, զորոնք որ խաբէական գործքին համար գոր-

ծածած էին։ Անոր վրայ սաստիկ նեղանալով՝ Լուսիտանիա թողուց գնաց։ Բայց նոյն տէրութենէն ելլելուն ուրիշ պատճառներ ալ կային. իր կնիկը մեռած եւ անոր փոքր ժառանգութիւնն արդէն լմնցած էր. ընտանիքն ուրիշ տեղէ մը ապրուստ չունէին, բայց եթէ Կոլոմբոսի շինած աշխարհացոյց տախտակներէն. իսկ ինք բոլոր ժամանակն իր գիւտին գործածելով՝ սանկ բաներու զբաղելու ատեն չէր ունենար. ուստի վերջին կարօտութեան մէջ ինկած էր։

Աս բանս 1484ին պատահեցաւ։ Չիգիտցուիր թէ արդեօք աս խեղճ տարւոյն մէջ Կոլոմբոս ինչ եղաւ ու ինչ ըրաւ. կը կարծուի որ Ճենովա գացած ու հոն անձամբ մեկնելով՝ իր մտածմունքը նորէն իրեն հայրենեաց ընծայած ըլլայ. բայց երեսը նայող եղած չըլլայ։ Կ'ըսուի նաեւ, բայց ստոյգ չ'երեւար, որ Վենետիկ ու Փիորենցա ալ գացած ըլլայ. Աս ստոյգ է որ Սպանիա եկաւ, ուր որ Աստուծոյ նախախնամութիւնը՝ Ռապիտա վանքին մէջ իրեն օգնութիւն ու բարեկամներ շնորհեց։

## Ե.

### Կոլոմբոսի՝ վանքին մէջ բնակած ժամանակը:

Քրիստափոր Կոլոմբոս աս ժամանակը գրեթէ քառասուն՝ութը տարուան էր, մազերը ժամանակէն յառաջ ճերմկցած էին,

բայց իրեն ծանր ու յարգելի կերպարանքին զարդ մը կ'ըլլային։ Դէմքը երկայնաձեւ, արծուունգն, աչուրները փայլուն ու կենդանի, խօսակցութիւնն ազնուական, կերպարանքը հրամայող՝ բայց քաղցրութեամբ ու հեզութեամբ չափաւորուած, հասակը բարձր, վարմունքը բնական ու վայելուչ, շինծու բան ամենեւին չունէր, բոլոր ընթացքը սատիկ պարզ, ծախքը չափաւոր, վերջապէս ամէն բանն իմաստուն ու կարգաւորեալ։ Զինքը երեւելի ընող ձիրքերուն մէկն ալ իր ճարտարախօսութիւնն էր, որն որ պարզ՝ բայց կենդանի էր։ Երբոր իրեն ստոյգ երեւցած կարծիք մը մեկնելու ըլլար, շատ պայծառ ու յայտնի եղանակաւ կը խօսէր, ու ան բաները՝ որոնք ուրիշին բերանը չոր ու ցամաք կ'երեւային, իրեն բերանը զուարճալի կ'ըլլային։

Աշնան իրիկուն մըն էր, Կոլոմբոս իր Տիէկոյ որդւոյն ձեռքէն բռնած՝ Սպանիայի Անտալուսիա գաւառին մէջ Բալոսի նաւահանգստէն կէս մղոն հեռու, Փրանկիսկեան կրօնաւորներուն Սանդա Մարիա դէ Ռապիտա բուած վանքին դրանը մօտիկցաւ, եւ դռնապանէն՝ տղուն համար քիչ մը հաց ու ջուր խնդրեց. Յովհաննէս Բերէս տէ լա Մարգէնա՝ վանքին մեծաւորը բակէն անցնելու ատեն աս օտարականը տեսնելով՝ անոր մօտիկցաւ։ Ստոյգ է շատ անգամ աղքատներն ու ճամ-

բորդները ողորմութիւն ընդունելու համար Ռապիտայի վանքին առջեւը կը կենային. բայց Յովհաննէս Բերէս իր սուր մտքովը մէկէն իմացաւ թէ ան մարդը հասարակ աղքատ մը չէ։ Անունը հարցուց. եւ թէպէտ Կոլոմբոսի անունն ան ատեն անծանօթ էր, բայց անոր ազնուական ճարտարախօսութիւնը եւ քաջասիրտ բնութիւնը՝ որ կ'երեւար թէ աս յետին թշուառութեան ու աղքատութեան մէջ իրեն նեցուկ մըն էր, Բերէսի սիրտն անոր հետ կապեցին։ Յոգնած ես, ըսաւ օտարականին, տղադ չիկրնար ալ քալել. եկուր վանքը քիչ մը հանգչէ, ու քանի մը օր մեր քովը մնացիր։ Խեղճ հայրը շնորհակալ ըլլալով՝ հրաւէրն ու իրեն տրուած բնակարանն ընդունեցաւ, ու մէկէն իմացաւ որ Մեծաւորն անանկ մարդ մըն է, որուն կրնայ վստահիլ։

Բերէսին սէրը քանի գնաց աւելցաւ, երբ որ իմացաւ թէ իր հիւրը նաւավար է, եւ թէ շատ անգամ նաւապետի պաշտօնով Ովկիանոսի վրայ ճամբորդութիւն ըրած է, ու Կուինէա եւ Իսլանտա ալ գացած է, որոնք ան ժամանակներն աշխարհքիս երկու վերջին ծայրերը կը կարծուէին։ Նոյն դարուն մէջ շատ կողմեր նոր նոր երկիրներ գտնուելուն համար՝ երբ որ սանկ հեռաւոր ճամբորդութիւններու վրայ խօսք կ'ըլլար ու բան մը կը

պատմուէր, ամէն մարդ սաստիկ հետաքրքրքրութեամբ մտիկ կ'ընէր: Կոլոմբոս իր սիրտը Թերէզին բացաւ, ու յայտնեց որ Նոր երկիր մը գտնելու համար մեծ ճամբորդութեան մը ձեռք զարնելու միտք ունի, եւ թէ շատ ատենէ վեր իշխաններու եւ կարողութիւն ունեցող ազնուականներու ետեւէն ինկած է որ աս գործքին օգնեն, որուն յաջողութիւնն իրեն անտարակոյս կ'երեւար. բայց ասոնք զինքը մերժելով՝ անօգուտ ճամբորդութիւններով ունեցածին՝ յետին մնացորդն ալ կորսնցուցած է, սակայն աս գործքին օր մը յաջողելէն յոյսը կտրած չէ:

Թերեւս մարդ ճանչնալու մեծ քաջութիւն ունէր. արդէն իր հիւրին վրայ մեծ հանճարի ու ոգւոյ մը կնիք դրոշմուած տեսած էր, մտքին մէջ անոր ընդարձակ տեղեկութեանցը վրայ գովեստներ կու տար. որչափ որ իրեն հետ կը խօսակցէր, այնչափ աւելի զարմանքը կ'աւելնար, եւ անանկ մէկ մարդը այսպիսի մեծամեծ գործքեր գլուխ հանելու շատ յարմար կը դատէր: Միանգամայն իմաստուն եւ գիտութեան սէր ունեցող մարդ ըլլալով՝ մտածեց որ աս աստիճանի տեղեակ ու լուսաւորեալ մարդու մը առաջարկութիւնները պէտք չէ առանց քննութեան մերժել: Բայց մինակ իր դատաստանին վստահիլ չուզելով՝ Թալաւէն

կանչել տուաւ Կարչխա Փեռնանդէս գիտուն բժիշկը, որ իր բարեկամն էր, եւ աղաչեց որ ինքն ալ իր գիտութեամբն օգնէ եւ զԿոլոմբոս քննեն:

Կոլոմբոս յանձն առաւ որ անուն չունեցող կրօնաւոր մը՝ դեռ իր տկար պաշտպանութիւնը չխոստացած՝ զինքը բազմապատիկ փորձերու տակ ձգէ: Գրեթէ ամեն իրիկուն Բերէս եւ Կարչիա Փեռնանդէս ան հին վանքին մէջ՝ կը ժողվուէին, եւ Կոլոմբոս ալ իրեն աս երկու բարեկամներուն առջեւը բոլոր դիտաւորութիւնները կը յայտնէր, եւ ամեն մէկ փոքր մասին մէջն ալ կը ցուցընէր, որ աս բանիս յաջողելուն յոյսը ինչ մտածութեանց վրայ հիմնուած է: Գլխէ գլուխ բոլոր իր դժբախտութիւնները մէկիկ մէկիկ կը պատմէր: Նաեւ իր գիտուն Ֆիորենցացի Պօղոս բարեկամին կարծիքն ալ իրեն օգնական կ'առնէր, վասն զի անկից իր կարծիքին համաձայն նոր տեղեկութիւններ ընդունած էր: Պօղոս իր բարեկամը իրեն աշխարհացոյց տախտակ մը խաւրած էր, որուն մէջ Ասիայի սահմանները ու Եւրոպայի եւ Ասիայի մէջտեղը եղած Ովկիանոսը նշանակուած էին: Միանգամայն Մարկոս Պօղոսին պատմածէն առնելով՝ կը գրուցէր որ Գաթայի ու Մանճի ըսուած թագաւորութիւններ կան, որոնք շատ զօրաւոր ու երեւելի թագաւորութիւն-

ներ են. եւ աւելի Ջիբանծի կամ Սիբանկոյ ըսուած կղզւոյն վրայ կը խօսէր, ուր առատ ոսկի ու ազնիւ քարեր կան, կ՚ըսէր, ու շատ փառաւոր քաղաքներ ունի, եւ պալատ մ՚ալ կայ, որն որ ոսկի թիթեղներով ծածկուած է: Ճամբորդներուն այսչափ սաստիկ չափազանցութիւնը՝ Ճենաստանի ու Ճաբոնի վրայ էր, որոնք իրենք Գաթայի ու Սիբանկոյ կ՚անուանէին: Պօղոս Գոսգանելլի՝ աս երկիրներն ու անոնց հեռաւորութիւնը չգիտնալով՝ կ՚ըսէր թէ աս կղզիները կրնան Եւրոպայի արեւմտեան կողմը հինգհարիւր փարսախ չափ հեռու ըլլալ: Աս կարծիքները թէպէտ եւ անկատար՝ բայց նոյն ժամանակուան համար շատ պատուական ու շատ երեւելի էին, ու Կոլոմբոսին միտքը դրածին շատ կ՚օգնէին: Կոլոմբոսին մտերիմ բարեկամը միշտ զինքը քաջալերելով կը գրէր. “Նաւէ դէպ ՚ի արեւմուտք, կ՚ըսէր, պէտք է որ երկիր գտնես, անոր վրայ ամենեւին մի տարակուսիր,,:

Կոլոմբոս Բերէսին քովն ալ շատ տեղեկութիւններ ժողվեց: Բալոսի նաւահանգըստին նաւապետներէն մէկը՝ երեք բարեկամներուն հաստատեց որ անգամ մը Ովկիանոսին վրայ ճամբորդութիւն ըրած ատենները, նաւերնին այնչափ հեռու ընկած էր դէպ ի հիւսիսային արեւմուտք, որ Խալանտայի Միզէն հրուանդանը նաւին դէպ ի արեւելեան կողմը

մնացած էր, եւ նոյն ատենը բոլոր նաւաստիները կ՚ըսէին թէ ծովին երեւոյթը կը ցուցընէ որ մօտ տեղերը երկիր ըլլայ։ Կոլոմբոս ալ անձամբ դէպ ի Խոլանտա ճամբորդութիւն ըրած ըլլալով՝ աս նաւապետին խօսքը շատ հաւանական սեպեց։

Կոլոմբոս կը յիշէր միանգամայն որ Պետրոս Գորրէա արտաքոյ կարգի մեծ ծառերու վրայ, ու մարդու ձեռքով գործուած՝ արեւելքի կողմանէ Կանարեան կղզիներուն ծովեզերքը լողալով եկած փայտերու վրայ խօսած էր. ինքն ալ իրգք եղէգներ տեսած էր, որ արեւմտեան հովը դէպ ի Բորդոյ Սանդոյ կը բերէր, եւ կը կարծէր որ Ասիայէն բերած է։ Անոնցմով Բերէս երթալով աւելի կը համոզուէր որ Կոլոմբոսի փորձը պիտ՚որ յաջողի։ Ամէն օր զինքը կը քաջալերէր ու մինչեւ երկրորդ տարին քովը պահելով՝ ճշմարիտ բարեկամի մը պէս իրեն սէր կը ցուցընէր։ Իր հայրենասիրութեամբը կը բաղձար որ աս Կոլոմբոսին գտնելու գիւտին օգուտները Սպանիան ունենայ։ Անոր համար անոր ձեռքը նամակ մը տուաւ, որ Փրատոյի վանքին Փերդինանդ Գալաւերա մեծաւորին տանի, որն որ թագուհւոյն խոստովանահայրն էր. իսկ որդին իր քովը պահեց որ վանքին մէջ կրթէ, եւ Կոլոմբոսն ընդգրկելէն ու քաջալերելէն ետքը՝ իրարմէ բաժնուեցան։



## Սպանիայի արքունիքը:

Ան Թագուհին՝ որուն որ կ՚երթար օտարական Կոլոմբոսը, ձեռքը վանքի մը մեծաւորէն գրուած նամակէն ուրիշ ապաւէն մը չունենալով, Կաստիլիայի հզօր Եղիսաբէթ թագուհին էր:

Եղիսաբէթ՝ Կաստիլիայի Յովհաննէս Բ. թագաւորին աղջիկն էր, որ իր երկու եղբայրները, այս ինքն Հենրիկոս թագաւորն ու Ալփոնսոս իշխանը մեռնելէն ետքը՝ Կաստիլիայի թագուհի եղած էր: Կաստիլիայի թագաւորութիւնը՝ ժառանգութիւններով ու Մաւրիտանացւոց դէմ եղած աշխարհակալութիւններով շատ մեծցած ու պայծառացած, եւ հարաւային կողմերուն առաջին թագաւորութիւնն եղած էր: Եղիսաբէթ՝ Կաստիլիայի թագուհի ըլլալու ատենը՝ Փերդինանդոս ալ Արակոնի թագաւորութիւնն առած էր, որն որ Սպանիայի մէջ զատ թագաւորութիւն մըն էր: Հենրիկոս թագաւորը չմեռած՝ Փերդինանդոս Եղիսաբէթին հետ պսակուած ըլլալով, երկու թագաւորութիւնները մէկտեղ միացան. բայց ուրաքանչիւր թագաւորութեան առանձին իրաւունքներն ու արտօնութիւնները կը պահուէին. ամէն մէկը իր առանձին կառավարութիւնն

ունէր. Փերդինանդոս միշտ Արակոնի թա-
գաւոր մնաց, Եղիսաբէթ ալ՝ Կաստիլիայի
թագուհի: Եւ թէպէտ երկուքն ալ իրարու
հետ շատ սիրով էին ու մէկմէկու միաբան.
բայց բնութիւններն ու վարմունքներն իրարմէ
շատ տարբեր էր: Փերդինանդոս՝ միայն իր
տէրութիւնը մեծցընելու կը նայէր. իր քա-
ղաքականութեան գլխաւոր միջոցներն էին
նենգաւորութիւնն ու խաբէութիւնը: Ամէն
բան շահու համար կը գործէր, իսկ մեծան-
ձնութեան համար՝ շատ քիչ: Մարդն իրեն
օգտին համար գործածելէն ետք՝ վարձը
կամ հատուցում միայն իր օգտին նկատմամբ
կու տար: Իր տէրութեան երջանկութեան
մեծ հոգ ունենալուն եւ ձեռք զարկած գործ-
քերը յաջողութեամբ գլուխ տանելուն հա-
մար՝ Սպանիացիք զինքը Իմաստուն ու Խո-
հեմ կ'անուանեն: Իսկ Գաղղիա ու Անգղիա
իրեն խորամանկութեան, կեղծաւորութեան
ու անհաւատարմութեան համար՝ զինքը
Խաբեբայ կը կանչէին: Եղիսաբեթին բնու-
թեան վրայ ամենուն գէշ խօսող չկայ,
մանաւանդ թէ ամէն մարդ իր ձիրքերուն
վրայ կը զարմանայ: Իր ազնուական վարմուն-
քովը ու մեծանձնութեամբը՝ բոլոր Կաստի-
լիացիներուն սիրտն իրեն հետ կապած էր,
եւ իր առաքինութիւններովը՝ բոլոր աշխարհ-
քիս մեծարանաց արժանի եղաւ, արուեստ

պաշտպան եւ Թշուառաց մայր ըլլալէն զատ՝ սատտիկ աստուածապաշտ էր։

Փրանկիսկեանց մեծաւորը Թագուհւոյն աս բնութիւնն աղէկ ճանչնալով՝ վստահութեամբ կը յուսար որ Կոլոմբոսին ձեռք կը բռնէ։ Բայց իրեն կարծածին պէս չեղաւ։ Թերեւս՝ իր բարեկամին կարծիքն աղէկ քննած ու գլուխ ելլելուն վրայ համոզուած էր. բայց Թագուհւոյն խոստովանահօրը, որուն որ նամակին մէջ համառօտ տեղեկութիւն մը կու տար, ծիծաղելի բան մը երեւցաւ. ուստի Կոլոմբոս եւ ոչ Թագուհւոյն առջեւ կրցաւ ելլել։ Ասանկով 1486ին ամառն ու աշունը Գորտովա անցուց։ Կը կարծուի որ հոն՝ շինած աշխարհացոյց տախտակներէն վաստըկածովը կ՚ապրէր։ Ժամանակին պարագաներն ալ իրեն յարմար չէին. որովհետեւ Փերդինանդոս ու Եղիսաբէթ Մաւրիտանացւոց հետ պատերազմի մէջ էին։ Բայց Կոլոմբոս ամենեւին յոյսը չկտրեց, իր քաղաքավար վարմունքովը, լեզուանութեամբն ու գիտնութիւններովը քանի մը հոգւոյ սիրտը վաստըկեցաւ։ Աշխարհացոյց շինելու բնական ձիրքով ու քաջ նաւապետի համբաւովը մեծամեծ մարդիկներու հետ հաղորդակցութիւն ունեցաւ։ Ասոնցմէ մէկն էր Թագուհւոյն մէկ պաշտօնեան՝ ոյն որ անոր խորհուրդը շատ հաւնեցաւ։ Նոյնպէս Թագուհւոյն որդւոց դաստի-

տրակն ու քահանայապետութիւն նա իրակը վրան մեծ համարում ստացան. եւ սա նոր բարեկամները զինքը անանկ մարդու մը ներկայացուցին՝ որն որ բոլոր դժուարութիւնները կրնար վերցընել: Աս մարդն էր Սպանիայի մեծանուն Կարդինալը Պետրոս Գոնզալէս տէ Մենտոզա, որն որ արքունեաց մէջ անանկ մեծ անուն ունէր, որ մինչեւ զինքը Սպանիայի երրորդ թագաւոր կը կանչէին: Ասիկա թէպէտ զԿոլոմբոս շատ մարդասիրութեամբ ընդունեցաւ, բայց իսկզբան անոր կարծիքը՝ Ս. Գրոց երկրագնդին որպիսութեան վրայ բանձներուն հակառակ կարծելով՝ քիչ մը վախ ցուցուց: Սակայն մեծանուն Կոլոմբոսին խորունկ խելքն ու լուսաւոր հաւատքը անմիջապէս Կարդինալին նախապաշարմունքը ցրուեց. ուստի եւ խօսք տուաւ որ աս բանին կ'օգնէ ու զինքը թագաւորին ու թագուհւոյն առջեւը կը հանէ:

## Ե.

## Սպանիայի արքունեաց մէջ ըրածները:

Որոշուած օրը Կոլոմբոս՝ Փերդինանդոսին ու Եղիսաբեթին ներկայացաւ. հոն ալ Լուսիտանիա ըրածին պէս՝ համեստ վստահութեամբ մը երեւցաւ, եւ յայտնի կերպով մը մեկնեց թէ ինչ պատճառներու վրայ կը հիմնէր իր յոյսը: Բայց թագաւորը՝ պատ-

շատ չուզեց օտար մարդու մը ձեռք մարդիկ ու նաւեր տալ՝ զանոնք անծանօթ տեղեր տանելու համար, ուստի եւ որոշ պատասխան մը չտուած՝ ուզեց Կոլոմբոսին խորհրդին վրայ աղէկ դատաստան ընել կրցող մարդիկներուն կարծիքն իմանալ։ Անոր համար Կոլոմբոսին ըսաւ որ քանի մը հոգի կ՚որոշեմ, որոնց առջեւը բոլոր քու խորհուրդներդ ու պատճառներդ կը յայտնես, եւ ես անոնց տուած վկայութեան նայելով՝ որոշում կ՚ընեմ։

Բայց դժբախտութեամբ թագաւորին ընտրած մարդը՝ Կոլոմբոսին մեծ յոյս մը չէր տար. ինչու որ աս քննութիւնը Փերդինանդ Գալաւերային յանձնուեցաւ, որն որ իր խորհրդին վրայ մէկէն կասկածաւորութեամբ մը նայելու սկսած էր։ Աս մարդը՝ նոյն ժամանակուան երեւելի աստղաբաշխներն ու աշխարհագիրները Սալամանգա ժողվեց, եւ իրենց յանձնեց որ թագաւորին ուզած քըննութիւնն ընեն։ Կոլոմբոս պատրաստ էր ուսումնական կերպով իրեն ըլլալու առարկութիւններուն պատասխան տալու. բայց շատ զարմացաւ եւ ցաւեցաւ երբ որ տեսաւ թէ ասոնք հետը չնչին ու թեթեւ կերպով կը խօսին. որովհետեւ աս իրենց կարծիքները ամէն տեղ իբրեւ պատգամ յառաջ վարող մարդիկ եւ ոչ կրնային երեւակայել որ ուրիշներն իրենցմէ տարբեր կարծիք ունենան։

Ի՜նչ, կ'ըսէին, աս մարդը կը կարծէ որ այնչափ տարիներէ վեր ուրիշները բոլոր մոլորած ըլլան, ու ինք միայն իրաւունք ունենայ: Ի՜նչպէս կրնայ մտածուիլ որ երկիրը կլոր ըլլայ, եւ այնպէս մարդիկ գտնուին՝ որոնց գլուխը մեր ոտուըներուն տակն ըլլան. ի՜նչպէս կրնայ ըլլալ որ այնպէս ծառեր գըտնուին՝ որոնց արմատն օդի մէջ ըլլայ: — Կոլոմբոս պատասխան կու տար որ Արիստոտէլ, Պտղոմէոս եւ ուրիշ շատ իմաստուն մարդիկ կը գրուցեն թէ երկիրը կլոր է. ի՞նչ փաստով կրնայ ցուցուիլ որ, կ'ըսէր, երկիրն ուրիշ ձեւ մ'ունենայ: Ի՞նչ զօրաւոր պատճառ կրնայ բերուիլ՝ որ այսպէս օգտակար հետեւութիւններ ունենալ կրցող կարծիքի մը ստուգութիւնը քննելու համար փորձ մ'ալ չըլլայ: Իրեն կ'առարկէին որ իր կարծիքները չէ թէ միայն հիմ մը չունին, հապա նաեւ Ս. Գրոց դէմ են: Աշխարհքիս անծանօթ կողմերը բնակող մարդիկ ո՞ւսկից յառաջ եկած են, կ'ըսէին. եթէ Ադամէն ու Նոյէն յառաջ եկած են, ի՞նչպէս կրցան աշխարհքիս մէկալ կողմերն երթալ: Կոլոմբոս պատասխան կու տար որ դէպ ի արեւելք յառաջ քալելով՝ հոն հասած են, եւ ես դէպ ի արեւմուտք նաւարկելով՝ կը յուսամ որ զիրենք գտնեմ, որովհետեւ աս կերպով պէտք է որ արեւելեան վերջին սահմանները հասնիմ: Աստուա-

ծանչնչէն բերուած մէկ վկայութեան՝ ուրիշ
վկայութեամբ պատասխան կու տար. եւ այն-
պիսի կերպով կը խօսէր որ լսողները հարկ էր
որ համոզուէին՝ թէ որ նախապաշարումն ու
ագիտութիւնը եւ կիսկատար գիտութեան
յանձնապաստանութիւնը յաղթել դիւրին
բան մ'ըլլար: Մէջերնուէն ամենէն չափաւոր-
ները կը զրուցէին որ թէպէտ եւ արեւմտեան
կողմանէ Հնդկաստան հասնիլ կարելի ալ
ըլլայ, ի վերայ այսր ամենայնի Ովկիանոսին
մեծութեանն նայելով՝ խոհեմութիւն չ'երեւ-
ար երեւակայական բանի մը համար այնչափ
մարդիկներուն ինչքն ու կեանքը վտանգի
մէջ դնել:

Այսպէսով՝ Սալամանդա եղած բանա-
կցութիւնները հետեւութիւն մը չունեցան.
ժողովքը բան մը չորոշած՝ ցրուեցաւ. եւ
թագաւորին ուզած տեղեկութիւնն ալ տրու-
ող մը չգտնուեցաւ: Եւ այնպէս՝ կարծես թէ
Կոլոմբոսին առաջարկութիւնը բոլորովին մոռ-
ցուեցաւ: Բայց ինք ամենեւին յոյսը չկտրեց,
եւ ամէն կարելի միջոցներով ետեւէ կ'իյնար
որ խնդրած օգնութիւնն ընդունելով՝ մտա-
ծածը գլուխ տանի: Նոյն ատենը Կրանատայի
մէջ Մաւրիտանացւոց դէմ սաստիկ պատե-
րազմ ըլլալով՝ ինքն ալ արքունեաց հետ բա-
նակը գնաց, եւ նոյն քաղաքները կը կենար,
ուր թագաւորն ու թագուհին կը կենային:

ունէր. Փերդինանդոս միշտ Արակոնի թագաւոր մնաց, Եղիսաբէթ ալ՝ Կաստիլիայի թագուհի: Եւ թէպէտ երկուքն ալ իրարու հետ շատ սիրով էին ու մէկմէկու միաբան. բայց բնութիւնին ու վարմունքնին իրարմէ շատ տարբեր էր: Փերդինանդոս՝ միայն իր տէրութիւնը մեծցընելու կը նայէր. իր քաղաքականութեան գլխաւոր միջոցներն էին՝ նենգաւորութիւնն ու խաբէութիւնը: Ամէն բան շահու համար կը գործէր, իսկ մեծանձնութեան համար՝ շատ քիչ: Մարդն իրեն օգտին համար գործածելէն ետքը՝ վարձք կամ հատուցում միայն իր օգտին նկատմամբ կու տար: Իր տէրութեան երջանկութեան մեծ հոգ ունենալուն եւ ձեռք զարկած գործքերը յաջողութեամբ գլուխ տանելուն համար՝ Սպանիացիք զինքը Իմաստուն ու Խոհեմ կ'անուանեն: Իսկ Գաղղիա ու Անգղիա՝ իրեն խորամանկութեան, կեղծաւորութեան ու անհաւատարմութեան համար՝ զինքը Խաբեբայ կը կանչէին: Եղիսաբեթին բնութեան վրայ ամէնուրին գէշ խօսող չկայ, մանաւանդ թէ ամէն մարդ իր ձիրքերուն վրայ կը զարմանայ: Իր ազնուական վարմունքովը ու մեծանձնութեամբը՝ բոլոր Կաստիլիացիներուն սիրտն իրեն հետ կապած էր. եւ իր առաքինութիւններովը՝ բոլոր աշխարհ քիս մեծարանաց արժանի եղաւ, արուեստ

պաշտպան եւ Թշուառաց մայր ըլլալէն զատ՝ սաստիկ աստուածապաշտ էր:

Փրանկիսկեանց մեծաւորը Թագուհւոյն աս բնութիւնն աղէկ ճանչնալով՝ վստահութեամբ կը յուսար որ Կոլոմբոսին ձեռք կը բռնէ: Բայց իրեն կարծածին պէս չեղաւ: Թերեւս՝ իր բարեկամին կարծիքն աղէկ քննած ու գլուխ ելլելուն վրայ համոզուած էր. բայց Թագուհւոյն խոստովանահօրը, որուն որ նամակին մէջ համառօտ տեղեկութիւն մը կու տար, ծիծաղելի բան մը երեւցաւ. ուստի Կոլոմբոս եւ ոչ Թագուհւոյն առջեւ կրցաւ ելլել: Ասանկով 1486ին ամառն ու աշունը Գորտովա անցուց: Կը կարծուի որ հոն՝ շինած աշխարհացոյց տախտակներէն վաստկածովը կ՚ապրէր: Ժամանակին պարագաներն ալ իրեն յարմար չէին. որովհետեւ Փերդինանդոս ու Եղիսաբէթ Մաւրիտանացւոց հետ պատերազմի մէջ էին: Բայց Կոլոմբոս ամենեւին յոյսը չկտրեց, իր քաղաքավար վարմունքովը, լեզուանութեամբն ու գիտութիւններովը քանի մը հոգւոյ սիրտը վաստըկեցաւ: Աշխարհացոյց շինելու բնական ձիրքով ու քաջ նաւապետի համբաւովը մեծամեծ մարդիկներու հետ հաղորդակցութիւն ունեցաւ: Ասոնցմէ մէկն էր Թագուհւոյն մէկ պաշտօնեան՝ ոչն որ անոր խորհուրդը շատ հաւնեցաւ: Նոյնպէս Թագուհւոյն որդւոց դաստի-

տղային ու քահանայապետին նոր իրակր վրան մեծ համարում առացան. Եւ աս նոր բարեկամները զինքը անանկ մարդու մը ներկայացուցին՝ որն որ բոլոր դժուարութիւնները կրնար վերցընել: Աս մարդն էր Սպանիայի մեծանուն Կարդինալը Պետրոս Գոնզալէս տէ Մենտոզա, որն որ արքունեաց մէջ անանկ մեծ անուն ունէր, որ մինչեւ զինքը Սպանիայի երրորդ թագաւոր կը կանչէին: Անիկա թէպէտ զԿոլոմբոս շատ մարդասիրութեամբ ընդունեցաւ, բայց իսկզբան անոր կարծիքը՝ Ս. Գրոց երկրագնդիս որպիսութեան վրայ բանծներուն հակառակ կարծելով՝ քիչ մը վախ ցուցուց: Սակայն մեծանուն Կոլոմբոսին խորունկ խելքն ու լուսաւոր հաւատքը անմիջապէս Կարդինալին նախապաշարմունքը ցրուեց. ուստի եւ խօսք տուաւ որ աս բանիս կ՚օգնէ ու զինքը թագաւորին ու թագուհւոյն առջեւը կը հանէ:

## Ը.

### Սպանիայի արքունեաց մէջ ըրածները:

Որոշուած օրը Կոլոմբոս՝ Փերդինանդոսին ու Եղիսաբեթին ներկայացաւ. Հոն ալ Լուսիտանիա ըրածին պէս՝ համեստ վստահութեամբ մը երեւցաւ, եւ յայտնի կերպով մը մեկնեց թէ ինչ պատճառներու վրայ կը հիմնէր իր յոյսը: Բայց թագաւորը՝ պատ-

շատ չսեպեց օտար մարդու մը ձեռք մարդիկ ու նաւեր տալ՝ զանոնք անծանօթ տեղեր տանելու համար, ուստի եւ որոշ պատասխան մը չտուած՝ ուզեց Կոլոմբոսին խորհրդին վրայ աղէկ դատաստան ընել կրցող մարդիկներուն կարծիքն իմանալ։ Անոր համար Կոլոմբոսին ըսաւ որ քանի մը հոգի կ՚որոշեմ, որոնց առջեւը բոլոր քու խորհուրդներդ ու պատճառներդ կը յայտնես, եւ ես անոնց տուած վկայութեան նայելով՝ որոշում կ՚ընեմ։

Բայց դժբախտութեամբ Թագաւորին ընտրած մարդը՝ Կոլոմբոսին մեծ յոյս մը չէր տար. ինչու որ աս քննութիւնը Փերդինանդ Գալաւերային յանձնուեցաւ, որն որ իր խորհրդին վրայ մէկէն կասկածաւորութեամբ մը նայելու սկսած էր։ Աս մարդը՝ նոյն ժամանակուան երեւելի աստղաբաշխներն ու աշխարհագիրները Սալամանգա ժողվեց, եւ իրենց յանձնեց որ Թագաւորին ուզած քննութիւնն ընեն։ Կոլոմբոս պատրաստ էր ուսումնական կերպով իրեն ըլլալու առարկութիւններուն պատասխան տալու. բայց շատ զարմացաւ եւ ցաւեցաւ երբ որ տեսաւ թէ ասոնք հետը չնչին ու թեթեւ կերպով կը խօսին. որովհետեւ աս իրենց կարծիքները ամէն տեղ իբրեւ պատգամ յառաջ վարող մարդիկ եւ ոչ կրնային երեւակայել որ ուրիշներն իրենցմէ տարբեր կարծիք ունենան։

տրակն ու քահանայապետութիւն նոս իրակը վրան մեծ համարում ստացան. եւ աս նոր բարե-կամները զինքը անանկ մարդու մը ներկայա-ցուցին՝ որն որ բոլոր դժուարութիւնները կրնար վերցընել: Աս մարդն էր Սպանիայի մեծանուն Կարդինալը Պետրոս Գոնզալէս տէ Մենտոզա, որն որ արքունեաց մէջ անանկ մեծ անուն ունէր, որ մինչեւ զինքը Սպանի-այի երրորդ թագաւոր կը կանչէին: Ասիկա թէպէտ զԿոլոմբոս շատ մարդասիրութեամբ ընդունեցաւ, բայց իսկզբան անոր կարծիքը՝ Ս. Գրոց երկրագնդիս որպիսութեան վրայ բանձներուն հակառակ կարծելով՝ քիչ մը վախ ցուցուց: Սակայն մեծանուն Կոլոմբոսին խորունկ խելքն ու լուսաւոր հաւատքը ան-միջապէս Կարդինալին նախապաշարմունքը ցրուեց. ուստի եւ խօսք տուաւ որ աս բանին կ՚օգնէ ու զինքը թագաւորին ու թագուհւոյն առջեւը կը հանէ:

## Է.

### Սպանիայի արքունեաց մէջ ըրածները:

Որոշուած օրը Կոլոմբոս՝ Ֆերդինանդոսին ու Եղիսաբեթին ներկայացաւ. Հոն ալ Լու-սիտանիա ըրածին պէս՝ համեստ վստահու-թեամբ մը երեւցաւ, եւ յայտնի կերպով մը մեկնեց թէ ինչ պատճառներու վրայ կը հիմնէր իր յոյսը: Բայց թագաւորը՝ պատ-

շա՛տ չսեպեց օտար մարդու մը ձեռք մարդիկ ու նաւեր տալ՝ զանոնք անծանօթ տեղեր տանելու համար, ուստի եւ որոշ պատասխան մը չտուած՝ ուզեց Կոլոմբոսին խորհրդին վրայ աղէկ դատաստան ընել կրցող մարդիկներուն կարծիքն իմանալ: Անոր համար Կոլոմբոսին բսաւ որ քանի մը հոգի կ'որոշեմ, որոնց առջեւը բոլոր քու խորհուրդներդ ու պատճառներդ կը յայտնես, եւ ես անոնց տուած վկայութեան նայելով՝ որոշում կ'ընեմ:

Բայց դժբախտութեամբ թագաւորին ընտրած մարդը՝ Կոլոմբոսին մեծ յոյս մը չէր տար. ինչու որ աս քննութիւնը Փերդինանդ Դալաւերային յանձնուեցաւ, որն որ իր խորհրդին վրայ մէկէն կասկածաւորութեամբ մը նայելու սկսած էր: Աս մարդը՝ նոյն ժամանակուան երեւելի աստղաբաշխներն ու աշխարհագիրները Սալամանգա ժողվեց, եւ իրենց յանձնեց որ թագաւորին ուզած քըննութիւնն ընեն: Կոլոմբոս պատրաստ էր ուսումնական կերպով իրեն ըլլալու առարկութիւններուն պատասխան տալու. բայց շատ զարմացաւ եւ ցաւեցաւ երբ որ տեսաւ թէ ասոնք հետը չնչին ու թեթեւ կերպով կը խօսին. որովհետեւ աս իրենց կարծիքները ամէն տեղ իբրեւ պատգամ յառաջ վարող մարդիկ եւ ոչ կրնային երեւակայել որ ուրիշներն իրենցմէ տարբեր կարծիք ունենան:

Ի՛նչ, կ՚ըսէին, աս մարդը կը կարծէ որ այնչափ տարիներէ վեր ուրիշները բոլոր մոլորած ըլլան, ու ի՛նք միայն իրաւունք ունենայ: Ի՛նչպէս կրնայ մտածուիլ որ երկիրը կլոր ըլլայ, եւ այնպէս մարդիկ գտնուին՝ որոնց գլուխը մեր ոտուըներուն տակն ըլլան. Ի՛նչպէս կրնայ ըլլալ որ այնպէս ծառեր դըտնուին՝ որոնց արմատն օդի մէջ ըլլայ: — Կոլոմբոս պատասխան կու տար որ Արիստոտէլ, Պտղոմէոս եւ ուրիշ շատ իմաստուն մարդիկ կը գըուցեն թէ երկիրը կլոր է. ի՞նչ փաստով կրնայ ցուցուիլ որ, կ՚ըսէր, երկիրն ուրիշ ձեւ մ՚ունենայ: Ի՞նչ զօրաւոր պատճառ կրնայ բերուիլ՝ որ այսպէս օգտակար հետեւութիւններ ունենալ կրցող կարծիքի մը ստուգութիւնը քննելու համար փորձ մ՚ալ չըլլայ: Իրեն կ՚առարկէին որ իր կարծիքները չէ թէ միայն հիմ մը չունին, հապա նաեւ Ս. Գրոց դէմ են: Աշխարհքիս անծանօթ կողմերը բնակող մարդիկ ո՞ւսկից յառաջ եկած են, կ՚ըսէին. եթէ Ադամէն ու Նոյէն յառաջ եկած են, ի՞նչպէս կրցան աշխարհքիս մէկալ կողմերն երթալ: Կոլոմբոս պատասխան կու տար որ դէպ ի արեւելք յառաջ քալելով՝ հոն հասած են, եւ ես դէպ ի արեւմուտք նաւարկելով՝ կը յուսամ որ զիրենք գտնեմ, որովհետեւ աս կերպով պէտք է որ արեւելեան վերջին սահմանները հասնիմ: Աստուա-

ծաշնչէն բերուած մէկ վկայութեան՝ ուրիշ վկայութեամբ պատասխան կու տար. եւ այնպիսի կերպով կը խօսէր որ լսողները հարկ էր որ համոզուէին՝ թէ որ նախապաշարումն ու անգիտութիւնը եւ կիսկատար գիտութեան յանձնապաստանութիւնը յաղթել գիտէին բան մ՚ըլլար: Մէջերնէն ամենէն չափաւորները կը զրուցէին որ թէպէտ եւ արեւմտեան կողմանէ Հնդկաստան հանիլ կարելի ալ ըլլայ, ի վերայ այսր ամենայնի Ովկիանոսին մեծութեան նայելով՝ խոհեմութիւն չ՚երեւար երեւակայական բանի մը համար այնչափ մարդիկներուն ինչքն ու կեանքը վտանգի մէջ դնել:

Այսպէսով՝ Սալամանկա եղած բանակցութիւնները հետեւութիւն մը չունեցան. Ժողովքը բան մը չորոշած՝ ցրուեցաւ. եւ թագաւորին ուզած տեղեկութիւնն ալ տրուող մը չգտնուեցաւ: Եւ այնպէս՝ կարծես թէ Կոլոմբոսին առաջարկութիւնը բոլորովին մոռցուեցաւ: Բայց ինք ամենեւին յոյսը չկտրեց, եւ ամէն կարելի միջոցներով ետեւէ կ՚իյնար որ խնդրած օգնութիւնն ընդունելով՝ մտածածը գլուխ տանի: Նոյն ատենը Կրանատայի մէջ Մաւրիտանացւոց դէմ սաստիկ պատերազմ ըլլալով՝ ինքն ալ արքունեաց հետ բանակը գնաց, եւ նոյն քաղաքները կը կենար, ուր թագաւորն ու թագուհին կը կենային:

Աս կերպով հինգ տարի անցաւ։ Վերջապէս հազիւ 1491ին Դալաւերա՝ Կոլոմբոսին վրայ եղած քննութեան տեղեկութիւնը Թագաւորին ու Թագուհւոյն առջեւը հանեց։ Բայց ինչ մեծ ցաւ ունեցաւ խեղճ նաւապետը՝ երբ որ նոյն տեղեկութիւնը տուողը իրեն իմացուց որ Թագաւորն ու Թագուհին հիմա չեն կրնար այսպիսի բանի մը ետեւէ իյնալ, բայց երբ որ պատերազմը կը լմըննայ՝ որն որ կը յուսացուի թէ ալ երկայն չիտեւեր, ան ատեն գուցէ կրնան իր առաջարկութիւնն ընդունիլ։

Կոլոմբոս թէեւ աս պատասխանին վրայ շատ այլայլեցաւ, տեսնելով թէ վեց տարուան ջանքին ու համբերութեան պտուղն այսպէս անորոշ խոստում մը եղաւ, բայց եւ ո՛չ ան ատեն յոյսը կտրելով՝ ելաւ Սեւիլլա գնաց, եւ խնդրեց որ Թագաւորին ու Թագուհւոյն ներկայանայ։ Աս խնդիրքը կատարուեցաւ. սակայն անոնց բերնէն ալ ուրիշ բան չլսեց, բայց եթէ Դալաւերային բերնէն լսածը, այս ինքն թէ Կրանատայի մէջ եղած պատերազմը թող չիտար որ հիմա տասնիկ բաներու վրայ մտածուի, ուստի պէտք է որ մինչեւ նոյն պատերազմին վերջը սպասուի։ Ասով Կոլոմբոս յոյսն արքունիքէն բոլորովին կտրելով, սկսաւ առանձնականաց դիմել, կարծելով որ կառավարութեանց քով չգտած

օգնութիւնը թերեւս առանձնական մարդիկ-
ներէն կրնայ ընդունիլ:

Այն ատենները Սպանիայի մէջ այնպիսի մարդիկ կային՝ որոնք իրենց ունեցած անբաւ կալուածներովը ու հարստութեամբը, թագաւորական բաւելու մեծամեծ գործքերու ձեռք զարնելու կարողութիւն ունէին: Առջի փորձը Մետինա Չելի դքսին վրայ ըրաւ, որն որ Սպանիայի պինտ հարուստ ու զօրաւոր իշխաններէն մէկն էր: Ասիկա առջի բերան կ'երեւար որ շատ բաղձանքով պիտ'որ յանձն առնուն աս երեւելի գործքը, որով միանգամայն իրմէ ետքը անմահ անուն կրնար թողուլ. բայց այսպիսի գործքի մը մեծութիւնն ու ծախքը՝ աչքը վախցուցին. եւ անանկով Կոլոմբոսին հետ գրեթէ խօսք մէկ ընելէն, երեք նաւ խոստանալէն ու ճամբայ ելլելու դաշինքները հաստատելէն ետքը՝ ձեռքը քաշեց ու ետ կեցաւ: Իսկ ան առաջուան սաստիկ բաղձանքէն այսչափ ինչ միայն մնաց՝ որ խոստացաւ արքունեաց մէջ իրեն պաշտպանութիւն ընել: Բայց Կոլոմբոս աս նոր խոստման չվստահելով՝ յուսահատութեան մէջ ինկաւ. ուստի Սեւիլլա թողուց եւ դէպ ի Սանդա Մարիա վանքը ճամբայ ելաւ:

# Ը.

## Թերէսին ընտանիքը:

Կոլոմբոսին Ռապիտա դառնալուն վախճանն ուրիշ բան չէր, բայց եթէ իր բարեկամը Թերէսին հետ տեսնուիլ եւ անոր շնորհակալ ըլլալ որ Տիէկոյին այնպէս հայրական խնամք ու պաշտպանութիւն ցուցուցած էր: Միտքը դրեր էր որ անկէ ետեւ նորէն ճամբայ ելլէ, եւ Սպանիայի մէջ չգտած օգնականութիւնը՝ ուրիշ կողմեր փնտռէ: Թերէս իր բարեկամին քաշածներուն ու ակնկալութեան պարապի երթալը լսելով՝ շատ ցաւեցաւ: Բայց երբ որ իմացաւ թէ Կոլոմբոս ստուգիւ Սպանիան թող տալու միտք ունի, այլայլեցաւ ու բոլոր հայրենասիրութիւնն արթընցաւ: Կ'ըսէր որ առանց վերջին անգամ փորձ մ'ալ ընելու՝ գէթ չեմ թողուր որ երթաս:

Կոլոմբոս միտքը դրած էր որ Գաղղիա երթայ, ուր որ Կարոլոս Ը. կը թագաւորէր, եւ արդէն նոյն թագաւորէն նպաստաւոր նամակ մ'ընդունած էր: Նոյնպէս կը մտածէր որ Անգղիայի հետ ալ փորձ մը փորձէ, ուր որ Բարթուղիմէոս Կոլոմբոս իր եղբայրը արդէն նոյն բանին ետեւէն կ'իյնար, եւ Հենրիկոս Է. յուսացընելով մը իրեն թուղթ գրած էր: Բայց Թերէս չէր կրնար յանձն առնուլ

որ այսպիսի երեւելի գործառնութենէ մը յուսացուած գանձերն ու պարծանքը Սպանիայէն զատ ուրիշ ազգի մը ձեռք անցնի։ Ատենօք ինքն ալ Եղիսաբէթ թագուհւոյն խոստովանահայրն եղած էր, եւ առ իշխանուհւոյն առատաձեռնութիւնն աղէկ կը ճանչնար, ուստի եւ Կոլոմբոսին աղաչեց որ դեռ յոյսը չկտրէ. նորէն կանչել տուաւ զԿարչիա Փեռնանդէս եւ զՄարտինոս Ալոնզոյ Բինզոն՝ որ Բալոսի նաւապետներուն գլխաւոր հարուստներէն մէկն էր։ Երկուքն ալ միաբերան աղաղակեցին թէ թող տալու չէ որ Սպանիա՝ իր իշխանութիւնը տարածելու այսպիսի մեծ ու երեւելի առիթը ձեռքէ հանէ։ Բինզոն խօսք տուաւ որ ինք իր ստակովն ու գործակցութեամբը նոյն գործքին կ'օգնէ. եւ նորանոր փորձեր ընելու համար հարկաւոր եղած ծախքը առ ժամն խոստացաւ որ ինք կը հոգայ։

Կոլոմբոս իր բարեկամներուն այսչափ եռանդէն նորէն շարժեցաւ. Սպանիայէն բաժնուելը՝ իրեն ալ դժուարը կու գար, որովհետեւ նոյն իսկ ցաւերը մարդուս սիրտը՝ ցաւ կրած տեղերուն հետ կը կապեն։ Ուստի խոստացաւ որ կը կենայ ու կը սպասէ։

Երբեմն իր վախճանին հասնելու համար ճարպիկ ու յաջողակ մարդ մը գտաւ, եւ ձեռքը նամակ մը տուաւ որ թագուհւոյն

տանի: Թուղթը Եղիսաբէթ Թագուհւոյն ձեռքը հասնելուն պէս՝ շուտ մը հրաման տուաւ որ անիկա իրեն գայ. Բերէս ալ առանց ամենեւին ուշանալու՝ ելաւ Սանգափէ գնաց: Երբ որ լսուեցաւ թէ Թագուհւոյն առջի խոստովանահայրը կու գայ, անմիջապէս ամէն դռները բացուեցան: Եկաւ մտաւ Եղիսաբեթին առջեւը, եւ մեծ բորբոքով ու եռանդեամբ մը պատմեց անոր թէ ինչեր կրեր է Կոլոմբոս անանկ ազնիւ ու պատուական բանի մը պատճառաւ: Ինք իր բարեկամին գործքին աղէկ ըլլալուն համոզուած ըլլալով՝ սկսաւ Կոլոմբոսին մտածմունքներուն իմաստութիւնը, խորութիւնն ու վեհութիւնը, նոյնպէս ալ անոր ոգին, բարքն ու մեծանձնութիւնը մէկիկ մէկիկ նկարագրել, որով Թագուհին ալ համոզուելով՝ հրամայեց որ Կոլոմբոս արքունիքը գայ:

## Ժ.

### Կոլոմբոսին առաջարկութիւնը դարձեալ կը մերժուի:

Կոլոմբոս այնչափ անգամ իր յուսոյն պարապ ելլելը տեսած ըլլալով՝ դեռ կը վախնար ու չէր գիտեր թէ արդեօք աս անգամուն ընելու փորձն աւելի յաջող ելք պիտ՚որ ունենայ թէ չէ: Ուստի եւ յառաջուընէ մնացած սրտի կոտրածութեամբ ու

տարակուսով ելաւ արքունիքը գնաց: Եւ նոյն ատենը հասաւ, երբ որ Գրանատայի յաղթութիւնը նոր լմնցած էր, եւ թագաւորն ու թագուհին յաղթանակաւ ու հանդիսով նոյն քաղաքը կը մտնէին: Թագուհւոյն առջեւը չելած՝ հարկ եղաւ որ բոլոր այս հանդէսները տեսնէ եւ անոնց ներկայ գտնուի: Պատմագիր մը կ'ըսէ թէ ան հասարակաց ուրախութեան մէջ ինք տըրտում տխուր եւ սիրտը կոտրած կը կենար, ու առանձին լռութեամբ կը մտածէր ան բաներուն վրայ՝ որոնք իրեն անանկ գեղեցիկ կ'երեւային, բայց գլուխ հանելու համար այնչափ ընդդիմութիւններ կը կրէր:

Վերջապէս՝ թագուհւոյն բարձրին հաճեցման մարդիկ որոշուեցան, չէ թէ յառաջուան պէս Կոլոմբոսի մտածածին վրայ վիճելու եւ քննելու, հապա անոր առաջարկութիւնն ընդունելու համար: Բայց աս անգամ ալ նոր դժուարութիւններ ելան: Կոլոմբոս կը խնդրէր որ բոլոր իրեն գտնելու երկիրներուն վրայ ի մշտնջենաւորս ծովապետ ու փոխարքայ անուանուի, եւ եղած շահերուն տասանորդն իրեն տրուի: Աս առաջարկութիւնները չափէ դուրս բաներ երեւցան. անոր համար սկսան Կոլոմբոսի վրայ գէշ խօսիլ թէ փառամոլ եւ ագահ մարդ է: Դալաւերա միշտ իրեն դէմ նախա-

պաշարմունքով լեցուն էր. ասիկա Կոլոմբոսի պահանջմունքներուն դէմ ելաւ, եւ տեսնելով որ ամենեւին կերպով մը չիկրնար միտքն ու պահանջմունքները փոխել տալ, սիրտը շատ կը նեղանար: Այսպէսով աս փորձն ալ անյաջող կերպով մը լմնցաւ. այս ինքն որոշուեցաւ որ եթէ Կոլոմբոս արքունեաց պայմանները յանձն առնուլ չ'ուզեր, ալ անկէ ետեւ օգնութիւն ընդունելու յոյս չունենայ:

Իսկ Կոլոմբոսի վսեմ ու բարձր հոգին ամենեւին չթուլցաւ: Արքունեաց այնչափ յապաղելն ու զինքը նախատելը՝ իրեն հաստատութիւնը երբեք չէին կրցեր խախտել. հիմա ալ խնայութիւնը՝ որ իրեն առջեւը դրուած պայմաններուն պատճառ կ'ըլլար, չկրցաւ անոր դիմադրութեանը յաղթել: Իշխաններէն մէկը կատակով ու ծաղր ընելով մը զրուցեց թէ ինչպէս որ ըլլայ նէ՝ դուն շահաւոր կ'ելլես, որովհետեւ ամենեւին կորսնցընելիք չունիս: Աս որ լսեց Կոլոմբոս, համարձակութեամբ մը աս անիրաւ կշտամբանքին դէմ ելաւ, եւ ցուցընելու համար որ ինք անարգ վաստակի համար չիգործեր, յանձն առաւ ու խոստացաւ որ աս գործքին բոլոր ծախքին ութերորդ մասն ինք կը վճարէ. բայց աս ալ ըսաւ թէ ինչ որ կ'ուզէ ըլլայ՝ պահանջած պատուանուններէս եր-

բնք չեմ հրաժարիր: Ինք մարդուս բնութիւնն աղէկ կը ճանչնար. գլուխն եկած այնչափ ձախորդութիւններն իրեն սորվեցուցած էին թէ անոնցմէ ինչչափ քիչ բան կրնայ յուսացուիլ. անոր համար պատուանուններ եւ իրաւունքներ ստանալով՝ կարելի եղածին չափ ինք զինքը ամէն տեսակ անիրաւութենէ ապահովցընել կ՚ուզէր: Ետքէն պատահածները կը ցուցընեն որ Կոլոմբոս որչափ իրաւունք ունէր:

Բայց որոշուած մարդիկները իր առաջարկութիւնը բոլորովին մերժեցին, եւ Կոլոմբոս՝ այնպիսի երեւելի բանի մը համար այսպէս սակարկութիւն ընելնուն վրայ սաստիկ նեղանալով՝ ալ բանի մը ականջ դնել չուզեց: Հաստատութեամբ միտքը դրաւ որ թողու լքանէ այնպիսի արքունիք մը՝ որ իր առաջարկութիւնն այնպէս գէշ կ՚ընդունէր: Անոր համար շուտ մը իր բարեկամներուն հրաժեշտական ողջոյն տուաւ, Սանդա-Ֆէէն ելաւ ու Գորտովա գնաց, ուսկից միտքը դրած էր որ շուտ մը Գաղղիա անցնի:

## Ժ.

### Կոլոմբոս եւ իր հանճարը:

Կոլոմբոսին աս հաստատութիւնը՝ բաներուն կերպարանքը փոխեց: Ան սակաւա-

թիւ բարեկամներըն՝ որ սրտանց անոր յա-
ջողութեան կը բաղձային, խռովեցան այլայ-
լեցան՝ տեսնելով որ Սպանիա յաւիտեան
պիտ՚որ կորսնցընէ այսպիսի մեծ մարդ մը։
Աս արդիւնաւոր անձինքներէն մէկը՝ որն որ
Սանդ- Անճէլ կը կոչուէր, եւ Արակոնիայի
եկեղեցական մուտքերը ժողվողն էր, հետն
իրեն նման ուրիշ բարեկամ մ՚առնելով՝
շուտ մը թագուհւոյն առջեւն ելաւ. եւ ը-
րած աղաչանաց հետ յանդիմանութիւն ալ
խառնելով՝ սապէս խօսեցաւ։ Ի՞նչպէս քեզի
պէս թագուհի մը՝ որ ինչուան հիմա ամէն
մեծամեծ գործքերուն ձեռք բռնած է,
կը մերժէ սապէս գործք մը՝ որ այնչափ մեծ
օգուտ ու փառք կրնայ պատճառել։ Քու
կրօնքդ, փառքդ ու ոգիդ՝ պէտք է որ հաւա-
տարապէս գքեզ ստիպեն ասոր ձեռք բռնե-
լու։ Թէ որ աս գեղեցիկ գիւտերը գտնուին
նէ՝ ասով աւետարանին լոյսն ընդունող
ազգերուն փրկութեան պատճառ կ՚ըլլաս.
բոլոր նոյն տեղերէն ելլելու ոսկին՝ Կաստի-
լիայի գանձը կը հարստացընէ։ Կարելի է
որ ամբողջ տէրութիւններ՝ աս քեզմէ խըն-
դրուած տկար խրախոյսին հատուցմունքն
ըլլան։ Եւ անկարելի է որ այսպիսի քիչ բա-
նով ասկից աւելի շահաւոր բանի մը փորձ
փորձուի։ Երկու նաւ եւ քիչ մը ստակ կը
բաւէ։ Ասկէ ետքը գալու դարերու մէջ

ալ՝ նաւուղղութեան ուսմունքը աս կերպով յառաջացընելուդ համար անմահ գովութեան մ'արժանի կ'ըլլաս։ Կ'ուզե՞ս արդեօք աս ամէն փառքն ու պարծանքը ուրիշ ազգերուն թողուլ, եւ Կաստիլիան զրկել, եւ անկէ ետքը ցաւիլ ու զղջալ տեսնելով որ քու թողուցած պատուոյդ բոլորն ալ ուրիշ ժողովուրդ մը կ'ընդունի։ Աս փորձն անպատուղ ալ ըլլայ նէ, միայն այսպիսի գործքի մը ձեռք բռնած ըլլալը՝ մեծ թագուհւոյ մը արժանի գործ չէ՞ մի։ Բաւական պարծանք ու պատիւ չէ՞ արդեօք թագաւորի մը՝ որ իրենց գիւտերովն ու հնարքներովը գիտութիւնը հարստացընելու ջանք ընողներուն օգնէ։

Աս բարձր ու վսեմ ճարտարախօսութեամբ զրուցուած խօսքերը թագուհւոյն բոլոր տարակուսանքներն ու վարանքները յաղթեց։ Ա՛լ աս անգամ Կոլոմբոսի բարեկամներուն սրտին ցանկութիւնն ամենայն սիրով ընդունեցաւ, եւ երբ որ Փերդինանդ՝ որն որ շատ փափաք մը չէր ցուցըներ, հարցուց թէ աս նոր նաւագնացութեան ծախքը ինչ ստըկով պիտ'որ հոգանք, "Ես մինակ, ըսաւ թագուհին, իբրեւ Կաստիլիայի թագուհի՝ աս գործքը յանձն կ'առնում, եւ իմ գոհարներս գրաւ դնելով՝ ծախքը կը հոգամ,,։

Այսպէսով Կոլոմբոսին բանը յաջողեցաւ: Եւ անմիջապէս դէպ ի Գորտովա սուրհանդակ մը ճամբայ ելաւ՝ որ այս մեծ մարդը ետ կանչէ: Սանդ-Անճէլին ինչպէս աճապարած ըլլալը՝ անկից կրնայ իմացուիլ, որ Կոլոմբոս դեռ երկու փարսախ չէր առած, երբ որ սուրհանդակն եկաւ հասաւ: Թէ որ քիչ մը ատեն, քանի մը ժամ կորսուած ըլլար, Սպանիա զԿոլոմբոս կը կորսնցընէր, եւ ո՞ գիտէ թէ անկէ ետեւ ինչ կ'ըլլար Կոլոմբոս, ինչ կ'ըլլար իր գիւտը: — Բայց Կոլոմբոս դեռ իր բարկութեան ու ցաւոցը մէջ սկսաւ տարակուսիլ թէ արդեօք թագուհւոյն հրաւէրքն ընդունի թէ չէ. այնչափ կը վախնար որ այս անգամն ալ պիտի խաբուի: Բայց սուրհանդակին արտորանքն եւ ուրախութիւնը տեսնելով՝ ալ տարակոյսը փարատեցաւ եւ ետ դարձաւ:

## ԺԱ.

### Կոլոմբոս՝ Եղիսաբեթին ու Ֆերդինանդոսին առջեւը կ'ելլէ:

Թագուհին անձկութեամբ Կոլոմբոսին կը սպասէր: Աս իշխանուհւոյն քաղցրութիւնն ու բարութիւնը՝ Կոլոմբոսին բոլոր ցաւերը մոռնալ տուին: Իր խելքն ու միտքը միշտ նոյն մտածմանց զբաղած ըլլալով, թագուհւոյն ու թագաւորին առջեւն ալ

սրտին բորբոքմանը համեմատ խօսելու սկսաւ։ Ձեզի, կ'ըսէր, Գաթայի փառաւոր թագաւորութեան գանձերը պիտ'որ բերեմ, որն որ անտարակոյս աշխարհքիս ամենէն հարուստ թագաւորութիւնն է։ Բոլոր անտեղացիք ճշմարիտ հաւատքի պիտ'որ դառնան։ Կաստիլիացւոց աչքին առջեւը զարմանալեօք լեցուն աշխարհք մը պիտ'որ բացուի։ Եւ ո՞վ գիտէ թերեւս նաեւ Դրախտն ալ կը հանինք*։ Վերջապէս Կոլոմբոս իր խորհուրդներուն յաջողելուն վրայ բոլորովին ապահով ըլլալով՝ իրեն այնպէս կ'երեւար որ գիւտն արդէն գտնուած լմնցած է. անոր համար աս ալ առաջարկեց որ անկից գալու շահը Քրիստոսի գերեզմանը փրկելու բանեցուի։ Աս որ լսեցին թագաւորն ու թագուհին՝ չկրցան ծիծաղնին բռնել, եւ սկսան խնդալ որ դեռ գտնուելու բանէ մը ծագած շահին մասնաւոր վախճան մ'ալ կ'ուզուի դրուիլ. բայց եւ այնպէս աս առաջարկութիւնն ալ չմերժեցին։

Կոլոմբոս ա՛լ իր բաղձանքին հասած էր, Թագուհին ամէն պէտք եղած իշխանութիւնն իրեն տուաւ. եւ 1492ին Ապրիլի 17ին հրովարտակ մը կնքուեցաւ, որով Կոլոմբոսին Ովկիանոսին մէջ ուզած կողմը նաւորդու-

*Ան ատենուան մարդիկներուն ամենէն գեղեցիկ երազներէն մէկն ալ աս էր որ Ադամայ դրախտը գտնեն, Կոլոմբոս ալ աս մտքին վրայ էր։

թիւն ընելու իշխանութիւն կը տրուէր. իր գտնելու ամէն երկիրներուն վրայ ծովապետի ու փոխարքայի պատուանունը կը շնորհուէր. եւ նոյն երկիրներէն ելած բոլոր վաճառքներուն եւ հարստութեանց տասանորդը կը խոստացուէր: Թագուհին՝ որ բնութեամբ առատիկ մեծանձն եւ բարեսիրտ էր, աս ամէն պատիւներուն վրայ ուրիշ շնորհք մ'ալ աւելցուց, որն որ Կոլոմբոս մեծ շնորհակալութեամբ ընդունեցաւ: Մտածելով որ անոր որդիքն՝ հօրը հետ մեկտեղ չի կրար երթալ, ուզեց զանիկա իր պաշտպանութեան տակ առնուլ, եւ թագաւորութեան ժառանգին մանկլաւիկ ըրաւ: Աս պատիւը՝ մինակ Սպանիայի շատ մեծ տնէ եղողներուն կը շնորհուէր: Անով Կոլոմբոս ամէն հոգերէ ազատելով՝ Բալոս եկաւ ու հոնտեղէն ճամբայ ելաւ:

---

## Ա. ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ

### Ա.

*Սպանիայէն ելլելը:*

Կոլոմբոս 1492ին, Օգոստոսի 3ին Բալոսէն՝ ելաւ։ Իր նստած նաւին անունը՝ Սանթա Մարիա էր. անկից զատ հետը երկու նաւ ալ ունէր, որոնցմէ մէկը՝ Լա Բինթա կը կոչուէր, եւ հրամանատարն էր՝ Ալոնզոյ Բինզոն, իսկ մէկալը՝ Լա Նինա կ'ըսուէր, եւ անոր հրամանատարն էր Ալոնզոյին երկրորդ եղբայրը, որոնց երրորդ եղբայրը երկրորդ նաւին նաւուղիղն էր։ Այս երեք նաւին մէջ 90 հոգի կար. եւ մէկ տարուան համար պաշար ունէին։

Կոլոմբոս առագաստները բացած՝ սկսաւ դէպ արեւմուտք նաւել. բայց նաւորդութեան սկիզբէն իր մարդիկը սկսան տժգոհութիւն ցուցընել, եւ ետ դառնալ ուզել, ու Լա Բինթա շուտ մը նշան տուաւ թէ վտանգի մէջ է. իր մեծ կայմը խորտակած էր։ Կոլոմբոս իմացաւ որ անիկա առաջուց պատրաստուած բան մը պիտ՚որ ըլլայ, ուստի եւ ըսաւ թէ երբեք ասոր համար ետ չեմ դառնար. եւ Կանարեան կղզիները մօտեցաւ, որ եղած վնասին ճար գտնէ։ Երեք շաբաթ աշխատեցաւ ուրիշ նաւ մը գտնելու,

բայց փուճ տեղ. վերջապէս հարկ եղաւ որ նոյն Լա Բիւրդոն կայրել տայ:

Ան օրերը Ֆերրոյէն եկող սպանիացի նաւ մը իրեն լուր բերաւ որ քանի մը օրէ վեր Լուսիտանացի նաւեր Ովկիանոսին մէջ կ՚երթան կու գան, առանց կարծեաց՝ իր նաւորդութեանն արգելք ըլլալու մտքով: Անոր համար հարկ եղաւ որ Կանարեան կղզիները թողու, եւ ծովուն մէջ յառաջ երթայ՝ որ Լուսիտանացւոց ձեռքէն ազատի: Աս ամէն բան նաւավարներուն վախն աւելի կը մեծցընէր. եւ մանաւանդ երբ որ ցամաքն աչքերնէն կորսընցուցին, ալ անիկէ ետեւ տրտմութիւննին շատ աւելի սաստկացաւ: Ամէն իրիկուն հարկ կ՚ըլլար որ Կոլոմբոս զիրենք մխիթարէ եւ սիրտ տայ: Շարունակ արեւելքի դիէն աղէկ հով մը շնչելով՝ հանդարտութեամբ իրենց երթալու կողմը կը վարեր. երկինքը՝ միօրինակ պայծառ, օդոյ բարեխառնութիւնն ալ քաղցր ու զուարճալի էր: Ծովապետն աս ամէն բանն առջեւնին կը դնէր ու կ՚ըսէր թէ ահա ամէն դիւաց յաջողութեան մէջ ենք, եւ անտարակոյս նաւորդութիւննիս աղէկ վախճան մը կ՚ունենայ: Նոյն իսկ իր արիութիւնն ու հանդարտութիւնը նաւավարներուն վրայ շատ մեծ ազդեցութիւն կ՚ընէր. որովհետեւ ան ապստամբութեան խորհուրդները՝ որոնք իր

Հոն չեղած ատենները կը մտածուէին, ետքէն երբ որ խօսելու կը սկսէր, անմիջապէս կը լուծուէին ու կ'ոչընչանային: Միանգամայն զանազան հնարքներ ալ կը մտածէր իրենց վախնալու առիթ չտալու համար. գլխաւորաբար կը ջանար որչափ յառաջ գացած ըլլալնին նաւավարներէն ծածկելու. բուն հեռաւորութիւնը գաղտուկնշանակելէն ետքը՝ նաւավարներուն նայած գրքին մէջ՝ առած ճամբուն երէքին մէկը մինակ կը դնէր:

Սեպտեմբերի 13ին կողմնացուցին սլաքը փոփոխութիւն մը ցուցուց. Կոլոմբոս անմիջապէս աս բանիս մէկնութիւն տուաւ, որ թէպէտ սխալական էր, ի վերայ այսր ամենայնի ընկերներուն միտքը հաւանեցընելու բաւական եղաւ. Նախ որ Կոլոմբոսի աստեղաբաշխական տեղեկութիւններուն վրայ մեծ վստահութիւն ունէին. երկրորդ ալ՝ վասն զի իրենք սխալը ճանչնալու չափ գիտութիւն չունէին: Նոյն իսկ այս օրուան օրս սլաքին՝ արեւադարձներու տակը ունեցած աս փոփոխութեան պատճառը չգիտցուիր:

Նաւերը յառաջ տանելով, երկրորդ օրը (Սեպտեմբերի 14ին) արագիլ (ղուլէֆլին) մը տեսան: Ասոր վրայ ամէնքն ալ մեծ ուրախութիւն ունեցան. որովհետեւ միտքերնին դրեր էին թէ ասիկա ցամաք երկրի նշան մըն է: Բայց գիշերը յանկարծ չփոթութիւն

ու վայնասուն մըն է փրթաւ նաւավարներուն մէջ։ Հեռուանց ահագին բոց մը տեսնելով՝ կարծեցին թէ իրենցմէ քանի մ'ասպարեզ անդին՝ երկինքէն կրակ կ'իջնայ։ Աստեսակ օդերեւոյթները արեւադարձներու. տակը յաճախ կը պատահին, բայց նաւաստիք տեղեկութիւն չունենալով՝ իրական կրակ սեպեցին, եւ կը կարծէին որ իրենց նաւերն ալ պիտ'որ այրին. բայց վերջապէս տեսնելով որ ան զարհուրելի բոցը քանի կ'երթայ կը նուազի ու կամաց կամաց ծովուն մէջը մտնելով կը մարի, իրենք ալ հանդարտեցան։ Ետեւէն եկած օրերը ամէն բան աղէկ գնաց։ Ատեն ատեն անուշ հոտ մը կ'առնէին, եւ Կոլոմբոս իրենց կը զրուցէր թէ Ասիկա ան երկիրներուն անտառներէն է՝ ուր քանի կ'երթայ կը մօտենանք։ Նոյն ատեն սկսան նաեւ տեսնել որ ջրին վրայ զանազան տեսակ տնկեր կը լողան, որոնցմէ մէկ քանին այնպէս թարմ ու դալար էին, որ կարծես թէ նոր փրցուեր են։ Տեսակ մը ճերմակ թռչուն՝ որ ջրերու վրայ չիթառիր, խումբ խումբ թռն ձկեր՝ որ նաւերուն բոլորտիքը կը պտըտէին, եւ ուրիշ նշաններ իրենց կ'աւետէին որ ցամաքը մօտ է. ուստի եւ սաստիկ անհամբերութեամբ մը կը սպասէին որ երկիր տեսնեն։

Աս բաները տեսնելով Լոբինդոս ընթացքը շատ շուտցուց, եւ բոլոր նաւուն մար-

դիկը հաստատեցին Թէ կղզիներ կը տեսնեն։ Իսկ Կոլոմբոս նաւաստեաց յոյսը չհատատեց, որովհետեւ ինք անոնց ամենէն ալ աւելի փորձ առած ըլլալով՝ գիտէր որ շատ անգամ մեծ ծովերու վրայ արեւուն ճառագայթները Ովկիանոսէն ելած մշուշներուն մէջէն անցնելով՝ մարդուն աչքին ճշմարիտ ցամաք երկրի պատկերներ կ'երեւցընեն։ Եւ ստուգիւ ալ աս երեւակայութիւնները պարապ ելան, եւ բոլոր ցամաքի նշանները՝ որ օրերով մէկիկ մէկիկ կ'երեւային, առանց հետեւութիւն մ'ունենալու ոչընչացան։ Ուստի եւ նաւաստիները նորէն յուսահատութեան մէջ ինկան։ Ասիկա այնպէս ծով մըն է որ ծայր ծագ չունի, կ'ըսէին. մենք ալ խենթութեամբ զմեզ վրան թողուցեր կ'երթանք։ Ա՜խ. ո՞վ զմեզ մէյ մ'ալ մեր սիրուն հայրենիքը պիտ'որ դարձընէ։ Արդեզք մէջերնէս մէյ մ'ալ Սպանիա տեսնող պիտ'որ ըլլա՞յ։ Զիրենք աւելի շփոթող ու յուսահատեցընողն ան էր որ Կանարեան կղզիներէն ելլելէն վեր՝ միօրինակ արեւելեան հովմ կը շնչէր. անոր համար միտքերնին դրին որ նոյն ծովերուն վրայ երբեք արեւմտեան հով չիփչեր, ուստի եւ ա՛լ ետ չեն կրնար դառնալ։ Աս նիւթին վրայ Կոլոմբոսին բառերը բաւական չէին ըլլար զիրենք խաղաղցընելու,

որովհետեւ կ'ըսէին թէ ինք ալ դեռ աս կողմերը նաւած չըլլալով՝ աղէկ չիճանչնար։

Կոլոմբոս Աստուծոյ կ'աղաչէր որ իրեն օգնութեան հասնի, եւ միայն Աստուծոյ նախախնամութիւնը կրնար իրեն օգնել աս նոր արգելքն ալ յաղթելու. եւ իրօք ալ օգնութիւն բրաւ։ Կարծես թէ նաւավարներուն վախը սուտ հանելու համար՝ մէկէն հարաւային արեւմտեան հով մը ելաւ, որն որ թէպէտ եւ իրենց հակառակ էր, բայց մտքերնէն հանեց շարունակ արեւելեան հով փչելուն գաղափարը՝ որ Եւրոպա դառնալու յոյսը բոլորովին կը վերցընէր։ Ի վերայ այսր ամենայնի նաւաստիք ասով ալ մեծ քաջալերութիւն մը չառացան. նոյնպէս ուրիշ եռեւէ եռեւ պատահած ուրախալի նշանները բաւական չեղան յուսահատութիւննին բոլորովին փարատելու։ Թէպէտ եւ ճնճղկի նման թռչուններ նաւերուն չորս դին կը թռչտէին, որոնց ձայնը՝ իրենց հայրենեաց թռչուններուն երգը կը յիշեցընէր, եւ նոյն իսկ պզտիկութիւննին կը ցուցնէր որ ցամաք երկիրներէն այնչափ հեռու չէին կրնար երթալ. ի վերայ այսր ամենայնի Կոլոմբոսին ընկերները ատոնցմէ հաճութիւն մը չէին զգար, որովհետեւ ամէն բարեգուշակ նշան՝ աչքերնուն մէյ մէկ խաբէութիւն կ'երեւար։

## Բ.

### Նաւաստեաց ապաստամբութիւնը:

Երենք աս մտածմանց մէջ եղած ատեն՝
մէյ մ'ալ Սեպտեմբերի 21ին տեսան որ խիտ
բոյսերով դալարած ծովի մը կը հասնին,
որով սկսան քիչ մը սիրտ առնուլ. բայց
որովհետեւ աս խոտերը քանի կ'երթար
աւելի կը խտանային, եւ աչուըններուն զօ-
րածին չափ կը տարածուէին, անոր համար
մտքերնին դրին որ ծովուն տակը գտած
աշխարհքի մը վրայ կը նաւարկեն, որ իրենց
նաւագնացութեանն ալ արգելք պիտ'որ
ըլլայ: Ասով թէ չէ միայն յուսահատու-
թիւննին մեծցաւ, հապա նաեւ սկսան
տրտունջնին սաստկացընել եւ ապստամբու-
թեան խորհուրդներ ընել. այնպէս որ Կոլոմ-
բոս ալ դժուարաւ կրնար զիրենք զսպել:
Անծանօթ ջրերու անկոխ անապատի մը վրայ
ենք, կ'ըսէին, ուտելիքնիս կամաց կամաց
պիտի սպառի, մենք ալ սովէ ու ծարաւէ
պիտի մեռնինք: Ո՛չ նաւահանգիստ կայ,
ո՛չ ցամաք երկիր մը՝ որ պատսպարինք, ո՛չ
ալ գոնէ ժայռ մը կամ ուրիշ մարդկային
ստեղծուած մը. ծովէն շատ բան չիտեսնու-
իր: Իսկ այսպիսի չփորձուած վտանգներու
մէջ զմեզ դնող մարդն ո՞վ է: Ո՞վ է ան՝ որ
զմեզ մեր ազգականներէն, մեր տուներէն, մեր

հայրենիքէն զատեց, ու սաստիկ յուսահատական վիճակ մը խոթեց: Օտարական դըրանցի մը, որ Սպանիայի մէջ տուն տեղ չունի, եւ իր միտքը դրածը կատարելու համար՝ մեր կեանքըն այսպէս վտանգի մէջ դրաւ: Արդ մենք մեռնելու տեղ՝ եկէք զինքը մեռցընենք ու նետենք Ովկիանոսին մէջ, որուն՝ խենթու պէս՝ ծայրը գտնելու ետեւէ ինկեր է: Ետքը ո՞վ պիտի իմանայ: Սպանիա կը դառնանք կ'ըսենք որ ծովապետնիս աստղները դիտած ատեն՝ անզգուշութեամբ մը, մանաւանդ որ արդէն նոր երկիր գտնելու յոյսը կտրած էր, ծովուն մէջն ինկաւ թաղուեցաւ: Աս կերպով ինք իր յանդգնութեան պատիժը կ'առնու, մենք ալ կը դառնանք մեր տեղը կ'երթանք: Ո՞վ կրնայ ցուցընել որ ըսածնիս սուտ է. մեր կենաց ապահովութիւնն ալ բաւական պատճառ չէ՞ աս գործքս արդարացընելու: — Ասանկով քանի կ'երթար տրտմութիւնն ու ապստամբական խորհուրդները իրենց վրայ կը ծանրանար. երկ'երկու, երեք երեք հոգի կ'ելլէին նաւուն վրայ կը պտըտէին, եւ իրենց սրտին զարհուրանքըն ու չար խորհուրդնին իրարու կը հաղորդէին:

Կոլոմբոս աս ամէն բան կ'իմանար. բայց իր արիութիւնը զինքը երբեք չէր լքաներ. ինք միշտ հանդարտ ու զուարթ էր: Գլխաւ-

որ յանցաւորներուն սպառնալիք կ'ըներ՝ թագաւորական հրամանը յիշեցընելով. ոմանց սաստ կամ պատիւ կը խոստանար. որոնց որ բնութիւնը կը ճանչնար որ հեզ մարդիկ են՝ քաղցր խօսքերով սրտերնին կ'առնուր, անանկ որ իրենք ալ կը սկսէին ըրածներնուն վրայ ամչնալ:

Սեպտեմբերի 25ին կարծեցին որ երկիր մը կը տեսնեն. եւ երեք նաւուն մէջինները ալ սաստիկ ուրախութենէն կարծես թէ խելքերնին կորսնցուցին: Բայց ասոր ալ խաբէութիւն ըլլալը իմացուելով՝ նորէն իրենց խորունկ տրտմութեան մէջը թաղուեցան: Իսկ Կոլոմբոս քանի կ'երթար իր յուսոյն մէջ աւելի կը հաստատուէր: Քանի մը նշաններէ կ'իմանար որ մօտեցեր է ան երկիրը՝ որուն գտնուելուն վրայ իր ընկերները յուսահատեր էին: Դլփիններ ու թռչող ձկեր նաւերնուն բոլորտիքը կը լողային: Իսկ նաւուն ընթացքն անանկ յաջող էր, որ գուցէ ծանօթ ծովերու վրայ երբեք այնպէս ապահովութեամբ նաւող եղած չէր. օդը հանդարտ էր, ծովը՝ խաղաղ, հովն ալ, անանկ թեթեւ՝ որ շատ անգամ նաւաստիքն իրենց տրտմութիւնը մոռնալով, կը հանուէին ջուրը կը նետուէին ու նաւերուն քովերը տղու պէս ալիքներով կը խաղային:

Անկից ետքը ալ ցամաքային թռչուննե-րը վերջացան. որմէ սկսան վախնալ որ չըլլայ թէ առանց իմանալու կղզիի մը քովէն զար-կած անցած ըլլան, ուստի եւ ուզեցին որ Կոլոմբոս դէպ ի Հիւսիս նաւէ. բայց անիկա ամենեւին ականջ չէր կախեր: Ինք արեւմուտ-քի կողմը բռնած շիտակ կ'երթար. կարծես թէ իրեն յայտնութիւն եղած էր որ փըն-տռած երկիրն արեւմուտք պիտ'որ գտնուի: Շատ չանցաւ՝ մէյ մ'ալ սարսափելի բազմու-թեամբ ցամաքային թռչուններ ու երկրի մօտ գտնուող ձկեր սկսան երեւալ. որով նաւաստեաց յոյսն այնչափ մեծցաւ՝ որ ատեն ատեն կը կարծէին թէ ցամաք կը տեսնեն: Միակերպ ամէն նաւէն ալ Ցամա՛ք, ցամա՛ք, կը պոռային: Բայց յոյսերնին պարապ ել-լալուն պէս՝ սրտերնին կը կոտրէր կը յուսա-հատէին: Անոր համար ծովապետը հրատա-րակեց թէ ով որ մէյ մ'ալ երկիր կ'աւետէ, ու ետքէն կը տեսնուի որ բանը ստոյգ չէ, խոստացուած հատուցմանց բոլոր իրաւունքը կը կորսնցընէ:

Հոկտեմբերի 7ին Բինզոնին աղաչելուն համար, եւ դէպ ի արեւմտեան հարաւ թռչող գունդ գունդ ճնճղուկներուն նշա-նէն, Կոլոմբոս իր նաւին ընթացքը քիչ մը դարձուց, եւ երեք օր կը կարծուէր որ ցամաք կը մօտենան. առած անուշահոտութիւննին

ու տեսած դալար խոտերնուն՝ ցամաքի աւետաբերները կը սեպուէին։ Բայց երբ որ տեսան որ աս ամէն նշանները հետեւութիւն մը չեն ունենար, վերջապէս Հոկտեմբերի 10ին բանը յայտնի ապստամբութեան դարձաւ։ Բոլոր նաւազները մէկ եղած՝ գացին Կոլոմբոսի գլուխը ժողվեցան եւ յայտնեցին որ ա՛լ ասկից առաջ չենք երթար։ Անիկա զԱստուած փորձել է կը պոռային. մեր քաջարտութեան շնորհակալ եղիր որ երեսուն օր է՝ աշխարհքիս ծանօթ սահմաններէն դուրս կը նաւենք. միտքդ ի՞նչ է. ո՞ւր պիտի տանիս զմեզ։ Սպանիա դառնանք. մենք ամէնքս ալ աս կ'ուզենք. ուրիշ տեղ երթալ չենք ուզեր. մէջերնէս մէկն ալ չկայ՝ որ ատկէ ետքը իր կեանքը վտանգի մէջ ձգէ։

Կոլոմբոս աս շփոթութեան մէջ ինքը զինքն ամենեւին չէր կորսնցըներ, եւ ո՛չ փոքր այլայլութիւն մը կը ցուցըներ։ Սկսաւ նաւազներուն մէյ մը առանձին առանձին, մէյ մը ամէնը մէկտեղ ժողված՝ խօսիլ ու հանդարտեցընելու եւ քաջալերելու ջանալ. բայց ամէն բան անօգուտ կ'ըլլար։ Ան ատեն ալեաց ուժգնութենէն չխախտող ապառաժ վիմի պէս հաստատուն կեցած՝ հրամայական կերպով մը կը ծանուցանէ թէ թագաւորն ու թագուհին է զիս խրկողը՝ որ Հնդկաստան գտնեմ. ուստի մինչեւ որ Աստուծոյ

շնորհքովը իմ պաշտօնս չկատարեմ, չեմ կրնար ետ դառնալ։ Եւ ձեր գլուխն եմ, պէտք է որ դուք ինծի հնազանդիք։ Այս խօսքով ամէն բան լմնցաւ. ամէնքն ալ ստիպուեցան գլուխ ծռել։ Կ'ըսեն թէ Կոլոմբոս նոյն ատենը միանգամայն ըսած ըլլայ, որ եթէ երեք օրուան մէջ ցամաք տեսնելու չըլլամ՝ ուզածնիդ կը կատարեմ։

## Գ.

## Երկիր գտնելնին։

Երկրորդ օրը՝ Ջրին վրայ սպիտակ դժնկի ծաղկած ոստ մը, տախտակ մը, մէյ մ'ալ մարդու ձեռքով գործուած գաւազան մը տեսնուելով, նաւաստիները իրենց տրտունջները մէկ դի ձգեցին, ու սկսան աչուըներնին բացած սպասել։ Այս ուրախական յոյսերնին ան աստիճանի եղաւ՝ որ նոյն իրիկունը Կոլոմբոս իրենց հետ կարող եղաւ՝ հօր պէս տեսնուիլ ու խօսակցիլ։ Նաւուն վրան Ողջ լեր Թագուհի երգը երգելէն ետեւ՝ ծովապետն իրենց սիրտ շարժող ճառ մը խօսեցաւ։ Եւ երբոր հրամայեց որ զգոյշ կենան, չըլլայ թէ ջրի տակ գտնուող ժայռերու զարնուին. եւ ամենէն յառաջ երկիր տեսնողին՝ զանազան պարգեւներ խոստացաւ. արդէն տէրութեան կողմանէ ալ երեսուն թագակիր (ոսկու) թոշակ խոստացուած էր։

Այն գիշերը Կոլոմբոս ամենեւին չքնացաւ: Բոլոր նաւերուն վրայ ալ սաստիկ ուրախութիւն մը տիրած էր: Ա՛լ ոչ ոք կը տարակուսէր: Իսկ Կոլոմբոս անթարթափ աչքով խորունկ մը հորիզոնը կը դիտէր: Գիշերը ժամը դէպ ի տասնին յանկարծ հեռուանց ճրագի լոյս մըն է կը ցոլանայ. աս լոյսը կ'երթար կու գար, կարծես՝ թէ ալիքներուն վրայ ելլող իջնող նաւակի մը վրայ էր: Կոլոմբոս՝ զՊետրոս Կուդիերէս իրեն կը կանչէ. աս կողմը լոյս մը չե՞ս տեսներ, կ'ըսէ, դիտակին շիտկութեամբը: Կուդիերէս լոյսը կը տեսնէ, եւ երկուքը մէկտեղ շարունակ կը սկսին դիտել: Կոլոմբոս՝ ուրիշ մէկն ալ քովը կը կանչէ. Տես, կ'ըսէ, աս լոյսը. բայց լոյսն արդէն աներեւոյթ եղած էր: Քանի մը րոպէ ետքը երեքը մէկտեղ նորէն տեսան. լոյսը մէյ մը տկար՝ մէյ մը պայծառ կ'երեւար ու միշտ ճօճելով, կը տեսնուէր որ զանազան անցքեր կ'ընէր, ծովուն ներս դուրս մտած ելած ափանց առջեւէն քալելու պէս: Վերջապէս մէյ մ'ալ բոլորովին կորսուեցաւ:

Այն աղուոր գիշերը երեք նաւուն ալ զարմանալի երագութեամբ մը ալիքները կը ճեղքէին: Մէյ մ'ալ Լա Բինթա նաւուն մէջէն խառնակ եւ պայլայլած՝ ուրախութեան ձայն մը կ'ելլէ. ամէնքը մէկտեղ՝ Ցամա՛ք, ցամա՛ք

կը պոռան։ Ինչպէս առաջուց որոշուած էր՝ թնդանօթով մը բանը ծովապետին իմացուցին. ան ալ դիտելով՝ դրեթէ երկու ասպարէզ հեռու ցամաք մը տեսաւ։ Թնդանօթ մ'ալ ինք արձակեց. ա՛լ անկէ ետեւ ամենուն սիրտն ուրախութեամբ ու ցնծութեամբ լեցուեցաւ եւ աս ուրախութիւնը ա՛լ խաբէական չէր։

Կոլոմբոս հրամայեց որ առագաստներն ամփոփուին, եւ նաւերուն ընթացքը բոլորովին կեցընելով՝ լուսընալուն կը սպասէին։

Գ.

Կուանահանի կամ Սուրբ Փրկիչ։

Կոլոմբոս Բալոսէն ելլելէն իննսուն օր եւ Կանարեան կղզիներէն անցնելէն երեսունուվեց օր վերջը 1492ին, Հոկտեմբերի 12ին Ամերիկայի մէջ ամենէն յառաջ գըտնուած Կուանահանի կղզին հասաւ, որն՝ որ Լուկայեան կղզիներուն պզտիկներէն մէկն է։ Մերկ ու պղնձագոյն մարդիկներ ամէն դիաց գունդագունդ դէպ ի ծովեզր վազեցին, եւ ապշած ու զարմացած կը նայէին։

Կոլոմբոս ցամաք ելլելուն պէս՝ ուրախութեան արցունք թափելով՝ խոնարհեցաւ ծնկի վրայ եկաւ, եւ ան օտարական երկիրը որ իրեն շատ գեղեցիկ՝ կ'երեւար, մեծ ցընծութեամբ համբուրեց։ Անիկա ոչ Սիբանկոյ

նշգլին էր, ոչ ալ Գաթայի թագաւորու-
թիւնը, վասն զի Սպանիացիներուն չորս դին
առած մարդիկներուն մերկութիւնը բաւա-
կան կը ցուցընէր որ դեռ նոյն երկիրը քաղա-
քականացած չէ. բայց բերրի երկիր մըն էր,
ծառերը՝ բարձր ու գեղեցիկ, տնկերէն շա-
տերը՝ Եւրոպացւոց անծանօթ էին. մէկ խօս-
քով՝ սքանչելի տեղ մըն էր, եւ աւելի մեծ
երկիրներ գտնելու յոյս կու տար։

Ծովապետն իր ընկերներովը Աստուծոյ
շնորհակալ ըլլալէն ետքը, ոտք ելաւ, թուրն
հանեց եւ ըսաւ. Ես Կոլոմբոս՝ Փերդինանդոս
թագաւորին ու Եղիսաբէթ թագուհւոյն ա-
նուամբ աս երկրին կը տիրեմ, անունն ալ
Սուրբ Փրկիչ (San-Salvador) կը դնեմ։

Նոյն ատենը բոլոր նաւաստիներն ու
պաշտօնականները անոր իբրեւ փոխարքայի
եւ ծովապետի հնազանդութեան երդում
ըրին։ Անկից ետքը Սպանիացիներուն աս
յաջողութեան վրայ ունեցած ուրախութիւնը
այնպէս սաստկացաւ, որ կարծես թէ խել-
քերնին թռուցին։ Իրար կը գրկէին, կ'եր-
գէին, կը ցատքռտէին, հեռու տեղ մը կը
վազէին, ու նորէն ետ կը դառնային, կու
լային, կը խնտային. վերջապէս իրենք իրենց-
մէ ելած էին։ Ոմանք կու գային ծովապե-
տին խնդակից կ'ըլլային, ոմանք ապստամ-
բութիւննին յիշելով՝ իրեն առջեւն երեսի

վրայ ինկած՝ թողութիւն կը խնդրէին. շատերն ալ կ'աղաչէին որ Սպանիա դառնայ նէ՝ զիրենք չմոռնայ, որովհետեւ արդէն նոյն ատեննուընէ զինքն իբրեւ շնորհք բաշխող կը մտածէին: Ամէն մարդ անոր վրայ զարմանքով մը կը նայէր, եւ իրեն հանճարին գովեստներ կու տար: Ստուգիւ աս մարդիկներուն տեսարանը բոլորովին աննման բան մըն էր, վասն զի իրենց անպատում ցնծութենէն եւ զարմացմանէն զատ՝ ամէն մէկ քայլին դիմացնին նոր նոր գիւտեր կը բացուէր, եւ նոյն իսկ իրենք ալ վայրենիներուն աչքին տեսիլ մ'եղած էին, որոնց առջին աս օտարականներուն գալը չմեկնուելու հանելուկ մըն էր:

Նոյն երկրցիք առաջին անգամ նաւերը տեսած ատեննին՝ կարծեցին որ ծովային հրէշներ են: Սպանիացիք նաւերէն դուրս ելլելնուն պէս՝ վայրենիները ճեպով փախչելու սկսան, եւ թաւուտ անտառներու մէջ մտան ծածկուեցան. բայց կամաց կամաց դարձան նորէն եկան, եւ երկրպագութիւն ընելով՝ յարգութեան համար ձեռուընին գլուխնին կը դնէին, կարծելով որ աս իրենց երեւցող հագուած ու ճերմակ մարդիկները թեւաւոր մեքենաներով երկնքէն իջած են: Իսկզբան քիչ մը հեռու կեցան, բայց ծովապետը զանազան նշաններով ու քաղցրու-

թեամբ անոնց սիրտը քաշեցու համարձակու-թիւն տուաւ: Նոյն ատենը հետաքրքրու-թեամբ մը անոնց քովը մօտիկցան, եւ սկսան Սպանիացւոց զգեստն ու մորուքը բռնել, ձեռքով նաւերը կը ցուցընէին, ու ապշած աչուրներով անշարժ կը կենային: Կոլոմբոս նաւերէն մէկ քանի դոյզնագին բաներ ու խաղալիկներ բերել տուաւ, որոնց վրայ կըղ-զեցիները յափշտակուեցան. ուլունքները (ղօնճօ–խները), ժապաւէնները (չէբքէնները) եւ պղնձի կտորուանքը տղայական ուրախու-թեամբ մ'ընդունեցան: Բայց ամէն բանէն աւելի բոժոժներու (ըշնէկըրդօ–խներու) վրայ մեծ զուարճութիւն մ'ունեցան. շարունակ ականջներնուն քով կը տանէին ու կը շար-ժէին:

Այս միամիտ մարդիկներուն ցուցըցած ընդելական համարձակութիւնը ծովապետին խրախոյս մը տուաւ. ան ուրախալի րոպէին մէջ իր երեւակայութիւնն ամէն բան կը գե-ղեցկացընէր, եւ իրեն կը կարծեցընէր որ աս վայրենիներն անմեղ ու քաղցրաբարոյ ըլլալով՝ քրիստոնէութիւնը դիւրաւ կ'ըն-դունին: Զանոնք մասնաւոր հոգով մը կը քննէր ու կը նկատէր, որովհետեւ՝ կը մտա-ծէր որ վերջէն իր ձեռօքը հոն քաղաքակա-նութիւն պիտի մտնէ: Անոնք զգեստ ըսուած բան չէին ճանչնար, մորուք չունէին, մոր-

թերնին պղնձի գոյն էր, բայց իրենց դէմքերին գծագրութիւնն այնչափ տգեղ չէր. աչուըննին սեւ, մեծ ու շատ վառվռուն էր, կերպարանքներուն վրայ արտաքոյ կարգի անուշութիւն մը կ'երեւար. ոչ շատ մեծ էին ոչ ալ խիստ պզտիկ, հասակնին դիւրաթեք եւ չափաւոր, բայց իրենց անդամներուն վրայ երեւելի ոյժ մը չէր տեսնուեր, եւ ոչ իրենց կեցուածքը պատերազմական հոգի կը ցուցընէր: Ասոնց բոլոր զարդարանքը՝ այլանդակ նկարներէ ուրիշ բան մը չէր: Շատերուն ամբողջ մարմնոյն վրայ նկարներ կային, ոմանք ալ մինակ քթերնին կամ աչուըններնուն բոլորտիքը նկարելը բաւական սեպած էին: Մազերնին սեւ էր, ողորկ ու շիտակ, գլուխներնուն առջեւի կողման վրայ շատ կարճ, բայց ետեւի դին մէկ քանի ճիւղ գիսակ թող տուած էին, որոնք կլոր կլոր եղած՝ ուսերնուն վրայ կ'իջնային: Աս առաջին հեղ տեսնուածներուն ամէնքն ալ երեսուն տարեկան կ'երեւային: Կոլոմբոս կարծելով որ Մարկոս Պօղոսին ստորագրած Հնդկային Արքիպեղագոսին կղզիներէն մէկուն վրան է, տեղւոյն բնակիչները Հնդիկ կոչեց:

Սպանիացիք յօժարութեամբ այնչափ նոր բաները քննելու զբաղած ըլլալով, ցամաքէն զատուիլն ու նաւ մտնելը չէին մտածեր. ուստի պէտք եղաւ որ գիշերը վրայ

հանելով յիշեցընէ ու նաւ դառնալու ստի-
պէ: Բոլոր ցորեկը ծովեզերքին վրայ թա-
փառելով անտառներու մէջ մտնելով ելլե-
լով, սքանչելի գիւտէ մը սքանչելագոյն գիւ-
տի երթալով, մէկ ուրախութենէ ուրիշ
ուրախութիւն յաջորդելով՝ ժամանակնին
անցուցած էին: Սրտերնին անանկ ուրախու-
թեամբ լեցուած էր՝ որ ամենեւին յոգնու-
թիւն չէին զգար: Մարմնով նաւ դարձան,
բայց աչուրնին կղզւոյն վրայ սեւեռած մնաց,
որ անոնց նոր աշխարհքին մէջ իրենց առաջին
գիւտն էր. անոր համար անհամբերութեամբ
մը առտուան կը սպասէին, որ իրենց ար-
շաւանքը նորէն սկսին:

## Ե.

### Կղզւոյն քննութիւնը:

Լուսընալուն պէս՝ Սպանիացիք տեսան
որ ափանց վրայ դիզուած բազմութենէ զատ,
Հնդիկները ծառակուրներու (canot) մէջ լե-
ցուած՝ իրենց նաւերուն չորս դին բոլորած
էին: Աս ծառակուր ըսուած նաւակները մէկ
կտոր ծառ մը փորելով կը շինէին, որուն
մէջ քառասուն յիսուն հոգի կրնար մտնել:
Ծառակուրը երեսն ի վայր դառնալու ըլլար
նէ, Հնդիկները դիւրութեամբ մը լողալով
կը բռնէին կը շտկէին, ջուրը՝ փորուած
դդումներով կը պարպէին, եւ առանց աշխա-

տուլթեան՝ նորէն մէջը կը մտնէին։ Հետերնին բերած էին բամբակ, պաւպկայ (թութակ) եւ մանիոքի ալիւրէ Հաց Սպանիացիներէն ոմանք դիտեցին որ վայրենիներէն շատերը քթերնին զարդի Համար ոսկի անցուցած էին, եւ փորձելով տեսան որ Հընդիկները՝ ոսկին բոժոժներու Հետ սիրով կը փոխեն։ Ծովապետն Հարցուց որ ան ոսկին ուսկից կու գայ. անոնք ալ Հարաւային կողմը մեծ երկիր մը ցուցըցին։

Կոլոմբոս, որ երբեք նոյն քաղցր երեւակայութիւնը մտքէն չէր Հեռացըներ, աս ալ լսեց նէ՝ տարակոյսը թող տուաւ, ու Հաստատեց որ Գաթայի թագաւորութիւնն աս է։ Իրեն այնպէս եկաւ որ Հնդիկները ոսկեղէն ամանի մէջ կերակուր կերող Հզօր թագաւորի մը վրայ կը խօսին. եւ ապաՀովութեամբ միտքը դրաւ որ անիկա մեծ Խանը պիտ՚որ ըլլայ։ Սկսաւ բուն երկրցիներուն լեզուին մէկ քանի բառերը սորվիլ, եւ իմացաւ որ անոնց շատ անգամ յիշած ԿուանաՀանի բառը իրենց լեզուաւ նոյն կղզւոյն անունն է։

Երկու օր տանիկ անցնելէն ետքը՝ Սպանիացիք կղզւոյն ու բնակներուն վրայ աւելի խորին ծանօթութիւն մը առնալու ետեւէ ինկան։ Ծովապետը Հրամայեց որ կղզւոյն ափունքին քովերէն նաւելով պտըտին։ Քա-

նի որ նաւերը ծովին զանազան խորշերուն մէջ կը մտնէին կ'ելլէին, տեղւոյն աղուորութեան վրայ ունեցած զարմանքնին կ'աւելնար: Ծառերուն կենդանութիւնն ու բարձրութիւնը Սպանիացիները կ'ապշեցընէր. սա ծառերն էին արմաւենի, գնդարմաւ (cocotier), սղոցիէ (Պէչէյէ) աւելի բարձր կաղենի (մահոգոն ծառը), հալուէ՝ որուն անուշահոտութիւնը մինչեւ նաւերը կը հասնէր: Տեղ տեղ վտակներ ալ վազելով երկիրը կը ջրէին, եւ զանազան կողմեր կը բաժնուէին: Գետնին դէպ ի մէջտեղերը աղուոր լիճ մը կար: Սպանիացիք երկու գեղերու առջեւէն անցան, որոնց մէջ արմաւենւոյ ճիւղերէ շինուած իրարու քով խրճիթներ կային: Էրիկ մարդիկ ու կնիկ մարդիկ ծովը վրայ Եւրոպացւոց մակոյկները տեսած ատեննին խըրճիթներնէն դուրս կը ցատքէին, եւ սաստիկ զարմացման, գուցէ ալ երկրպագութեան ձեւեր կ'ընէին, վասն զի ձեռուընին ու աչուընին երկինք կը վերցընէին, պոռալով օտարականները կը կանչէին, հեռուանց՝ պտուղ, ծաղիկ ու ջրով լեցուն ամաններ կը մատուցանէին, իբր թէ զիրենք երկնաւոր էակներ կը համարէին: Շատերը իրենց ծառակութիւնները ծով կ'իջեցընէին, եւ ետեւնէն նաւերուն կը սկսէին: Իսկ ոմանք ծովեզերքի վրայ քիչ մը կենալէն վերջը՝ ջուրը կը

նետուէին ու լողալով նաւերնէն կ'երթային, եւ աղաղակներով ու նշաններով կը խնդրէին որ ներս մտնեն: Իսկ ծովապետը ծիծաղելով մը իրենց ձեռքէն կը բռնէր ներս կ'առնէր: Անոնց ամէն կերպ քաղցրութիւն կը ցուցընէր, հուլունք ու դրամապատկեր (մետալ) կու տար: Հնդիկներն ալ դիւրագին բաներով իրենք զիրենք երջանկութեան մը հասած կը սեպէին: Մակոյկներով կղզւոյն չորս դին պտըտելու ատեն՝ առջեւնին պզտիկ թերակղզի մ'ելաւ, ուր որ Սպանիացիք՝ կաստիլեայի պարտէզներուն պէս գեղեցիկ պարտէզներու մէջ վեց հատ խրճիթ տեսան:

Կոլոմբոս ամենայն ինչ դիտելով՝ կղզւոյն պզտիկութիւնն իմացաւ, եւ իրեն նաւերուն դարձաւ, որ բնակիչներուն ցուցըցած կղզիներուն մէջերը պտոյտ մ'ընէ: Քովը եօթը Հնդիկ պահեց, որոնք անանկ աղուոր նաւերու վրայ ելլելնուն եւ օտարականներուն հետ երթալնուն համար մեծ ուրախութեան մէջ էին: Ծովապետին միտքն ան էր որ ատոնք քիչ մը սպաներէն սորվելով՝ վերջէն իրեն թարգման ըլլան:



## Փեռնանդինա եւ Սոյամետոյ կղզիները:

Կոլոմբոս աչուըները որ դին որ կը դարձընէր, ամէն տեղ զանազան ձեւերով գե-

ղեցիկ, տափարակ ու բերրի կղզիներ կը տեսնէր: Հնդիկներն իրեն հարիւրէն աւելի կըղզիներու անունն տուին. տասնկով ծովապետը միտքը դրաւ որ Մարկոս Պօղոսին ըսած հրաշալի Արքիպեղագոսն աս պիտ'որ ըլլայ, որն որ Սիբանկոյ կղզւոյն ու Գամթայի թագաւորութեան չհասած՝ Ասիայի արեւելեան կողմը կ'իյնայ, եւ մէջը խնկաբեր ու հոտաւէտ տնկերով լեցուն 7488 կղզի կայ, կ'ըսէ: Թէպէտ եւ Կոլոմբոսին աս երեւակայած բանը ստոյգ չէր, բայց իրեն անանկ սիրելի էր որ երբեք մտքէն չհանեց, եւ աս հիման ապաւինելով՝ անդադար ան ոսկեբեր երկիրները գտնելու ետեւէ կ'իյնար:

Աս կղզիներուն ամենէն մեծին մօտիկցաւ, եւ անունը (Անարատ) Յղութիւն դրաւ: Ինք կը կարծէր որ հոնտեղաց մարդիկները ոսկեղէն ապարանջաններով զիրենք պիտի դիմաւորեն, բայց ամենուն ոսկւոյ երես չտեսաւ, հապա միայն՝ մերկ ու զանազան գոյներով նկարուած բնակիչները ծառակուրներու մէջ մտած՝ դիմացնին կ'ելլէին: Ան տեղն Սպանիացւոց նաւերուն մէջ եղած եօթը Հնդիկներէն մէկը ծովը ցատքելով իր հայրենակցաց ծառակուրներէն մէկուն մէջ մտաւ, եւ ամէնքը մէկտեղ արագ թիավարելով փախչելու սկսան. ցամաք հանելնուն պէս՝ նաւակները թող տուին եւ այծեամնե-

րու ընթացքով դէպ ի անտառները կը վա-
զէին։ Բայց ուրիշ Հնդիկ մը իր նաւակին մէջ
խել մը բամբակ դրած՝ Նինա նաւին մերձե-
ցաւ։ Սպանիացիք զինքն ալ, նաւակն ալ
նաւին մէջ առին, ու դողդողացող Հնդիկը
ծովապետին առջեւն հանեցին։ Եւ որովհե-
տեւ Կոլոմբոսին շատ հարկաւոր բան էր որ
տեղացիք վրան վստահութիւն ունենան,
անոր համար ալ Հնդիկը մարդասիրութեամբ
ընդունեցաւ, գլուխը գունաւոր գլխարկ մը
դրաւ, ձեռքն ալ. հուլունք տուաւ ու տեղը
խրկեց։ Քիչ մը վերջը Կոլոմբոս ուրիշ Հնդիկ
մ'ալ տեսաւ, որն որ առանձին նաւակի մը
մէջ մտած ու վիզն ընդեղէններու նման հա-
տերէ մանեակով (կերտանլըքով) մը զարդա-
րած՝ շուտութեամբ մը կղզիէ կղզի կ'անց-
նէր, առանց կարծեաց ալ հրաշալի օտա-
րականներուն գալուստն իմացընելու համար։
Աս Հնդիկը նշաններով կանչեցին, իր ծա-
ւակովը վեր առին, եւ ծովապետն իրեն
մեղր, հաց ու գինի տալէն ետեւ՝ երկրորդ
օրը ազատ արձակեց։

Նաւը նոր կղզւոյ մը առջեւ հասած էր.
շուտ մը Հնդիկները նաւակներով եկան, եւ
հետերնին բամբակ ու Եւրոպացւոց անծա-
նօթ պտուղներ ու արմատներ բերած էին։
Ծովապետն ելաւ կղզին պտըտեցաւ, եւ ա-
նունը Փեռնանդին դրաւ։ Նոյնտեղայ կա-

նոյլք բամբակէ սփածանելի (ֆէշդէմալ) կա-
պած էին, եւ խրճիթները Կուտինահանիին
խրճիթներէն աւելի կարգաւորեալ ու մաքուր
էին. հոն՝ հենուած կամ ոստայնանկած բամ-
բակ ալ տեսայ. եւ բնակիչները կախուած
անկողին ալ կը գործածէին, զորն որ Համաք
կը կանչէին: Աս անկողինները երկու կող-
մանէ հաստատուած եւ օդի մէջ կախուած՝
բամբակէ դիմացկուն լաթեր էին: Փեռնան-
դինի մէջ ամէն բան սքանչելի էր: Ծովա-
պետն իր օրագրութեան մէջ այսպէս կը գրէ.
“Հոկտեմբերին մէջն ենք, կ'ըսէ, եւ տնկերը
Անտալուսիա Մայիս ամսուն եղած գեղեցիկ
դալարներուն պէս կանաչ ու առոյգ են:
Հոստեղաց պտուղները, խոտերն ու ծառերը
Սպանիայի բերքերէն՝ գիշերը ցորեկուընէ
տարբերածին չափ՝ կը տարբերին„: — Բնա-
կիչներն օտարականներուն այցելութեան
վրայ մեծ հաճութիւն կը ցուցընէին զանոնք
կ'առնէին իրենց անտառներն ու աղբիւրները
կը տանէին. ընտանեցած պապկաներ կ'ըն-
ծայէին, մակոյկները բամբակով կը բեռնա-
ւորէին, պարապ տակառները անուշ ջրով կը
լեցընէին, եւ եռանդեամբ մը դէպ ի ծովեզը
կը գլտորէին:

Կոլոմբոս հոնտեղաց բնակիչներուն նշան-
ները մտքին մէջ միշտ այնպէս կը մեկնէր, որ
հարաւային կողմերը իրեն ոսկեշատ երկիր մը

կը ցուցընեն. եւ աս համոզմամբ Փեռնանդին կղզին թողուց, ու հարաւային արեւելեան դիերը Սոյամեդոյն գնաց: Հոս ալ Փեռնանդինի մէջ պատահածին պէս ոսկի չտեսաւ. ոչ ան հոյակապ քաղաքը, ոչ ալ գոհարներով զարդարուած ու ոսկեղէն ամաններու մէջէն կերակուր կերող Թագաւորը գտաւ, ինչպէս որ ինք Հնդիկներէն լսուած կը կարծէր, այլ միայն ոստալից ծառեր ու գեղեցիկ դալարիք, ծովու ալիքներէն թրջած բարակ աւազ, եւ հարաւային արեւելեան կողմը երկնաբերձ տնկերով պատած ընդարձակ լճեր տեսաւ:

Ծովապետն իր օրագրութեան մէջ այսպէս կը գրէ: "Եղիսաբէթ կղզւոյն (աս անունը ինք դրած էր) գեղեցկութիւնը՝ մինչեւ հիմա մեր տեսած բոլոր կղզիները կը գերազանցէ: Ո՛ր կողմ երթալիքս չեմ գիտեր. աս դալարաւէտ բլուրներուն վրայ զարմանալէն չեմ կշտանար: Հոս շատ մեծանիստ լճեր եւ սքանչելի դարաստաններ կան, որ անոնց բոլորտիքը բուսած կ'աճին: Անտալուսիայի մէջ Ապրիլ ամսոյն եղածին պէս՝ ամէն բան կանաչ է, թռչուններուն դայլայլիկը զիս կը յափշտակէ: Երանի՜ թէ կարող ըլլայի աս տեղերէն երբեք չբաժնուիլ: Պապկաներն անբաւ են, որ արեւուն երեսը կը ծածկեն: Մեծ ու պզտիկ թռչուն-

ներն ու անոնց գոյնագոյն եւ փայլուն փետուրները ստուգիւ սխրալի բան է։ Հոս հասած առեննիս ցամաքէն անանկ քաղցր ու ախորժելի հոտ մը կը բուրէր, որ աշխարհքիս ամէն բանէն աւելի բերկրալի էր։ Կարծեմ որ աս տեղս ներկարարութեան ու բժշկականութեան շատ պիտանի ծառեր կան, բայց ես չեմ ճանչնար„։

Սպանիացիք ցամաքին այսչափ զարմանալիքը տեսնելէն ետքը՝ նաւ դառնալու ժամանակնին՝ ծոցն ալ իրենց քիչ զարմանք չպատճառեց․ վասն զի ջուրն անանկ յստակ ու վճիտ էր, որ յատակը յայտնի կը տեսնուէր, եւ պայծառ թեփով ձկերը քանի որ նաւերն չորս դին կը խաղային ու կը կայտային, ոսկեգոյն ու արծաթագոյն փայլուններ կ՚արձըկէին։ Վերջապէս աս անծանօթ գաւառներուն մէջ ամէն բան իրենց այնպէս նոր, այնպէս զուարթալից, եւ իրենց ճանչցածներէն այնպէս տարբեր կ՚երեւար, որ զարմանքնին ու ցնծութիւննին վայրկենէ վայրկեան կ՚աւելնար։ Միայն անոր վրայ կը տրտմէին որ ծովապետին փնտռած Գաթայի հարուստ եւ հզօր թագաւորութիւնը գըտնելու դեռ շատ ժամանակ պէտք էր․ վասն զի յառաջագոյն Կոլոմբոսին վրայ որչափ որ անվստահութիւն ցուցըցած էին նէ, հիմա ալ նոյնչափ ապահովութեամբ կը յուսային

որ Գաթայի թագաւորութիւնն անտարակոյս պիտի գտնէ։

## Ե.

### Գուպա կղզի։

Ան միջոցներուն՝ սաստիկ ու շարունակ անձրեւներ ու հակառակ հովեր ըլլալով, Կոլոմբոս քանի մը օր Եղիսաբէթ կղզւոյն մէջ մնաց։ Վերջապէս Հոկտեմբերի 24ին կրցաւ ճամբայ ելլել, եւ եօթը ութը կղզիներ թող տալէն ետքը՝ Պահամայի ջրանցքը մտաւ, որ Ղուկայեան կղզիները Փլորիդայէն կը բաժնէ։ Դէպ ի հիւսիս նաւարկելու ըլլար, հիւսիսային Ամերիկան կը գտնէր, բայց ինքն արեւմտեան կողմը գնաց, եւ Հոկտեմբերի 28ին Գուպա կղզին հասաւ։

Լեռներուն ու հովիտներուն տեսքը, դուրս ցցուած հրուանդանները, Ովկիանոսի մէջ վազող յորդաջուր գետը՝ Կոլոմբոսին կարծեցուցին որ ասիկա խիստ մեծ կղզի մը, եւ գուցէ ալ ցամաք երկիր ըլլայ։ Կղզին՝ Յովհաննա կոչեց, իսկ գետը՝ Սուրբ Փրկիչ։ Նոյն ատենը ծովապետը տեսաւ որ վայրենի հնդիկները երկու ծառակրի մէջ մտած՝ շուտով մը գետէն վեր կ'ելլէին։ Ծովապետն ելաւ եւ գնաց երկու լքեալ խրճիթներ դիտեց, որոնց մէջ պարիս (խոկէր), կարթ (օլթա) եւ լուռ կեցած շուն մը կար։ Նոյն տեսակ

չհաջող շուն մէկալ կղզիներուն վրայ ալ տեսած էր: Նորէն նաւ դարձաւ, որ երթայ ծովեզերքը քննէ: Շատ հեղ նաւէն դուրս ելաւ, եւ ամէն տեղ զօրաւոր ու կենդանի բոյսեր գտաւ: Այդին անդին արմաւենւոյ ճիւղերով ծածկուած շատ մաքուր խրճիթներ կային, որոնք թէպէտ եւ իրարու մօտիկ էին, բայց ճամբայ կամ փողոց մը չունէին: Օտարականներն ուր որ կը մերձենային նէ, տեղացիք գլուխնին առած կը փախչէին: Աս կղզւոյն վրայ փայտեղէն դիմակներ եւ արձաններ գտնուեցան, որոնցմէ ծովապետը գուշակեց, որ հոս մէկալ կղզիներէն աւելի քաղաքականութիւն մտած ըլլայ:

Ինչպէս նաւին մէջ եօթը Հնդիկներէն երեքը մնացած էր. ասոնք ըսին որ անկից չորս օր հեռու տեղ նոյն երկրին ներսի դիերը առատ ոսկի եւ հզօր իշխան մը կայ: Բայց Կոլոմբոս նախ ուզեց ասոնցմէ մէկը խաւրել, որ երկրցիներուն հետ խօսի: Հնդիկն հնազանդեցաւ, ջուրը նետուեցաւ, լողալով անցաւ գնաց, եւ իր խօսքովը բնակչաց սիրտն անանկ շահեցաւ, որ անմիջապէս տասնուվեց ծառակուրներու մէջ բամբակ ու արմատ գնելով՝ նաւերուն քովը մօտեցան: Սակայն Սպանիացւոց փնտռածն ոսկի էր: Բնակիչներէն մէկուն քթին վրան արծաթի զարդ տեսնելով՝ հարցուցին որ արծաթն ուսկից կու

դայ. եւ այնպէս հասկըցան որ Նեղքին կողմերէն կը բերուի եղեր: Վայրենիները Գուպային Նեղքին կողմերուն Գուպտնադան կ՚ըսէին, որն որ Գուպայամէջ կամ Գուպայի միջին տեղերը կը նշանակէ: Աս լսելով Ծովապետն որոշեց որ ան հարուստ, հզօր եւ դուցէ ալ մեծ Խան կարծած իշխանին դեսպան մը խրկէ: Աս պաշտօնը Լուդովիկոս Գորրէսին ու Ռոտրիկոյ Երէսին յանձնեց, եւ անոնց վեց օրուան ժամանակ տուաւ: Իսկ ինք նոյն միջոցին մէջ երկիրը քննելու կը զբաղէր: Իր օրագրութիւնը կը վկայէ որ ամէն բոպէ ուրախ եւ զմայլած կը կենար, մտածելով որ հին աշխարհքին առջեւը քանի՜ քանի՜ նորացոյց գեղեցկութիւններ բացուեցան, որոնց դիւտն իրեն միտքն ինկած ազդեցութիւններով յաջողած էր: Գուպա կղզին՝ տեսնուած ամէն երկիրներուն պինտ գեղեցիկն է, հոս կրնայ մարդ միշտ ապրիլ, ըսելով կը պոռար: Եւ Եղիսաբէթ կղզին ստորագրածէն շատ զօրաւոր եղանակաւ՝ աս կղզւոյն լճերը, հրուանդանները, գետերն ու լեռները նկարագրեց:

Արեւադարձներուն ոսկալի փոթորիկները դեռ Կոլոմբոսին ծանօթ չէին, ուստի կ՚երեւակայէր որ հոնտեղերը ծովը միշտ խաղաղ կրնայ ըլլալ: Ստոյգ է որ աս քաղցր երեւակայութիւնը վերջէն մտքէն հանելու

հարկադրեցաւ, բայց մէկալ բաներուն վրայ որչափ որ գովեստներ տուած էր՝ ամէնն ալ ճշմարիտ էին։ Անոնք իրական բաներ են եւ մինչեւ այսօրուան օրս կը կենան։ Ամերիկայի ծառերը, ծաղիկները, պտուղները, գոյնզգոյն, պերճ ու փայլուն փետուրներով թռչունները, ոսկեայ պէս շողշողուն միջատները, կարկեհանն (Փըրմըլը Խոփօ–Բ) ու զմրուխտը, որ այսօրուան օրս Եւրոպայի թանգարաններուն սքանչելի զարդերն են, Կոլոմբոսին զարմանքը կ'արդարացընեն։ Իրեն Գուպա նաւելուն պատճառաւը քանի մը ուրիշ օգտակար գիւտեր ալ յայտնուեցան, որոնցմէ մէկն է գետնախնձորը, որուն գործածութիւնը հիմա այնպէս ընդհանուր ու պիտանի է։

Ղրկուած դեսպանները դարձան, բայց ոչ մեծ խան, ոչ ալ զօրաւոր թագաւոր գտած էին, հապա բոլոր տեսածնին՝ յիսուն խրճիթով գեղ մըն էր, որուն հազարի չափ բնակիչներն եկած Սպանիացւոց չորս դին բոլորած կեցած էին։ Լուդովիկոս Տորրէս՝ որ արեւելեան լեզուներ գիտէր եւ անոնց վրայ կը վստահէր, իմացած էր որ իր քաղդէերէնը, եբրայեցերէնն ու արաբերէնն ամենեւին անօգուտ էին. ուստի միայն ուղեցոյց Հնդիկը կրցեր էր խօսիլ։ Աս Հնդիկը երկայն ատենաբանութիւն մ'ընելով, ճերմակ մարդիկ-

ներուն խելքն ու բարերարութիւնը մինչեւ երկինք բարձրացուցած, եւ անոնց ատանկ պտըտելուն պատճառը՝ զիրենք երջանկացընելու համար է ըսած էր: Այս ատենախօսութիւնն անանկ մեծ ազդեցութիւն ըրած էր, որ Հնդիկները մերձեցած՝ Եւրոպացւոց ձեռքը պագած ու անոնց ընծաներ տուած էին: Նախ էրիկ մարդիկ իրենց յարգութիւնն ըրած էին, վերջէն կնիկ մարդիկ, եւ ամէնքն ալ սաստիկ փափաք ցուցուցած էին որ ասոնք հիւրերը իրենց մէջ բնակին. բայց երբ որ թարգմանը հիւրերուն երթալն իմացուցած էր, բարի կղզեցիներէն շատերն աղաչած էին որ զիրենք ալ հետերնին երկինք տանին, կարծելով որ հոնկից եկած են ու հոն կ'երթան:

Նաւակով դեսպանները՝ ծովապետին բաղձացած լուրերէն մէկն ալ չբերին. վասն զի Սպանիացւոց աչքին՝ ոսկին ամէն բանէն աւելի պատուական կ'երեւար, թէպէտեւ ան գեղեցիկ երկիրները՝ ոսկիէն աւելի կ'արժէին: — Դեսպանները նաւ դառնալու ատենին՝ առջի անգամ ծխախոտ տեսան: Տեղացիք չոր տնկի մը տերեւները կը պլլէին, ու մէկ ծայրը վառելով՝ մէկալ ծոթը շըթունքներնուն մէջ կը բռնէին, եւ քաշած մուխերնին դուրս կը փչէին: Եւրոպացիք ծխախոտն առաջին անգամ հոն տեսան, եւ առջի դարափարը հոն առացան:

Ընտանիքներէն շատերը ծովապետին հետ երթալ ուզեցին, իրենց ալ մէկտեղ խել մը մարդիկ տալու: Կոլոմբոս ասոնց քաղցրութիւնը, պարզութիւնն ու խաղաղասէր բարքը դիտելով՝ կը յուսար որ դարձերնին դիւրին կ'ըլլայ, ինչու որ ինք միշտ աս բարեպաշտ մտածմունքն ունէր, եւ կ'ուզէր որ իր աս ձեռք զարկած գործքին փառքին հետ՝ աւետարանին տարածման գործիք ըլլալն ալ միացընէ:

## Ը.

### Հայթի կամ Սպանիական կղզի:

Հնդիկները շատ անգամ Պոհիոյ անունը յիշելնուն համար՝ Կոլոմբոս ուզեց որ նոյն երկիրն ալ երթայ գտնէ. իրեն այնպէս կ'երեւար որ աս Պոհիոն՝ իր գիտցած Պապեգան ըլլայ:

Հոս տեղը Կոլոմբոս սաստիկ վիշտ մ'ունեցաւ: Բինզոն, որ Բինթա նաւին նաւապետն էր, Հողմալից առագաստներով դէպ արեւելք գնաց եւ աներեւոյթ եղաւ: Աս մարդս չար դիտաւորութիւն մ'ունէր, որ ինքն առանձին երթայ երկիրներ գտնէ, որպէս զի դիւտին բոլոր փառքն ինքը ժառանգէ: Ծովապետն անոր դառնալուն սպասել ուզեց, եւ սկսաւ Գուպային վրայ ըրած քննութիւններն առաջ տանիլ: Օր մը որ

կղզւոյն հրուանդանը համնելով՝ չէր գիտեր թէ որ կողմն երթայ, մէկէն ի մէկ հարաւային արեւելեան դին երկիր մը նշմարեց, եւ Հնդիկներն ալ սկսան միաբերան Պոհէոյ պոռալ։ Անոր վրայ Կոլոմբոս շատ ուրախանալով՝ նաւն ան կողմը դարձուց։ Երկու օրուան մէջ* ան տեղւոյն նաւահանգիստը մտաւ, որն որ Սուրբ Նիկողայոս անուանեց. եւ անոր հարստութիւնն ու գեղեցկութիւնը՝ Սուրբ Փրկիչ, Փեռնանդին, Եղիսաբէթ ու Գուպա կղզիներուն շատ անցաւ։ Հայդի կղզւոյն երկիրը պինտ բերրի գետիններէն մէկն է, եւ մանաւանդ դիրքը շատ սքանչելի է։ Կոլոմբոս անտառներուն ետեւի դին բարձր լերանց շարք տեսաւ, դարձեալ յարմար նաւահանգիստներ, անանկ լայնանիստ դաշտեր՝ որ ծայր ծոյթ չունէին, եւ այնպիսի խոտաւէտ մարգեր՝ որոնց նման բան տեսնուած չէր։ Սուրբ Նիկողայոս նաւահանգիստէն ելլելով՝ Ժայռոտ ծովեզերքի մը քովէն անցնելէն ետքը՝ Անարատ յղութեան նաւահանգիստն հասաւ, որ առջինին պէս ամէն կերպ դիւրութիւնն ունէր։ Կոլոմբոս ետեւէ ետեւ գտած ամէն տեղերուն ալ անուն կը դնէր։ Հոն դետակ մ'ալ կը վազէր։ Սպանիացիք արդէն

*Հայդի Գուպայէն երկու օրուան հեռաւորութիւն չունի, բայց Կոլոմբոսն հակառակ հովերու բռնուած էր։

քովընտի երթալու ատեննին՝ մշակութեան հետքերը յայտնապէս տեսած էին, եւ ադիէն անդիէն ծառերուն վրայ բարձրացած ծխէն մակաբերեցին որ կղզին շատ բազմամարդ պիտ'որ ըլլայ։ Նոյն տեղն առատ ձուկ ալ որսացին, որոնք Եւրոպայի ձկերը կը յիշեցընէին։ Պզտիկ Թռչնոյ մը երգն իրենց անանկ երեւցաւ որ սոխակի ձայն է։ Աս ամէն զուարճալի երեւոյթներուն պատճառաւ, որ իրենց հայրենիքը միտքերնին կը բերէին, Հայդի կղզին՝ Իսպանիոլա կամ Սպանիական կղզի անուանեցին։

Ծովապետը՝ Անարատ յղութեան Նաւահանգստէն զէնքով վեց մարդ խաւրեց, որ երթան նոյն կողմերը լրտեսեն։ Ինքն ալ երկրին տիրեց, եւ հանդիսութեամբ բարձր տեղւոյ մը վրայ Խաչ մը կանգնեց։ — Վեց աշխարհադէտները դարձան ըսին որ մշակուած դաշտեր գտանք, մարած կրակներ տեսանք, ամէն կողմ մարդակոխ ճամբաներ կային, բայց ամենեւին մարդ չկար, ամէնքն ալ փախստի աճապարած էին։ — Նաւազներէն երեք հոգի ծովեզերաց վրայ ժուռ գալու ատեննին՝ առջեւնէն խումբ մը Հնդիկ փախչելով անցան։ Նաւազները շատ աշխատութեամբ անոնց մէջէն կին մը բռնեցին, որ քթին վրայ ոսկի զարդ ունէր։ Անիկա բոլորովին զարհուրած ու սարսափած էր.

Կոլոմբոս իրեն քաղցրութեամբը խեղճին սիրտը հանդչեցուց. Նոյն ատեն աս Հայդիցի կինը հանդարտեցաւ, զգեստ հագաւ. Եւ իրեն անծանօթ եղած այնչափ գեղեցիկ բաներուն քանի որ կը նայէր՝ կը զմայլէր: Բուժոժները, դունաւոր ու լուսնքներէ շինուած վզնոցներն ու ապարանջանները, պղնձէ մատնիները, զորոնք մատուըներուն անցուցին, խելքը գլխէն առին: Կինն ասանկ հագուած ձգուած՝ տղաս թող տրուեցաւ. Ծովապետն անոր մէկ Կուանահանցի Հնդիկ մը եւ իր Սպանիացի ճամբու ընկեր դրաւ, որ երթան ու աս փախկոտ բնակիչներուն գլխաւորին առջեւն ելլեն:

Խրկուած պատգամաւորները հազար երդով գեղ մը հասան, բայց մէջի բնակիչներն աներեւոյթ եղած էին: Հայդիցի կինը թարգմանին հետ գնաց եւ մէկ քանի Հնդիկ գտաւ: Հոն աս Կուանահանցին սկսաւ զանոնք համոզել որ վախնալու բան մը չկայ, արդէն երկայն ատեն է որ, ըսաւ, աս կղզիներուն վրայ շատ սքանչական բաներ կը պատահին. Երկնքէն թեւաւոր տներով իջած ճերմակ մարդիկներ կղզիներուն այցելութիւն կ'ընեն, եւ ամէն տեղ ընծաներ կու տան. Եւ Հայդիցիներն ալ կը հրաւիրեն որ գան տեսնեն: — Աս խօսքը Հնդիկներն ապահովցուց եւ վախերնին փարատեց: Երկու հազար հո-

զի Սպանիացիներուն մօտիկնալու սկսան, ձեռուընին գլուխներնուն վրայ դրած էին եւ ամէն մէկ քայլին կը կենային, որպէս զի սա երկնաւոր էակներուն յարգութիւննին մատուցանեն: Անդիէն նոր գունդ մ'ալ եկաւ աւելցաւ: Ասոնք բերողը Հայդիցի կնոջ էրիկն էր: Սպանիացիք ամենուն ալ մեծ սէր ցուցըցին, որով Հնդիկներն աւելի համարձակութիւն առին: Թարգմանին ձեռքովը սա օտարականներուն ախորժածն իմանալով՝ սկսան պապկաներ, արմատներ, ձուկ, մանիշքի ալիւրէ հաց բերել: Զիրենք առին իրենց բնակարանը տարին, ու սեւ եւ խիստ փայլուն փայտէ ցած աթոռներու վրայ նստեցուցին: Իրենց հովիտը պտղաբեր ու մշակուած երկիր մըն էր, մէջը գետ մը կար, քովերն ալ արմաւենի եւ ադամաթուզ (bananier): Մարդիկները հոս ալ մերկ էին, ու մորթերնին զանազան գոյներով նկարուած էր, բայց ասոնք՝ ուրիշ տեղերէն աւելի բարակամիտ էին:

Սպանիացիք զարմացած ետ դարձան. բայց ծովապետն աւելի հարուստ եւ աւելի քաղաքականացած երկիր մը կը բաղձար. կ'ուզէր որ Ասիայի երեւելի թագաւորութեանց, ան հոյակապ Պապեգային հանի: Չէր գիտեր որ հին աշխարհքին նման մեծ ցամաքի մը ծովուն բերանը կեցած է:

Չէր գիտեր որ նոյն ծովին մէջ մտնելու ըլ-լար նէ, Հարաւային ու Հիւսիսային կողմը երկու անբաւ ու Հարուստ ցամաքներու կը Հանդիպէր: Չէր գիտեր որ նոյն երկիրներուն Հարաւային կողմը իրեն շատ աւելի ոսկի կը մատուցանէր, քան թէ իր ենթադրած Ա-սիայի թագաւորութիւնները, զորոնք գտնե-լու ետեւէ ինկած էր, եւ գտնելիք չունէր:

Բայց գուցէ իր սխալմունքը կը ճանչ-նար, եւ ուրիշ շատ կղզիներ կը գտնէր, գուցէ ալ նոյն ճամբորդութեան մէջ Ամերիկայի ցամաք երկիրը Հասած կ'ըլլար, թէ որ երկու պատահար՝ արգելք չըլլար. այս ինքն մէյ մը՝ Պինզոնին փախուստը, որուն Համար շա-րունակ շփոթութեան մէջ էր, մէյ մ'ալ Հակառակ Հովերը, որ զինքը ետ դառնալու ստիպեցին:

## ԺԹ.

*Կոլոմբոս Իսպանիոլա կղզին մնալու կը ստիպուի:*

Դեկտեմբերի 14ին ծովապետն առա-գաստները պարզեց, եւ Անարատ յղութեան նաւահանգստէն դուրս ելաւ: Մէկ քանի փարսախ Հեռու՝ սիրուն պզտիկ կղզի մը տեսաւ: Հոնտեղաց կրիաներուն անբաւու-թիւնը պատճառ տուաւ որ նոյն կղզին Թոր-դուկա (կրիայ) անուանէ: Ցամաքի վրայ ե-

լան նէ՝ զուարճալից հովիտ մը գտան, որուն անունը Դրախտի հովիտ (Val Paraiso) դրաւ։ Բայց դէմ փչող հովէն ստիպուեցաւ նորէն Սպանիական կղզին դառնալու։ Եւ դալու ժամանակը ծառակուր մը տեսաւ, որ ահագին ծովուն ալիքներուն խաղալիկ եղած էր․ մէջը մի միայն Հնդիկ մը կար, որ այնպիսի ալէկոծութեան առեն իր նաւակը կ'ուղղէր ու կը քալեցընէր։ Ծովապետն աս յանդգնութեան եւ միանգամայն յաջողակութեան վրայ ապշեցաւ մնաց․ խելքը չէր հասներ որ ինչպէս առանձին մարդ մը չնչին նաւակիկ մ'առած՝ այնչափ հեռու տեղ կրնայ բացուիլ։ Թէպէտ եւ աս բանս ուրիշ անգամներ ալ կղզիներուն մէջ տեսած ու Հնդիկներուն ճարպկութեան վրայ զարմացած էր, բայց ամէն հեղ իրեն նոր բանի մը պէս կու գար։ Հրամայեց որ Հնդիկն իր նաւակովը մէկտեղ նաւուն մէջ առնեն. հոն ըստ իր սովորութեան՝ ընծաներ պարգեւեց եւ ցամաք հանել տուաւ։ Հնդիկը գնաց եւ ցեղապետի (cacique) մը բանն իմացուց. ցեղապետն անմիջապէս ծառակրի մը վրայ ելած՝ ճերմակ մարդիկներուն այցելութեան եկաւ։

Աս անգամ Խաբանիոլա դարձաննէ՝ զատ տեղ մը մօտիկցան. հոն ալ երկիրն աղէկ մշակուած էր, եւ ածուները (Թօբլաները), պտղոյ պարտէզները, սիմինտրի դաշտերը, եւ

մարգերն իրարմէ բաժնուած էին։ Թէպէտ եւ լեռները բարձր դիրք ունէին, բայց անոնց քովի դար վեր ու դար վար տեղերը շատ պառկած ըլլալուն եւ աղէկ հող ունենալուն համար՝ մեծ օգտիւ կրնային գործուիլ։ Ծովապետն աս նաւահանգիստը խաղաղութեան նաւահանգիստ անուանեց եւ հոն մնաց, վասն զի հովերը թող չէին տար որ անկից դուրս ելլէ։

Հոն երիտասարդ ցեղապետ մը չորս մարդէ բարձուած դեսպակի ([illegible]) մը վրայ նստած՝ իրենց այցելութեան եկաւ։ Ինքը ծովապետին քովը նստաւ, իսկ հետը բերած երկու ծերերն անոր ոտուըներուն առջեւը նստան։ Ծովապետն ինչ որ հրամցուց նէ՝ ցեղապետը չկերաւ, հապա միայն շրթունքներուն կը մերձեցընէր եւ հետն եկողներուն կու տար։ Ինք Կոլոմբոսին՝ աղէկ գործուած գօտի մը եւ երկու ոսկեղէն տախտակ տուաւ. Կոլոմբոսն ալ անոր փերթ մը չուխայ կամ ասուի, սրուակ մը նարընջի ջուր ([illegible]), գունաւոր մուճակներ, եւ սաթի ([illegible]) կտորներ ընծայեց։ Դարձեալ անոր առջեւը բոլոր թնդանօթներն արձըկել տուաւ, որմէ ցեղապետն անանկ զարհուրեցաւ, որ Կոլոմբոս հազիւ կարող եղաւ զինքն հանգարտեցընել. անկից ետքը մակոյկով մը

ցամաք հանեց ցեղապետը՝ որն որ տեսած քաներուն վրայ. հիացած մնացած էր։

Աս եղանակաւ եւեւէ եւեւ հաղորդակցութիւններ կը հաստատուէին։ Նաւերուն քովէն ծառակուրներն անպակաս էին. Հընդիկները՝ պտուղ, ոսկի ու բամբակ բերելէն չէին դադրեր. վասն զի առատաձեռնութիւնը կը սիրէին։ Քանի որ նաւաստիները վար կ'իջնային, Հնդիկները մտերիմ սիրով զանոնք կ'ընդունէին, եւ իրենց տունը տանելով՝ մեծ հիւրընկալութիւն կ'ընէին։ Ամէն տեղ Սպանիացիներուն՝ վերին, երկնաւոր բնութիւն մը ունեցող մարդիկներու պէս կը նայէին, եւ ինչ որ Սպանիացիները կու տային, Հնդիկները Դուրէյ (երկինք) կ'անուանէին։

Վեց օր ասանկ կենալէն ետեւ՝ Դեկտեմբերի 22ին Կոլոմբոս հեռուանց նշմարեց որ Հնդիկներով լեցուն ծառակուր մը կու գար։ Անիկա պատգամաւորութիւն մըն է եղեր։ Կղզւոյն իշխաններուն մէջէն պինտ հզօր Կուագանակարի ցեղապետը, որն որ կղզւոյն մեծ մասը կը կառավարէր, աս օտարականներուն մարդ խրկելով կ'աղաչէր որ նաւերը դէպ արեւելք իր բնակած տեղւոյն մօտ բերեն, որպէս զի ինքն ալ կարող ըլլայ տեսնել։ Եւ կուամիգուինային, այսինքն ճերմակ մարդիկներուն գլխաւորին (Կոլոմբոսին)

խառուած էր սքանչելի արուեստով մը ոսկրի վրայ գործուած եւ գունաւոր գնդակներով զարդարուած գօտի մը, եւ փայտէ դիմակ մը՝ որուն աչուըները, լեզուն ու քիթը ոսկիէ էին։ Ծովակալը պատասխան տուաւ որ Հովերը դէմ ըլլալուն՝ չիկրնար ան կողմերը նաւարկել. բայց ցամաքի վրայէն քանի մը պաշտօնակալներ խրկեց, զորոնք Կուագանակարին մեծ պատուով ընդունեցաւ։ Իր բնակած քաղաքը մեծ էր, եւ արմաւենիի փայտէ տուները վարպետութեամբ շինուած էին։ Պաշտօնակալները դարձած ատեն՝ Հետերնին պապկաներ, եւ ոսկեղէն տախտակներ ու զարդեր բերին։

Կոլոմբոսին անդադար կ'ըսէին որ ներքին կողմերը Սիպաոյ (Cibao) ըսուած երկիր մը կայ, որ շատ ոսկեհանք ունի։ Կոլոմբոս աս Սիպաոն՝ Սիբանկոյ կարծելով, առագաստները բացաւ եւ ճամբայ ելաւ դէպ ի ան կողմը, ուր որ աս թագաւորութիւնը կը ցուցնէին։

Ժ.

Դժբախտութիւն։

Ծովակալը՝ Կուագանակարի ցեղապետին նաւահանգստին մէջ կենալ կ'ուզէր։ Օդը գեղեցիկ, ծովն ալ հանդարտ էր։ Կոլոմբոս նախընթաց գիշերը ամենեւին քնա-

ցած չէր, եւ աս բանս Եւրոպայէն ելլելէն վերջը շատ անգամ պատահած էր. ինչու որ ուրիշ վստահելու մարդ մը չունենալով՝ միշտ պատրաստ, միշտ արթուն կը կենար, եւ ինք անձամբ պահապաններու պէս շարունակ դիտելու եւ հսկելու մէջ էր: Իսկ նոյն գիշերը բոլորովին խաղաղ ըլլալով՝ քիչ մը հանգչիլ ուզեց: Ուստի ղեկավարին ապսպրեց որ արթուն կենայ, եւ ինք պառկելու գնաց: Բայց ղեկավարը հրամանը չպահելով՝ ղեկը նաւի պատանիներէն (միջներէն) մէկուն ձեռքն յանձնեց: Նաւապետն ու ղեկավարը հեռացան նէ՝ բոլոր նաւաստիներն ալ գլուխնին դրին քնացան: Պատանին նաւը դէշ ղեկավարեց, ասանկով նաւն է գնաց աւազակոյտի մը խրեցաւ: Ծովապետը մէկէն արթընցաւ, վեր ցատքեց. բայց բանը բանէն անցած էր. նաւը խորտակեցաւ, տախտակներն իրարմէ բաժնուելու սկսան, ջուրն ալ բոլոր ուժով ներս կու գար: Ամենուն ճարն հատաւ, ուստի նաւէն ելլելու եւ մակոյկներու մէջ մտնելու աճապարեցին:

Ի՜նչ մեծ ցաւ էր ասիկա Կոլոմբոսին սրտին: Երեք նաւով հազար հինգ հարիւր փարսախ ճամբայ ըրած էր. անոնցմէ մէկուն, Բէնթայէն, կայմերը դէշ էին, անոր ալ ուր պտըտիլը չէր գիտեր, վասն զի Բինզոն աներեւոյթ եղած էր: Պինտա աղէկ նաւը խորտա-

կած էր. ուստի եւ անհունն Ովկիանոսն անցնելու եւ Սպանիա դառնալու համար՝ մի միայն տկար նաւ մը, Նինան, մնացած էր։ Բոլոր գտածները, հետը Սպանիա տանելու Հնդիկները, տնկերը, ոսկին, վերջապէս ամէն բան՝ մէկ խախուտ նաւի մը վրայ յայտնի վտանգի մէջ պիտ՚որ դրուէր։ Ինք կորսուելու որ ըլլար, բովանդակ գիւտն ալ հետը պիտի կորսուէր։ Տխրութեամբ միտքը կը տանջէր որ ետ դառնալու ինչ հնարք գտնէ, կամ թէ խորտակուած նաւին մէջը դիզուած ծանրագին բաներն ինչպէս անկորուստ եւ անվնաս պահէ։ Ստուգիւ Կոլոմբոսին բոլոր կենաց մէջ աս պատահարը՝ ամենէն ցաւալիներէն մէկն էր, եւ բոլոր ետեւէն եկած ձախորդութիւններուն աղբիւրը՝ աս դժբախտութեան տարուած ճարն եղաւ, այս ինքն՝ աս պատճառաւ Հայդի կղզւոյն մէջ երկայն ատեն մնալու ստիպուելնին, եւ Սպանիացւոց ու տեղացւոց մէջ երթեւեկութիւններուն շատնալը։

## ԺԸ.

### Ցեղապետին բարերարութիւնը:

Կոլոմբոս Նինային վրայ կեցած ու խորին տրտմութեան մէջ ընկղմած՝ աս վտանգին դէպքէն ազատելու համար զանազան բաներ կը մտածէր։ Մէկէն ի մէկ միտքն աս եկաւ

որ Կուտադամնակարի ցեղապետին մարդ խրկէ։ Պետրոս Կուդդիբերեօր՝ որ ծովապետին հետ Նոր աշխարհքին վրայ առաջին լոյսը տեսած էր, Տիէկոյ տէ Արենային հետ խաւսեց, եւ աղաչեց որ Կուտադամնակարին ըսեն թէ Ծովապետը՝ քու ցուցըրած բաղձանքիդ համեմատ քեզի այցելութեան գալու ժամանակը՝ Նաւուն աւազի վրայ խրեցաւ ու խորտակեցաւ։ — Բայց ցեղապետն ի՛նչ կրնար ընել։ Աս տղէտ եւ անծանօթ մարդիկներէն ինչ օգնութիւն կրնար յուսացուիլ. կամ թէ աս պատահարը՝ Հնդիկներուն ցուցըրած սէրն ու համարումը նուազըցնելու եւ բոլորովին ջնջելու բաւական չէ՞ր արդեօք։ Դարձեալ անոնց ծառայութիւնները՝ համատարած Ովկիանոսն անցնելով՝ Եւրոպա գալու ինչ օգուտ ունէր. ան Ովկիանոսը, որուն անբաւ ընդարձակութիւնը Կոլոմբոս հիմա աղէկ կը ճանչնար, եւ սաստիկ նեղութեան մէջ առանց դողալու չէր կրնար երեւակայել։

Ինչ եւ իցէ, պատգամաւորութիւնը կատարուեցաւ, եւ այնպէս կատարուեցաւ որ Սպանիացիք ուրախութեամբ ու զարմացմամբ լեցուեցան։ Կուտադամնակարի՝ օտարականներուն պատահած դժբախտութիւնը լսելով՝ անանկ սաստիկ սգոյ մէջ մտաւ, որ մինչեւ սկսաւ արցունք թափել։ Ինք անձամբ իր եղբայրներովը, ազգականներովն ու հպատակ-

Ներովը ծովեզը եկաւ. ոմանք ծառաւկուրմներով խորտակուած նաւերն քովը կ'երթային. եւ ամէն մեծագին կամ ստորին բաները կտոր կտոր ցամաք կը կրէին. ոմանք ալ ծովեզերքի վրայ կենալով՝ բերուած իրերը կ'առնէին եւ իրենց տանը մէջ իբրեւ աւանդ պահելու կը տանէին: Երկրորդ օրը Կուագանակարի անձամբ Նինա նաւն եկաւ, եւ ծովապետին ցաւն ու տրտմութիւնը տեսնելով՝ վերջին աստիճանի բարեկամութեան եւ կարեկցութեան նշաններ ցուցուց, եւ իրեն հետ լացաւ: Թարգմանի բերնով իրեն երեք տուն խոստացաւ: Բնակիչներն ալ՝ Սպանիացւոց մխիթարութիւն մ'ըլլալու համար անոնց ախորժելի ոսկին կը բերէին: Կուագանակարի՝ ծովապետին աս ալ ըսաւ որ կղզւոյն ներքին կողմերը Սիպանոյի մէջ այնչափ ոսկի կայ, որ ամենեւին յարգ չունի, եւ ուզածին չափ իրեն տալ կու տայ:

Կոլոմբոս այսչափ ընծաներով հոգի առաւ ու քաջալերուեցաւ, եւ իրեն բարեպաշտ սովորութեամբը, որով ամէն բանի մէջ Աստուծոյ կամքն ու նախախնամութիւնը կը տեսնէր, մտածեց որ գուցէ աս ամէն բանէն բարիք մը պիտ'որ ըլլայ: Եւ քիչ մը վերջը՝ նոյն իսկ աս նաւաբեկութիւնը՝ Աստուծոյ բացայայտ կամքովը պատահած սեպեց, ինչու որ Սպանիական կղզւոյն Հնդիկներուն

հետ այնչափ հաղորդակցութիւն ընելուն պատճառաւ ան եղած էր։

Կուագանակարի Նինօ նաւուն մէջ ճաշ կերաւ, վերջէն Կոլոմբոսն ալ ընթրիք ընելու համար անոր տներէն մէկը գնաց։ Կերակուրներն էին ուդիա (տեսակ մը ճագար), ձուկ եւ պտուղ։ Տեղապետն անանկ մարդավարութիւն եւ ազնուականութիւն ցուցուց՝ որ ծովապետն ապշեցաւ։ Կերակրէն ետքը զԿոլոմբոս առաւ քաղաքին կից անտառները տարաւ, ուր Հնդիկները զանազան պարեր խաղացին։ Կոլոմբոս նաւէն աղեղ մը եւ կապարճ մը բերել տուաւ, եւ Կաստիլիացի քաջաղեղ երիտասարդ մը շատ վարպետութեամբ նետ նետեց, որուն վրայ Հնդիկները զարմացան. բայց երբոր թնդանօթ մ'արձակուեցաւ, բոլոր Հնդիկներն ան ահագին թնդիւնէն սարսափած՝ երեսի վրայ գետինն ինկան, եւ կարծեցին որ աս իրենց հիւրերը՝ որոտման որդիք են, անոր համար ալ վախերնին ու դողերնին անչափ եղաւ։ Բայց ծովապետը ժպտելով մը Կուագանակարիին ըսաւ թէ Աս սոսկալի զէնքերը ձեր թշնամեաց դէմ զձեզ պաշտպանելու համար են. վասն զի աս խաղաղասէր կղզեցիք հարաւային արեւելեան կողմը բնակող պատերազմասէր ու մարդակեր՝ Գարայիպ ըսուած ազգէն կը

սոսկային: Աս խոստումը տեղացւոց սիրտն հանդչեցուց:

Ցեղապետն ու ծովապետը փոփոխակի ընծաներ տալէն վերջը՝ իրարմէ բաժնուեցան: Ծովապետը բոլոր ոսկեզարդ դիմակ մը, ցեղապետին ոսկի թագը եւ ոսկեղէն տախտակներ առաւ: Առատամիտ Կուազանակարին Կոլոմբոսին հետ եկող մարդիկներուն ալ պարգեւներ բաշխեց:

## ԺԲ:

## Սպանիական կղզւոյն վրայ շինուած ամրոցը:

Սպանիացիք ու տեղացիք երթալով իրարու հետ աւելի կը բարեկամանային: Աս կէս մը կրթուած, կէս մը վայրենի, բայց միանգամայն քաղցրաբարոյ, պարզամիտ, հեզ ու գորովալից մարդիկները՝ Սպանիացւոց տուած չնչին բանն ալ, որ նորութեամբ իրենց աչքին մեծ կ'երեւար, տղայական ուրախութեամբ կ'ընդունէին: Բոժոժներուն հնչումը լսելով կը պարէին, ժապաւէններով կը զարդարուէին, անոնց տուած կտոր մը կերպասը կամ մետաղը երկնային բանի մը պէս կ'առնէին, եւ ինչպէս որ յառաջագոյն իրենց զանազան տեսակ ոսկին հոտուըտալով իրարմէ կը զանազանէին, ասանկ ալ Սպանիացւոց տուած բաներուն տարբերութիւնք հոտոտելեօք կ'իմանային:

Կուսադանակարի կրցածին չափ ոսկի ժողվել կու տար, եւ շատ հեղ Սիպայի ոսկեհանքներու վրայ կը խօսէր: Նաւաստիներին անդադար ոսկի կ'ընդունէին: Անգամ մը Հնդկին մէկը Սպանիացւոյ մը կէս սափ ոսկի փոշի տուաւ ու պղնձէ բոժոժ մ'առաւ. եւ շուտ մը անմանկ փախչելու սկսաւ, որ կարծես թէ գողութիւն ըրած է: Գնած բանն այն աստիճանի ահագին երեւցած էր իրեն:

Ծովապետն ալ ժողովրդոց կրօնքն ու օրէնքը քննելու ետեւէ իյնալով, իմացաւ որ անոնց կրօնն անդիրի աշխարհքին մէջ տրուելու պատիժներուն ու վարձքերուն հաւատալ կը սորվեցընէր. իսկ օրինաց կողմանէ՝ ցեղապետներուն ուզածնուն պէս զանոնք կը կառավարէին. բայց ժողովուրդը զիրենք այնպէս կը սիրէր, որ սիրտն ու հոգին անոնց վրայ դրած էր: Բնութիւննին ընտել ու բարեբարոյ էր, կռիւէ բոլորովին հեռացած, քիչ բանով գոհ կ'ըլլային, բանի մը կարօտութիւն չէին քաշեր, աւելորդ բան մ'ալ չունէին. իրենց դրացի Գարայիպներուն գազանաբարոյ անգթութեանն ամենեւին հակառակ էին: Ընդհանրապէս իւրաքանչիւր մարդ մէկ կին ունէր, միայն ցեղապետներն քսան կամ երեսուն կին ունէր: Ցեղապետներուն իշխանութիւնը կամ թագաւորութիւնը ժառանգութեամբ յորդւոց որդի կ'երթար.

բայց երբ որ ցեղապետին մէկը անզաւակ մեռնէր, իրեն քեռորդին եւ ոչ թէ եղբօրորդին կը յաջորդէր։

Սպանիացիք համեմատութեամբ տեսնելով որ տեղւոյն օդը բարեխառն է, ապրիլը հանգիստ ու առանց աշխատութեան, կենաց պիտոյքը լի եւ առատ, եւ թէ իրենք Հնդիկներուն մէջ գերազանցութիւն մ'ունէին, Կոլոմբոսէն խնդրեցին որ իրենցմէ մէկքանիին թողու, որպէս զի իբրեւ գաղթական՝ բնակութիւննին հոն հաստատեն։ Ծովապետն ալ առաջարկութիւնը ամենայն յօժարութեամբ ընդունեցաւ, եւ միտքին մէջ կ'ըսէր թէ ասկից աւելի բանաւոր ու բաղձալի բան մը չիկրնար ըլլալ։ Մէկ տկար նաւի մը վրայ այնչափ նաւաստիները դիզելով՝ բոլորն ալ մէկտեղ ծովու վտանգներուն մէջ դնելու տեղ, քանի մը հոգի միայն հետս կ'առնեմ, կ'ըսէր, եւ նաւը նոր աշխարհքին բերքերովը կը լեցընեմ, որոնց վրայ բոլոր Սպանիացիք եւ մանաւանդ իմ պաշտպանս Կաստիլիայի թագուհին շատ պիտի զարմանայ։ Ասկից զատ՝ հոս Իսբանիոլա կղզւոյն վրայ գաղթականներ թող տալու որ ըլլամ, բարի երկրցիներուն սէրը չիմարիր, եւ սրտերնին՝ հետերնիս աւելի կը կապուի. գաղթականները կղզին աղէկ կը քննեն, աւելի ներքին կողմերը կ'երթան, փոփոխութեամբ շատ ոսկի ձեռք կը ձգեն,

անոնց լեզուն կը սորվին, իրենք ալ անոնց սպաներէն կը սորվեցընեն: Դարձած ատենս՝ աս կղզին ինծի կենդրոն մը կ՚ըլլայ, հոս կրնամ ուզածիս չափ հանգչիլ, եւ ապահովութեամբ ու դիւրութեամբ ուրիշ երկիրներ գտնելու ետեւէ կ՚իյնամ:

Աս ամէն յոյսերը շատ գեղեցիկ, շատ սքանչելի էին, բայց ուրիշ հարկաւոր բան մ՚ալ մտածելու եւ հաշուի մէջ դնելու էր: Մարդիկներուն կիրքն ու անիրաւութիւնը՝ խոհեմական կարգադրութիւններով ու զօրաւոր օրէնքներով չեն զսպուիր.նէ, ամենէն վսեմ ու բարեկարգ խորհուրդներն ալ կ՚եղծանեն ու կը կործանեն: Կոլոմբոս՝ ասանկ գաղթականութիւն մը հաստատելուն պատճառաւ վերջէն իր գլուխը գալու մրրիկներուն ու տառապանքներուն յառաջատես չեղաւ: Ուստի կէս մը երեւակայութիւնը վառուելով, կէս մ՚ալ հարկաւորութենէ ստիպուած՝ հաւանեցաւ որ շուտ մը կղզւոյն վրայ ամրոց մը շինուի: Խորտակուած նաւուն մնացորդն աս ամրոցը կառուցանելու գործածուեցաւ, եւ Սպանիացիք անանկ կրակի պէս բանեցան, որ տասնումէկ օրուան մէջ ամրոցը լմնցաւ:

Աս պարագաներուն մէջ Կուագանակարիին զգացած ուրախութիւնը չիկրնար պատմուիլ: Իրեն տղայական զարմացման մէջ կը

կարծէր որ աս Նաւիտատ* (ծնունդ) ամրոցը զինքը Գարայիպներուն դէմ պաշտպանելու համար կը շինուի. ասիկա Սպանիացիներուն կեղծիքն էր, եւ ինքն ալ առանց քննելու կը հաւատար. անոր համար ծովապետին աւելի սէր ցուցընելու սկսաւ, եւ ամէն օր նորանոր ընծաներ կը բերէր։ Անգամ մը իրեն հարկատու հինգ ցեղապետներու հետ զԿոլոմբոս դիմաւորելու եկաւ, ամենուն գլուխն ալ ոսկի թագ կար։ Աս վեց իշխանները ծովապետն առին ու Հնդիկներուն անոր տուած տունը տարին. հոն զինքը նստեցուցին եւ Կուագանակարի ձոյլ ոսկիէ շինուած թագն իր գլխէն հանեց եւ ամենուն առջեւը Կոլոմբոսին գլուխը դրաւ։ Կոլոմբոս ալ շնորհակալութեան համար՝ իր վզէն կախուած մանեակը (կէրտանլըքը) հանեց, Կուագանակարիին վիզն անցուց, նոյնպէս իր կարմիր թիկնոցն անոր հագցուց, մատն արծաթի մատնի մը դրաւ, զոյգ մըն ալ կարմիր կօշիկ պարգեւ տուաւ։

Կոլոմբոս այսպիսի առիթներու մէջ՝ անանկ ազնուական, վայելուչ ու մարդասիրական կերպարանքով մը կը կենար, որ թէ տրուած նուէրներուն համար իր շնորհակալութիւնը կը ցուցընէր, եւ թէ Սպանիայի

*Աս ամրոցին՝ նոյն անունը դրուելուն պատճառն էր Ծնընդեան տօներուն շինուած ըլլալը։

թագաւորի երեսփոխանի մը վայլած վեհութիւնը կը պահէր: Իրեն սա արտաքին ազնուութիւնը, որն որ իր ներքին ազնուութեան նշանն էր, Աստուծմէ միանաւոր եղանակաւ տրուած ձիրք մըն էր. եւ ասով՝ որոնց հետ որ բան գործ կ'ունենար սրտերնին իրեն կը շահէր,

## ԺԳ.

## Կղզիէն կ'ելլէ:

Սպանիական կղզւոյն վրայ ամէն բան յաջող կ'երթար: Նինա նաւուն վրայէն Կոլոմբոս՝ Թագուհւոյն այսպէս կը գրէր: Հոս տեղս ոսկին շատ առատ է. Ես դառնալու ատենս՝ հոս ձգած Սպանիացիներս շատ բան ժողված պիտի որ ըլլան: Կղզւոյն մէջ այնչափ ոսկի ու համեմ կայ, որ երեք տարի վերջը Ս. Գերեզմանին ազատութեան համար բանակ մը կրնամ ոտք հանել. ինչու որ՝ ինչպէս արդէն ձեր Մեծափառութեան ըսած եմ, հոսկից եղած բոլոր շահը Երուսաղէմ առնելու պիտի գործածուի:

Կոլոմբոս մեծամեծ անհնարութիւններ ունէր: Իսպանիոլայէն ելլելու ատեն ամէն բան կարգի դրաւ, զՑիէկոյ տէ Արանա՝ ամբողջին կառավար անուանեց: Թէ որ անիկա մեռնելու ըլլար, Պետրոս Կուդդիէրէս իրեն պիտի յաջորդէր. Պետրոսին տեղն ալ՝ Ռո-

տրիկոյ տէ Լագաւատան պիտ՚որ անցնէր։ Ամրոցին մէջ բժիշկ մը, տակառագործ մը, տատաղձագործ մը, դերձակ մը ու Թնդանօթաձիգ մը Թողուց։ Սպանիացիներուն ձեռքը տեղացիներուն հետ փոփոխելու յարմար բաներով լեցուն մակոյկ մ՚ալ ձգեց։ Ճամբայ ելլելէն քիչ մը յառաջ ամէնքն ալ ժողվեց ու իրենց խրատ տուաւ որ մէջերնին միշտ միաբան ըլլան ու ամենեւին եւ ոչ փոքր կռիւ մը խաղաղութիւննին չվրդովէ։ Միշտ Կուագանակարիին երկրին մէջ մնան, զինքը յարգեն, Հնդիկ կանանց հետ պարկեշտութեամբ վարուին։ Նոյնին որ բոլոր տեղացւոց հետ քաղցրութեամբ վարուին, որպէս զի անոնց հետ ունեցած բարեկամութիւննին միշտ հաստատուն մնայ։ Կը յուսամ որ, ըսաւ վերջապէս, ձեզի նոր ընկերներ եւ Թագաւորական վարձքեր կը բերեմ։ Աստուած ամենուս հետն ըլլայ։

Ամէնքն ալ, Թէ մնացողները Թէ մէկտեղ գացողները կու լային։ Կը մտածէին որ ամէնքն ալ հայրենիքներնէն այնչափ հեռու են. մնացողները չէին գիտեր որ արդեօք երբեք պիտի կարենան նորէն հայրենիքնին տեսնել. իսկ գացողները չէին գիտեր Թէ նորէն պիտի կարենան ետ դառնալ։ Թէպէտ մեծ յոյս ունէին, բայց միանգամայն երկիւղէ ալ բոլորովին ազատ չէին. ան երկիւղը արք-

տերնուն մէջ կար, որն որ ամէն քաջ նաւավարին սիրտն ալ՝ մեծ ճամբորդութիւն մը սկսելու ատեն՝ կը պաշարէ։

Նաւապետը ճամբայ չելած՝ մեծ սեղան մը պատրաստել տալով՝ զԿուադանակարի եւ Հնդիկներուն գլխաւորները հրաւիրեց. իր փոխանորդները ցեղապետին յանձնեց, եւ իրեն աղաչեց որ մինչեւ նոյն ատենը Սպանիացւոց ցուցուցած բարեկամութիւնը յառաջ տանի։ Խոստացաւ իրեն որ շուտով ետ կը դառնայ, եւ իրեն հազար ու մէկ տեսակ ազնիւ բաներ կը բերէ։ Ետքը առջեւը պզտիկ պատերազմ մը ձեւացընել տուաւ. եւ ցեղապետին վախնալը տեսնելով՝ նորէն զինքն ապահովցուց որ Սպանիացիք զէնքերնին՝ միայն Գարայիպներուն դէմ կը գործածեն։

Ասկից ետեւ ծովապետը հրաժարական ողջոյնը տուաւ. ցեղապետին ու գլխաւորներուն հետ պագտուեցաւ, որոնք ամէնն ալ լալով հետը մինչեւ ծովուն ափունքը գացին, իրեններուն եւ Հնդիկներուն առջեւը նաւը մտաւ ու ճամբայ ելաւ 1493ին, Յունուարի 4ին։

## ԺԴ.

### Անդային դառնալը։ — Մրրիկ։

Երեք օր էր որ Կոլոմբոս հակառակ հովերուն դժուարութեան միտ չդնելով՝ նաւ-

արկութիւնը յառաջ կը տանէր. մէյ մ'ալ տեսաւ որ Բէնթօ Նաւը՝ որն որ Դեկտեմբերի 19էն վեր իրմէ բաժնուած էր, դէպ իր կողմը կու գայ: Ալոնզօ Բինզոն ինք զինքը կ'ուզէր արդարացընել, ըսելով որ Հովերուն բռնութիւնը նաւս քեզմէ բաժնեց, ու մէյ մ'ալ զձեզ չկրցայ գտնել: Բայց իր բաժնըւիլը յառաջուընէ մտածուած ու յարմարած բան էր, անոր համար ալ չկրնար արդարանալ: Միշտ մարդիկ իրեն երեսը պիտի զարնեն որ ուզեց իր գլխաւորէն բաժնուիլ ու առանձին իր բախտը փնտռել, եւ ոսկեբեր երկիրը գտնելու ջանալ. ասկից զատ Հնդիկները ծածուկ դրդած էր որ զինքը կղզւոյն՝ Սպանիացւոց կեցած կողման հակառակ կողմը տանին, միայն աս վախճանաւ որ հոն ոսկի ժողվէ. վերջապէս ծովապետին նաւաբեկութիւն ընելն իմանալով՝ իրեն օգնութեան հասած չէր. իր գլխաւորին նաւը օտար ու վայրենի տեղ մը խորտակած ատեն՝ ինք իր ոսկի ժողվելը յառաջ կը տանէր, որուն կէսն ալ իր նաւաստիներուն բաժնեց, որպէս զի անոնք իրեն հետ կապէ:

Ծովապետը սրտին նեղութիւնը ծածկեց, եւ այնպէս ձեւացուց որ Ալոնզոյին՝ իր ջատագովութեան համար ըսածներուն կը հաւատայ. բաւական համարեցաւ զինքը պաղութեամբ մը ընդունելը. միայն ստիպեց որ

ազատ թող տայ չորս Հնդիկներն ու երկու կանայքը, որոնք Ալոնզոյ բռնութեամբ Սպանիա կը տանէր, որպէս զի հոն գերիի պէս ծախէ։ Մանաւանդ որ քիչ մը ետքը ծովին մէջ պատահածները՝ աս դէպքը մոռցընել տուին։

Թէ որ Կոլոմբոս արեւադարձներուն տակ եղող ծովերն աղէկ ճանչնալու ըլլար, ինք զինքը նոյն եղանակին մէջ Սպանիա դառնալու վտանգին մէջ չէր դներ։ Ինք տակաւին Տարեւոր կամ կանոնաւոր հովերուն երեւոյթը չէր գիտեր։ Արեւադարձներուն տակ հովերը վեց ամիս արեւելքէն կը փչեն, վեց ամիս ալ արեւմուտքէն։ — Կոլոմբոս աս ճամբորդութեան ատեն շատ բան քաշեց արեւելեան հովէն՝ որուն դէմ կը նաւարկէր. եւ հին աշխարհքը մօտեցած ժամանակը՝ հասարակօրէն Փետրուար ու Մարտ ամիսներուն մէջ պատահած մրրիկներէն ու ալէկոծութիւններէն, որոնք նոյն տարին խիստ սաստիկ եղան, շատ մեծ նեղութիւն կրեց։ Բինտա նաւը կայմը նորոգել տուած չէր. անոր համար ալ չէր կրնար աղէկ քալել։ Ուստի եւ ծովապետը միշտ վախի մէջ էր որ չըլլայ թէ աչքէն հեռանայ ու բոլորովին իրմէ բաժնուի։

Փետրուարի 12ին նաւաստիները կը կարծէին որ Մատերայի բարձրութեան հասած են. բայց Կոլոմբոս գիտէր թէ Ազորեան

կղզիներուն շիտկութեան մէջ են, եւ կը յուսար որ շուտով ցամաք կը հանին։ Մէյ մ'ալ հովը մէկէն սկսաւ սաստկանալ, ծովը սաստիկ կը յուզէր ու կը ծփէր. եւ Կոլոմբոս տեսաւ որ հիւսիսային արեւելեան դին օդին մէջ շանթ կը զարնէ։ Ասով իմացաւ որ մեծ մրրիկ մը պիտ'որ փրթի, ու շուտ մը հարկաւոր եղած հրամանները տուաւ։ Իրօք մրրրիկն ելաւ, եւ շատ զարհուրելի էր. Նաւաստիներն ուրիշ ճար չկրցան գտնել, բայց եթէ առագաստները գոցել, կայմերը մերկել, եւ թող տալ որ նաւերը ծովին վրայ հովին բռնութեան համաձայն ընթանան։ Մէյ մը ահագին ալիք մը զիրենք լեռներու բարձրութեամբ վեր կը վերցընէր, մէյ մ'ալ մէկէն նոյն բարձրութենէն անդունդի մը խորութեան մէջ կ'իջնային։

Իսկզբան նաւավարները կը յուսային որ մրրիկը շուտով կը դադրի. բայց Կոլոմբոս տեսնելով որ կը շարունակէ, զարհուրելով կը գուշակէր թէ Մարտի գիշերահաւասարէն յառաջ պատահող մրրիկներուն տեսակէն է, որոնք օրերով ու շաբաթներով կը տեւեն։ Այսպիսի վիճակի մէջ աղօթքի դիմեց. գլխարկի մը մէջ բակլայ դրին, եւ որոշեցին որ մէջերնէն խաչանշան ունեցող բակլան հանողը՝ Կուատալուբի Ս. Աստուածածնայ ուխտի երթալ խոստանայ։ Ծովակալն ամենէն

յառաջ քաշեց ու խաչանշան բակլան իրեն ելաւ: Անով սիրտը քիչ մը սփոփեցաւ. որովհետեւ բախտը զինքն որոշելով՝ անիկա իբրեւ նշան մը առաւ որ Աստուած ուխտերնին պիտ'որ ընդունի: Ու նեղութեան ու տառապանաց օրերը շատ անգամ աղօթք կ'ընէին, ու ծոմերու եւ ուխտի երթալու խոստմունքները կը նորոգէին: Ասանկ առիթներու մէջ երեք անգամ վիճակ ձգած ատեննին՝ վիճակը ծովապետին ելաւ:

Երեք օր նոյն տառապանաց մէջ մնացին. նաւերը կը դիմանային, բայց շարունակ կը վախցուէր որ չըլլայ թէ ընկղմին: Ու ողորմելի ատենը՝ գիշեր մը Կոլոմբոս տրտմութեամբ կը մտածէր որ եթէ իր նաւն ընկըղմելու ըլլար, ձեռք զարկած գործքը իրեն հետ մէկտեղ կը կորսուէր: Ու տխուր մտածութիւնը կամաց կամաց շատ սաստկանալով, հնարք մը մտածեց, որ երկու նաւերն ալ բոլոր մէջի մարդիկներովն ընկղմելու ըլլան՝ իր գիւտերուն ծանօթութիւնը մինչեւ Սպանիա հասնի: Իր ճամբորդութեան ու գտած երկիրներուն ճիշտ ստորագրութիւնը մագաղաթի վրայ գրեց. կնքելէն ետեւ՝ վրան գրեց որ աս մագաղաթն առանց բանալու Սպանիայի արքունիքը տանողը՝ հազար ոսկուտ վարձք կ'ընդունի. ետքը կտաւի մէջ ծալլեց, ու մոմի զանգուածի մէջ գոցելով՝

մէկ պզտի տակառակի մէջ դրաւ ու ծովը նետեց։ Այր յուսար որ տակառը տեղ մը ցամաք կ'ելլէ, ու գտնողը Սպանիա կը հասցընէ։ Աս յիշատակարանէն օրինակ մ'ալ նաւին վրայ հաստատեց, որ եթէ մէկը կորսուելու ըլլայ՝ գոնէ մէկալն ազատի։

Հազիւ թէ աս գործքը լմընցուցած էր, մէյ մ'ալ հեռուէն երկիր մը տեսան, բայց չէին համարձակեր յուսալու որ կարենան ալիքներուն սաստկութենէն հոն հասնիլ։ Ծովապետն իմացաւ որ տեսածնին՝ Ազորեան կղզիներէն մէկն է։ Նոյն երկրէն հինգ մղոն հեռու էին։ Ամբողջ երկու օր աս ցամաքը աչուըներնուն տակն էր, բայց մրրիկն ու ալէկոծութիւնը թող չէր տար որ մօտենան։ Վերջապէս ամսոյն 17ին, սաստիկ մեծ աշխատանքով ցամաքին այնչափ մօտեցան որ կըրցան երկաթ նետել. եւ կարծեցին որ ա՛լ ազատեցան. բայց դժբախտութեամբ պարաննին փրթաւ, եւ նոյն րոպէն սաստիկ հով մը նաւերնին դարձուց, զիրենք առաւ դէպ ի Հիւսիս տարաւ, եւ մինչեւ իրիկուն չարչարեց։ Հազիւ կրցան գիշերը ցամաք մօտենալ ու խարիսխ նետեցին։

# ԺԵ.

## Սուրբ Մարիամայ կղզին:

Երբ որ նաւահանգստին մէջ ապահովցան, ծովապետը քանի մը ժամ ուզեց հանգիստ քնանալ. որովհետեւ հինգ օրուընե վեր ամենեւին աչուըները գոցած չէր: Հասած տեղերնին Ս. Մարիամայ կղզին էր, որն որ Ազորեան կղզիներէն մէկն է: Գաղտնետա՝ կղզւոյն կառավարը նաւին ուտելիք խաւրեց, ու նաւաստիներէն երեք հոգի կանչեց, որ Կոլոմբոսի եւ իրեն ընկերներուն զարմանալի արկածներն իրենցմէ լսէ: Ծովապետը նաւաստիներուն ուխտ ընել տուած էր որ հասած առաջին երկիրներնուն մէջ թափորով Ս. Աստուածածնայ նուիրուած եկեղեցւոյ մը այցելութեան երթան: Ս. Մարիամ կղզւոյն մէջ ծովեզերքէն քիչ մը հեռու Ս. Աստուածածնայ նուիրուած մատուռ մը կար: Կղզւոյն կառավարին իրենց ցուցուցած սէրը, որն որ միանգամայն իմացուցած էր որ երկրորդ օրը նաւին այցելութեան կու գայ, զԿոլոմբոս վստահացուց որ առանց վտանգի կրնայ դուրս ելլել: Ուստի եւ իր հրամանաւը նաւաստիներուն մէկ մասը ցամաք ելան, որ երթան ուխտերնին կատարեն: Քահանայի մը յառաջագոյն ծանուցած էին որ պատրաստ

կենայ, եւ եկած ատեններին՝ մատրան մէջ աստուածային պաշտօնը կատարէ։

Ծովապետը նաւին մէջ կը սպասէր որ ատոնք ետ դառնան, որպէս զի ինքն ալ մնացողներուն հետ երթայ ուխտը կատարէ։ Բայց ետ դարձող չեղաւ։ Կառավարին ցուցուցած սէրն ու ըրած ընդունելութիւնը՝ դարան մըն է եղեր։ Գաղղանետա՝ մատրան մէջ եղող բոլոր նաւավարները բռնել տուած էր, եւ ծովապետը մէջերնին չգտնելուն վրայ զարմանալով՝ քիչ մը ետքը մակոյկով մը անձամբ նաւուն եկաւ եւ իրեն վնաս մը չընելնուն վրայ խոստում առնելով՝ նաւը մտաւ։ Երբ որ Կոլոմբոս ըրածը երեսը զարկաւ կառավարը պատասխան տուաւ թէ Լուսիտանիայի արքունեաց հրամանին համաձայն կը վարուի. որով ծովապետը սկսաւ վախնալ որ չըլլայ թէ Լուսիտանացիք ու Սպանիացիք իրարու հետ պատերազմի մէջ ըլլան. բայց աս ալ հաւանական բան մը չէր երեւար։ Գաղղանետա քիչ մը ետքը ցամաք դարձաւ ըսելով որ բռնածներս չեմ կրնար ետ դարձընել։ Աս միջոցիս ալէկոծութիւնը դեռ կը տեւէր. եւ երկու օր ծովապետն իր մարդիկներուն կէսը հետը չունենալով ու նաւին ծառայութիւններն ընելու համար՝ միայն քանի մը նաւաստի մնացած ըլլալով, կը վախնար որ նաւն ընկղմի։ Վերջապէս կառավարը եր-

կու գր վերջը նաւավարները ետ դարձուց, ու նամակ մ'ալ խաւրեց, որուն մէջ ըրածին վրայ թողութիւն կը խնդրէր ու կը խոստանար որ ձեռքէն եկած ծառայութիւնները կ'ընէ: Կառավարին աս բռնած այլանդակ ճամբուն պատճառն ան էր որ Կոլոմբոսին Սպանիայէն ճամբայ ելած ատեն՝ Լուսիտանիայի թագաւորը հրաման տուած էր որ ուր տեղ որ իրեն պատահելու ըլլան՝ զինքն ու նաւերը բռնեն:

Ծովապետն ասոնք տեսնելով՝ չուզեց աւելի երկայն ատեն հոն կենալ, ուստի եւ պատշաճ ժամանակէն յառաջ ճամբայ ելաւ: Բայց քիչ մնաց՝ աս բանս իրեն շատ ծանր կը նստէր, ինչու որ մրրիկը դեռ դադրած չէր: Մարտի 2ին սաստիկ հով մը բոլոր առագաստները պատռեց: Նաւաստիք ծունր իջան եւ սկսան Աստուծոյ դիմել. ծովապետն ալ վիճակ ձգեց՝ որ մէջերնէն մէկը Սեւգայի Ս. Աստուածածնայ ուխտի երթայ. վիճակը աս անգամ ալ իրեն ելաւ: Նոյն ատենը Լուսիտանիայէն հեռու չէին:

Մարտի 3ին բոլոր օրը շատ զարհուրելի էր. հեղեղի պէս անձրեւ կու գար, միօրինակ երկինքը կը գոռար, ու ետեւէ ետեւ կայծակ կը զարնէր. հովին բռնութիւնը նաւն առած ահագին շուտութեամբ կը տանէր, ալիքներն ալ լեռան պէս բարձրանալով՝ ամէն րոպէ

նաւն ընկղմելու կը սպառնային. խեղճ Սպանիացիք կը կարծէին որ կեանքերնուն վերջը հասած է: Ամէնքն ալ ուխտ ըրին որ եթէ ողջ առողջ ցամաք հասնելու ըլլան՝ առաջին շաբաթ օրը հացով ու ջրով ծոմ բռնեն:

Նոյն 3ին ու 4ին մէջի գիշերը երկիր մը տեսան. բայց ալէկոծութիւնն այնպէս սաստիկ էր որ աս տեսիլը զիրենք ուրախացընելու տեղ՝ աւելի վախի մէջ ձգեց. ինչու որ չէին գիտեր թէ տեսած երկիրնին ուր է, եւ կը վախնային որ չըլլայ թէ առանց նաւահանգստի տեղ մ՚ըլլալով՝ այնչափ ժամանակէ վեր ահագին Ովկիանոսին խաղալիկ եղած նաւը ցամաք զարնուի ու խորտակի: Առտու ծովապետը ճանչցաւ որ Դակոյ գետին բերանը Սինդրայի մօտ են. եւ թէպէտ Ս. Մարիամայ կղզին գլուխն եկածը՝ նորէն Լուսիտանացւոց ձեռքն իյնալէն զինքը կը վախցըներ, բայց սակայն ծովուն վիճակը երկայն մտածելու թող չտուաւ. ուստի եւ խարիսխ նետեց, եւ ամէնքը մէկտեղ այսպիսի մեծ վտանգէ մը ազատելնուն համար Աստուծոյ մեծ շնորհակալութիւն մատուցին:

## ԺԶ.

*Լուսիտանիայի մէջ գտած ընդունելութիւնը:*

Կոլոմբոսի վախը պարապ ելաւ. Լուսիտանիայի թագաւորը չարիք կամ վնաս մը

չհասցընելէն զատ՝ իրեն պարտք համարեցաւ որ այսպիսի երեւելի գիւտ մը գտնող մարդը պատուէ: Նաւը մարդ խաւրեց ու զինքը մեծ պատուով Վալբարաիզոյ բերել տուաւ, ուր որ նոյն ատենը կը բնակէր, Լիսաբոնէն ինը մղոն հեռու: Իրեն մեծ ու պատուաւոր ընդունելութիւն մ'ըրաւ, առջեւը նստել տուաւ, գտած տեղերուն ու գլուխն եկած բաներուն զարմանալի պատմութիւնը մեծ հետաքրքրութեամբ մտիկ ըրաւ, եւ այսպիսի մեծ յաջողութիւն գտնելուն վրայ զինքը շնորհաւորեց: Բայց արտաքուստ որչափ որ ուրախութիւն ցուցընէր, միշտ կ'իմացուէր որ յառաջագոյն զինքը չընդունելուն ու անով Լուսիտանիան այսպիսի մեծ ու օգտակար բանէ մը զրկելուն վրայ շատ կը ցաւի: Յովհաննէս Բ. չէր կրնար մտքէն հանել որ հիմա իբրեւ Սպանիայի ծովապետ ու Հնդկաստանի փոխարքայ ընդունած մարդը՝ ութը տարի յառաջ իբրեւ աղքատ ու ողորմելի մարդ եկած առաջարկած էր որ աս երեւելի գիւտը իր անուամբն ընէ, եւ ինք մերժած էր: Ի վերայ այսր ամենայնի Կոլոմբոսին առաջարկեց որ հետը մարդ տայ, որպէս զի իր երկիրներէն անցնելով՝ Սպանիա դառնայ: Բայց ծովապետն աւելի ուզեց որ յաջող հովի մը սպասէ, ու ծովով Սպանիա անցնի: Սակայն անմիջապէս Սպանիայի թագաւորին

ու Թագուհւոյն նամակ մը գրեց, որուն մէջ կը պատմէր իր յաջողութիւնը, դարձը եւ գլուխն եկածները՝ որոնք զինքը քիչ մը ատեն Լիսաբոնի մնալու կը ստիպէին:

Լուսիտանիայի մայրաքաղաքին մէջ մնացած քիչ ատենը՝ բոլոր քաղքին բնակիչները ուրիշ բանի վրայ չէին խօսեր՝ բայց եթէ զարմանալի եղանակաւ Ովկիանոսին մէկալ դին գտնուած Հնդկաստանին վրայ: Շատ մարդ նաւերուն այցելութեան կ'երթային, եւ ամէնքն ալ կը ցաւէին որ ինչպէս իրենց ազգը այսպիսի փառքէ ու հարստութենէ մը զրկուեցաւ, որն որ Սպանիացւոց կը տրուէր: — Լուսիտանիայի Թագուհին ալ ուզեց զԿոլոմբոս տեսնել. եւ ծովապետը պատուով ու գովութիւններով Լիսաբոնէն բաժնուեցաւ, ու յաջող հովով ճամբայ ելաւ:

## ԺԼ.

### Սպանիա հասնիլը:

Փալոսի նաւահանգստին մէջ եղող նաւավարները Մարտի 15ին առտուանց տեսան որ պզտիկ ու թեթեւ նաւ մը կու գայ, զորն որ հեռուէն այն նաւերէն մէկուն կը նմանցընէին, որոնցմով առջի տարին խաբեբայ Ճենովացի մը Թագուհին ու Թագաւորը խաբելով՝ իր մտացածին գաղափարները գլուխ տանելու համար, նոյն տեղէն ճամբայ ելած

էր։ Նաւը որչափ որ յառաջ կու գար, այնչափ ալ նաւավարները կարծիքներնուն մէջ կը հաստատուէին թէ նոյն նաւերէն մէկն է․ բայց չէին համարձակեր բոլորովին ապահով ըլլալ, որովհետեւ մտքերնին դրած էին թէ ան երեք նաւերը կորսուած են։ Ինչպէս ասիկա կրնայ մնացած ըլլալ, կ՚ըսէին, եւ եօթը ամիս ու կէս ծովերուն վրայ թափառական պտըտելէն ետեւ՝ ետ դառնալ։

Իրենք աս խորհրդածութիւններն ընելու ատեն՝ նաւը բոլոր առագաստները բացած փառաւորութեամբ կը մօտենար, անանկ որ տարակոյսնին երթալով կը նուազէր։ Հետաքրքրութիւննին աւելի եւս մեծնալով եւ աս լուրը բովանդակ քաղքին մէջ տարածուելով՝ բնակիչները բոլոր նաւահանգիստը դիմեցին, եւ աս զարմացման, յուսոյ ու վախի մէջ կեցող բազմութեան առջեւ՝ Կոլոմբոսի նաւը չքեղութեամբ ներս մտաւ։ Բազմութիւնը՝ նաւապետն ու բերած հնդիկները տեսնելով, շուտ մը բերնէ բերան հաղորդուած սքանչելիքները լսելով՝ ուրախութենէն իրենք իրենցմէ ելան։ Բոլոր եկեղեցիներուն զանգակները սկսան զարնուիլ, խանութները գոցուեցան, եւ ամէնքը մէկտեղ նոր եկողներուն հետ եկեղեցի մը գացին Աստուծոյ շնորհակալ ըլլալու համար։

Կոլոմբոս նոյն տեղը շատ քիչ կեցաւ, որովհետեւ կը փութար որ դարձը արքունեաց իմացընէ ու թագաւորին եւ թագուհւոյն առջեւն ելլելու հրաման ընդունի: Ուստի եւ շուտ մը պատգամաւոր խաւրեց, ու ինքն ալ անմիջապէս Սեւիլա գնաց, որ հոն պատասխանի սպասէ: Աս պատասխանը՝ որ շատ պատուաւոր կերպով գրուած էր՝ շատ չուշացաւ: Վերնագիրն աս էր. "Առ Տոն Քրիստափոր Կոլոմբոս, Ովկիանեան ծովուն մէջ մեր ծովապետը, եւ Հնդկաստանի մէջ գտնուած կղզիներուն փոխարքան ու կառավարը":

Ծովապետը ժամանակ չկորսնցուց: Հիմա ալ բաղձանքին հասած էր, եւ քաշած այնչափ նեղութիւններուն ու դժուարութիւններուն վերջն եկած էր. մինչեւ աս թագաւորական պատասխանն առնելը՝ միշտ վախի մէջ էր, կը վախնար որ Բինզոն նենգութիւն մ'ըրած ըլլայ: — Մրրիկը Բինզո նաւը Կոլոմբոսին նաւէն բաժնած եւ Կասգոնիայի ծոցին մօտերը նետած էր, եւ Բինզոն՝ Պայոն ցամաք ելլելով՝ շուտ մը հոնկից թագաւորին նամակ մը գրած էր, ու եղած գիւտն իմացընելով՝ առջեւն ելլելու հրաման խնդրած էր: Անկից քիչ մը վերջը նորէն ճամբորդութիւնը կրցած էր յառաջ տանիլ: Այնպէս կը կարծուի որ Կոլոմբոսի նաւին

հասած օրը իրիկուան դէմ Բինզոնին նաւը Սպանիա հասած ըլլայ։ Եւ այսպէս ծովապետէն ուշ հասնելուն համար՝ սիրտն անչափ նեղուեցաւ, որ մակոյկ մը մտնելով՝ դաղտնի ցամաք ելաւ ու գնաց տանը մէջ պահուըտեցաւ։ Բայց երբ որ Կոլոմբոս՝ դեռ Բինզոնին ինչ վիճակի մէջ ըլլալը չգիտնալով՝ Սեւիլլայի մէջ Թագուհւոյն պատասխանին կը սպասէր, Բինզոն Պայոնէն գրած նամակին՝ Թագաւորէն սաստիկ պատասխան մ'ընդունեցաւ, որուն մէջ բռնած ճամբան երեսը կը զարնէր ու կը հրամայէր որ ծովապետին հպատակի։ Բինզոն աս նամակէն ան աստիճանի այլայլեցաւ, որ մեծ տրտմութեան մէջ ինկաւ եւ արդէն հիւանդ ըլլալով՝ ախտն աւելի սաստկացաւ ու մեռաւ։

Կոլոմբոսին ձեռք զարկած երեւելի գործքին գործակից ըլլալը՝ Բինզոնին շատ մեծ պատիւ կ'ըլլար, թէ որ իր չար նախանձն ու անյագ փառասիրութեամբն իր առաջին բռնած ճամբէն շեղած չըլլար։ Ծովապետին ճշմարիտ բարեկամ ու օգնական ըլլալու տեղ՝ միշտ անոր խորհուրդները խափանելու եւ գիւտին պարծանքն յափշտակելու ետեւէն ինկած էր։ Բայց վախճանին չհասաւ ու արքունիքէն ընդունած յանդիմանութեամբն ու նախատինքովը պատիժը գտաւ։ Սակայն վախճանին հասնելու ալ ըլլար՝

իր խղճին խայթերը բաւական էին հասած փառքն իրեն դառն ընելու:

## ԺԲ.

### Կոլոմբոսի փառաւորութիւնը:

Կոլոմբոսի զարմանալի գիւտին լուրը շուտ մը ամէն կողմ կը տարածուէր, եւ բոլոր Եւրոպայի ուսումնականները կը սկսէին անոր վրայ մտածել եւ անոր վրայ խօսիլ: Գաղղիայի, Իտալիայի, Անգղիայի, Գերմանիայի մէջ ամէն մարդ զարմանալով կ'ըսէր թէ Հակոտեանց աշխարհքը գտնուեր է, եւ Ճենովացի նաւապետ մը երեսունուիրեք օրուան նաւագնացութեամբ արեւելքին ծայրը գտեր է: Բայց աս սքանչելիքին վրայ խօսող ազգերուն մէջ ամէնէն աւելի եռանդեամբ խօսողը՝ Սպանիացիք էին: Այսպիսի արտաքոյ կարգի դէպքը՝ իբրեւ իրենց թագուհւոյն ու թագաւորին բարեպաշտութեան վարձքը կը համարէին. եւ ծովապետը Սեւիլլայէն Պարչելլոնա գացած ատեն՝ բոլոր անցած տեղերուն բնակիչները դիմացը կ'ելլէին եւ ուրախութեամբ եւ ծափահարութեամբ կ'ընդունէին: Ա՛լ Կոլոմբոս աչքերնուն առջեւը անծանօթ օտարական մը չէր, որուն կարծիքները քանի մը ամիս յառաջ յիմարական բանի պէս կ'արհամարհէին. զինքը հիմա իրենց հայրենեաց փառք ու պարծանք

կը Համարէին, եւ այսպիսի երեւելի մարդու մը ձեռք բռնելով՝ սաստիկ սքանչելի գիւտ մը գտնուելուն գործակից ըլլալնուն վրայ իրարու ուրախակից կ'ըլլային։

Իսկ բուն Պարչելլոնայի մէջ, ուր որ Փերդինանդոս ու Եղիսաբէթ նոյն ատենը կը գտնուէին, ընդունած փառքն ու պատիւը՝ ուրիշ բանի մը չէր կրնար համեմատուիլ՝ բայց եթէ հին Հռոմայեցւոց յաղթանակի հանդէսին։ Զինքը տեսնելու համար շատ մը օտարականներ ամէն կողմանէ քաղաքը ժողվուած էին, եւ բոլոր քաղաքին բնակիչները ճամբաներուն վրայ դիզուած էին. բայց ճամբաներն այնչափ բազմութեան բաւական չըլլալով՝ բոլոր տներուն պատուհաններն ու յարկերը մարդիկներով լեցուած էին։ Բոլոր պատշգամներն ու պատուհանները երեւելի տիկիններով լեցուն էին, որոնք նշանաւոր հանդիսութեան օրուան մը պէս փառաւոր զգեստներնին հագած էին։ Զինքն ընդունելու համար մեծ սրահի մը մէջ փառաւոր ոսկեհուռ հովանոց մը պատրաստուած էր, այնպիսի կերպով մը՝ որ ամէն մարդ կարենայ տեսնել։ Ծովապետին հասնիլն իմացուելուն պէս՝ Թագաւորն ու Թագուհին իրենց իշխաններովն ու պալատականներովը, եւ բոլոր տէրութեան երեւելի պաշտօնատէրներովը մէկտեղ, իրենց նոր աշխարհք մը ստացող

նաւապետն ընդունելու պատրաստուեցան: Շատ մը իշխաններ ու պալատականներ Կոլոմբոսին դիմացը գային, որ թագաւորին ու թագուհւոյն անուամբը զինքն ողջունեն ու ընդունին: Ծովապետը գեղեցիկ ճերմակ ձիու մը վրայ հեծած էր, որդին ուրիշ պըզտիկկեկ ձիու մը վրայ հեծած՝ քովէն կ'երթար, եւ իրենց չորս կողմերէն փառաւոր հագուած երիտասարդ իշխաններ ձիերով կ'երթային:

Կրնանք ըսել որ աս հանդէսը՝ Սպանիայի մէջ պատահած ամէն հանդէսներէն աւելի փառաւոր, զարմանալի եւ ուրախական էր: — Ամենէն յառաջ՝ իրենց երկրին գոյներովը նկարուած վեց Հնդիկ կը քալէին. իրենց կերպարանքը, կեցուածքը, շարժուածքը՝ ժողովուած բազմութեան մէջ մէկ զարմանալու բաներ էին: Իրենց կղզւոյն բոլոր ոսկի զարդերը վրանին առած էին, այնպէս որ զգեստնին՝ ոսկիէ չէր տեսնուեր: Ասոնց ետեւէն՝ աղէկ կարգի դրած ու գեղեցիկ չափակցութեամբ շարուած սաստիկ շատ՝ ողջ պապկաններ, եւ ուրիշ անհամար տեսակ լեցուած թռչուններ եւ ճճիներ կը տանէին, որոնց փայլուն ու կենդանի գոյները առաջին անգամ Սպանիացւոց աչքը կը խտղէին: Բոլոր բազմութիւնը այսպիսի նոր տեսարանէ մը յափշտակուելով՝ զարմացման աղաղակնե-

րը եւ ուրախութեան ծափահարութիւնը չէին դադրեր: Ամենուն երեւակայութիւնը՝ այնպէս ըստ ինքեան նոր ու զարմանալի բաներու վրայ՝ չունեցած յատկութիւննին ալ կը գտնէին. եւ երբ որ ասանկ նոր ցեղ մարդիկներէ, անգիտ անասուններէ ու գեղեցիկ թռչուններէ ետքը՝ անբաւ չտեսնուած տընկերն ալ տեսան նէ, ա՛լ սկսան կարծել որ անոնք զարմանալի զօրութիւններ ունին, եւ թէ ասկէ վերջը Եւրոպայի մէջ ա՛լ հիւանդութիւն մը պիտի չգտնուի, որն որ աս արեւելքի տնկերուն ու համեմներուն զօրութեամբը չբժշկուի: Ծովապետն անանկ հրամայած էր որ մարդիկներէն, թռչուններէն ու տնկերէն ետեւ՝ աւելի փառաւորութեամբ ժողովրդեան առջեւը տարածուին Հնդկաստանցւոց ապարանջանները, պսակները, գօտիները եւ ուրիշ զարդերը, վերջապէս բոլոր բերած ոսկին. որոնք իր գտած երկիրներուն անբաւ հարստութեան վրայ ամենուն աւելի մեծ գաղափար մը կրնային տալ:

Բայց երբ որ աս ամէն նոր ու զարմանալի բաները տեսնելէն ետեւ՝ բոլոր ատոնք գտնողը տեսան, ան ատեն ա՛լ բազմութեան զարմանքն եւ ուրախութիւնը վերջին աստիճանի սաստկացաւ. չիկրնար գրով բացատրուիլ ուրախութեան ու կեցցէի ձայները, Կոլոմբոսին ու թագաւորին եւ թագուհւոյն տրուած

գովութիւնները։ Կարծես թէ նոյն իսկ բնութիւնն ալ իրենց ուրախակից կ'ըլլար. Ապրիլ ամսուան գեղեցիկ եւ առանց ամպի երկինքը՝ Հանդիսին փառաւորութիւնն աւելի եւս կը գեղեցկացընէր։ Կոլոմբոս աս ալիքներու պէս իրարու վրայ դիզուած բազմութեան մէջէն կամաց կամաց յառաջ կ'երթար։ Երեսին վրայ գրեթէ իր կամացը դէմ նկարուած ուրախութիւնը, իր ծիծաղկոտ դէմքը՝ որուն մէջ զգացած զուտ ցնծութեան նշանակն էր։ Անցած ժամանակը ամենուն աչուըները վրան էր. իսկ անցնելէն վերջը ամէն մարդ որուն մէջ զգացածը զանազան կերպով կը յայտնէր։ Ի՜նչ ազնուութիւն, կ'ըսէր մէկը. ի՜նչ քաջութիւն, կ'ըսէր մէկալը. ինչպիսի՜ խելացիութիւն, կը կրկնէր երրորդ մը։ Եւ ասանկ փառաւորութեամբ Կոլոմբոս զինքն ընդունելու համար պատրաստած տեղը հասաւ։

Երբ որ ծովապետը ձիէն վար իջաւ, եւ որդւոյն ու դիմացն եկող իշխաններուն հետ ներս մտաւ, սրահին մէջ սաստիկ լռութիւն մը տիրեց։ Մօտիկցած ատեն՝ թագաւորն ու թագուհին ոտք ելան. աս պատիւը միայն պսակեալ գլուխներու կը տրուէր։ Կոլոմբոս այլայլելով՝ մէկ ծունկը գետինը դրաւ, եւ խնդրեց որ իր տէրանցը ձեռքը պագնէ։ Եղիսաբէթ ու Փերդինանդոս ձեռուընին տալէն վերջը՝ ծռեցան զինքը վեր

վերցուցին, եւ հրամայեցին որ իրեն համար պատրաստուած գահին վրայ նստի։ Ան ատեն լռութիւնն աւելի մեծցաւ, եւ Կոլոմբոս իր ճամբորդութեան պատմութիւնը սկսաւ պատմել։ Համառօտ կերպով մը՝ պատահած դէպքերը պատմելէն ու գտած կղզիներուն ստորագրութիւնն ընելէն ետեւ՝ բոլոր բերած զարմանալիքները թագուհւոյն ու թագաւորին առջեւն հանեց. բոլոր անկերը, կենդանիները, հազուագիւտ բաները, խեցիները, չգործուած ու գործուած ոսկին ցուցընելէն վերջը՝ ըսաւ որ Ասոնք դեռ յուսացած բարութիւններուն՝ միայն մէկ օրինակն են։ Երբ որ Հնդիկներն իրենց ներկայացուց, անոնց ցեղապետին՝ իրեն ու հետը եղողներուն ըրած աղէկ ընդունելութեան, եւ իրենց վերջին աստիճանի քաղցրութեան վրայ խօսեցաւ։ Ետքը այլայլելով մը ըսաւ։ Աս ամէն գիւտերը՝ որոնք որ Աստուած հաճեցաւ որ ես ընեմ, միայն սկիզբ մըն են, եւ կը համարձակիմ ապահովցընել որ աւելի եւս մեծ ու օգտակար գիւտեր կայ ընելու, որոնցմով անհնարին սաստիկ հարստութիւն պիտի ստանանք։

Ամէնքն ալ մեծ մտադրութեամբ աս խօսքերը մտիկ ըրին, եւ Նոր աշխարհքին գանձերուն աս փոքր նշխարները մեծ զարմացմամբ նայեցան։ Երբ որ Կոլոմբոս խօսքը

վերջացուց, Թագուհւոյն աչուրները երախտագիտութեան արցունքով թրջած էին, նոյն իսկ Թագաւորին ալ սիրտն եռած էր. ու երկուքն ալ մէկտեղ գահէն վար իջնալով՝ ծնկի վրայ իջան եւ իրենց օրովը այսպիսի զարմանալիք կատարելուն համար Աստուծոյ շնորհակալ եղան: Բոլոր պալատականներն ու իշխաններն ալ իրենց օրինակին հետեւելով՝ ծունկ իջան, նոյնպէս բոլոր չորս կողմը ժողվուած բազմութիւնը գետինն ինկաւ, ու Թագաւորական երաժիշտները եւ հոն եղող եպիսկոպոսներն ու քահանաները սկսան Զքեզ Աստուած երգը երգելով՝ Աստուծոյ շնորհակալ ըլլալ:

Կոլոմբոսին աս աւթին մէջ զգացած ուրախութիւնը չիկրնար բացատրուիլ: Աս հանդիսութիւնը լմննալէն վերջը՝ Թագաւորէն ու Թագուհիէն հրաժարեցաւ, եւ բոլոր արքունականները զինքն առին իրեն համար որոշուած բնակարանը տարին: Ժողովրդեան ուրախութեան ու շնորհակալութեան ձայները մինչեւ հոն իրեն ընկերացան. եւ նոյն տեղը մէկ քանի մտերիմ բարեկամներու եւ իր Տիէկոյ որդւոյն քով սկսաւ այնչափ ժամանակէ վեր ցանկացած ներքին մխիթարութիւնն ու հանգիստը վայելել:

# ԺԹ.

## Պարշելլոնա կեանքը:

Ծովապետին աս երջանիկ ու խաղաղ կեանքը վեց շաբաթ տեւեց: Յառաջագոյն գրեթէ ամէն կողմ ընդունուած արհամարհութեան տեղ՝ հիմա ամենէն յարգութիւն ու զարմանք կ'ընդունէր: Պալատականները՝ հետը խօսիլն իրենց պարծանք կը համարէին: Իրմէ բաժնուելէն ետեւ իր խօսքերը կրկնելը իրենց փառքի մը տեղ կը բռնէին, բերնէն ելած ամէն մէկ խօսքը պատգամի պէս կ'ընդունէին. իրեն յաջողութիւնը ամէնքը կը ստիպէր որ իր հանճարը պատուեն: Ճամբան անցնելու ատեն՝ մարդիկները յարգութեամբ առջեւը կը ծռէին, խանթի մը առջեւէն անցնելու ատեն՝ արուեստաւորները բաներնին գործքերնին թող կու տային ու երկայն ժամանակ ետեւէն կը նայէին, մայրերը՝ իրենց զաւկըներուն կը ցուցընէին:

Բայց աս մեծարանաց ու յարգութեան մէջ Նախանձը՝ իր թոյնը կամացուկ մը կը սկսէր խառնել: Անգամ մը Սպանիայի մեծ կարդինալը՝ որն որ յառաջագոյն իրեն ձեռք բռնողներէն մէկն էր, զինքը փառաւոր սեղանի մը հրաւիրեց, ուր որ իրեն թագաւորի պէս պատիւ կ'ընէին: Սեղանի վրայ խօսքը գրեթէ բոլոր Նոր աշխարհքին վրայ էր. բայց

աս իրեն պատուաւոր խօսքերուն մէջ Կոլոմբոս իմացաւ որ հետը նաւաստիներուն մէջէն ալ վրան նախանձողներ կան։ Որովհետեւ, ըսաւ պալատականներէն մէկը, աշխարհքս կլոր է, յայտնի է որ չորս կողմը կրնայ պտըտցուիլ։ Աս գիւտէն աւելի դիւրին բան մը չէր կրնար ըլլալ։ Ստոյգ է, պատասխան տուաւ ծովապետը, բայց պէտք էր որ մէկը գաղտնիքը գտնէր։ Ի՞նչ, ըսաւ Սպանիացին արհամարհելով մը, տէր ծովապետ, կարծես որ դուն Հնդկաստան գտած չըլլայիր՝ ուրիշ մը չէ՞ր կրնար գտնել։ Ընկերութեան մէջ գտնուող խելացի մարդիկը աս անմիտ խօսքին վրայ ունեցած տհաճութիւննին յայտնեցին. իսկ Կոլոմբոս առանց պատասխան տալու՝ հաւկիթ մը առնելով՝ դարձաւ բոլոր ներկայ եղողներուն ըսաւ. Տեա՛րք իմ, մէջերնէդ ո՞վ կրնայ աս հաւկիթն իր սուր ծայրին վրայ կեցընել։ Թէպէտ եւ ծովապետին ասկից ի՛նչ հետեւցընելիքը չիմացան, բայց ամէնքն ալ սկսան մէկիկ մէկիկ ըսածը փորձել, սակայն հաւկիթը չէին կրնար շիտակ կեցընել, միշտ մէկ կողմը կ՚իյնար։ Ան ատեն Կոլոմբոս հաւկիթն առաւ, եւ ուժով մը ծայրը սեղանին վրայ զարնելով՝ շիտակ կեցուց։ Աս որ տեսան՝ ամէնքը մէկտեղ սկսան կանչել. Աս կերպով կեցընելը դժուար բան մը չէ։ Ստոյգ է, ը-

սաւ ծովապետը, բայց ամենեւին մէկերնիդ չմտածեցիք:

“Նախանձին աս գաղտնի ազդմունքները տեսնելով՝ Կոլոմբոս սկսաւ պալատականներուն նենգութենէն զգուշանալ. բայց թագաւորին ու թագուհւոյն սէրը զինքը կ'ապահովցընէր: Թագաւորը դուրս ելած ժամանակները շատ անգամ մէկ կողմը՝ իր ժառանգը, մէկալ կողմը ծովապետը կ'ունենար. շատ անգամ ձիով պտըտելու գացած ատեն՝ զԿոլոմբոս, հետը կ'առնէր. Թագուհին զինքը տեսնելով եւ գիւտերուն պարագաներն ու տեսածները պատմել տալով չէր կրնար կշտանալ. մանաւանդ Նոր աշխարհքին բնակիչներուն բարուցը վրայ խօսածները շատ հաճութեամբ մտիկ կ'ընէր: Կ'ուզէր որ անոնց հետ մարդասիրութեամբ, ու գթութեամբ վարուին, կը բաղձար որ անոնցմով իր հպատակներուն թիւը շատնայ, եւ սաստկութեամբ կը մերժէր անոնց խորհուրդը, որոնք կ'ըսէին թէ զիրենք ստորին աստիճանի բնութեան տէր մարդիկ համարելու եւ գերի ընելու է: Կոլոմբոսին՝ իրենց բարուց ազնուութեան վրայ պատմածներէն սիրտը կ'ելլէր:

“Կը համարձակիմ ըսել, մեծափառ Թագուհի որ, կ'ըսէր Կոլոմբոս, աշխարհքիս վրայ Սպանիական կղզւոյն բնակիչներէն աւելի հեզ մարդ չկայ. բոլորն ալ հիւրասէր,

պարզ ու բարի մարդիկ են։ Իրենց միամտութեան հետ զգուշաւորութիւն ու ազնուութիւն ունին։ Թէպէտ քովերնիս տեսած բոլոր բաներնին իրենց զարմանալի ու չքնաղ կ'երեւային, բայց երբեք մէկը չտեսնուեցաւ որ բան մը գողնայ։ Անոր հակառակ ամենեւին առանց հատուցում մը պահանջելու՝ ձեռքերնէն եկած ամէն ծառայութիւնը սիրով կ'ընէին։ Ստուգիւ սիրտ շարժելու բան էր ատ բարի ժողովրդեան մեզի ցուցուցած սէրը. մանաւանդ նաւերնուս դժբախտութեամբ իրենց կղզւոյն առջին խորտակած ատեն՝ իրենց ցեղապետին բռածները չեմ կրնար ըստ բաւականին գովել։ Աս վայրենիներէն այնչափ օգնութիւն ու սիրոյ նշաններ ընդունեցանք, որչափ քրիստոնէիցմէ չէինք կրնար յուսալ,,։

Թագուհին կը մտածէր որ ասանկ հանդարտ ու բարի մարդիկ քրիստոնէութեան դարձընել եւ մէջերնին կրթութիւն ու քաղաքականութիւն խօթել դիւրին պիտի ըլլայ. ուստի եւ ծովապետին հետ անոնց վրայ հարկաւոր միջոցներն որոշեց։ Տասուերկու եկեղեցական ընտրել տուաւ, որոնք երկրորդ նաւարկութեան հետ պիտի երթային։ Կոլոմբոսին հետ եկող վեց Հնդիկները՝ քրիստոնէութեան սկզբունքները սորվելէն վերջը՝ մկրտուեցան։ Ասոնցմէ հինգը նորէն Հայդի պիտի դառնային, որ հոն Սպանիացւոց

թարգմանութիւն ընեն, ու Եւրոպա տեսած զարմանալի բաներմէն իրենց հայրենակիցնե-րուն ալ պատմեն: Սպանիայի քաղաքները, պալատները, եկեղեցիներն ու մանաւանդ արքունեաց փառաւորութիւնը զիրենք մե-ծապէս զարմացուցեր էին. Մէջերնէն մէկը՝ կամ նաւարկութեան տառապանքէն ու վա-խէն ազատելու համար, եւ կամ տեսած նոր նոր բաներէն սաստիկ յափշտակուելով՝ խըն-դրեց որ Սպանիա մնայ:

Թագուհին ու բոլոր արքունիքը մեծա-պէս կը փութային որ երկրորդ նաւարկու-թիւնը շուտով ըլլայ: Անոր համար ծովա-պետը ստիպուեցաւ շուտով Պարչելոնայէն ելլել: Թագաւորն ու Թագուհին իրենց հա-ճութիւնը նորէն յայտնեցին. եւ բոլոր պա-լատին իշխանները հետը գացին զինքը ճամ-բայ դնելու:



# Բ. ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ

## Ա.

*Նոր երկիրներ կը գտնուին: — Գաղթականներ:*

Կոլոմբոսին Ամերիկա գտած ատեն պատճառած զարմացումն ու ուրախութիւնը երթալով կը սաստկանար. պատմած բաները բերնէ բերան անցնելով՝ աւելի զարմանալի կ՚երեւային: Ամէն մարդ կը բաղձար երկրորդ նաւարկութիւնը անոր հետ մէկտեղ ընել, որ երթայ ան զարմանալի աշխարհքը տեսնէ, ուր ծառերը մարգրիտով զարդարուած են ու գետերը ոսկի կը բղխեն, կ՚ըսէին: Նաւապետը՝ որ հետը հազար հոգի միայն պիտի առնէր, հազար երկու հարիւր հոգի առնելու ստիպուեցաւ. դարձեալ շատերը՝ որոնց անունը գրուած չէր, խարդախութեամբ նաւը մտան, այնպէս որ նաւատորմիղին ելած ատեն՝ ճամբորդներուն թիւը հազար հինգհարիւր հոգի եղած էր: Բոլոր տորմիղը տասնուեօթը նաւ էր. երեք մեծ տասնուչորս ալ մանր նաւեր, որոնք ամէն կերպ պաշարով լեցուած էին:

Նաւապետը 1493ին Սեպտեմբերի 25ին խարիսխը վերցուց, սկսաւ ցամաքէն հեռանալ. անբաւ բազմութիւն ծովեզերքը կեցած՝ ծափ կը զարնէին: Առջի անգամուան ողբերուն ու արցունքներուն տեղ, աս անգամ ա-

մէն կողմանէ ջերմ մաղթանքներ կ'ըլլային, ամէն մարդ վստահութեամբ կ'ուրախանար, ու կը յուսար որ նաւարկութիւններն յաջողութեամբ պիտի կատարուէին:

Սառուցին ալ նաւարկութիւնը առանց դժուարութեան եղաւ: Եղանակին փոխուելովը՝ արեւելեան հովը փչելու սկսած էր, եւ առջի ծամբորդութեան պէս՝ անուշ հովեր հանդարտութեամբ նաւերն անդադար յառաջ կը վարէին: Նաւատորմղին մէջն ալ ապահովութիւնը կը տիրէր. ամէն մարդ ծովապետին իմաստութեան վրայ վստահութիւն ունենալով՝ հանդարտ սրտով կը կենար: Բոլոր ծամբորդութեան մէջ անգամ մը միայն սաստիկ փոթորիկ մը անձրեւով ու կայծակով՝ զիրենք խռովեց, բայց հազիւ չորս ժամ տեւեց. ետքը նորէն հանդարտութիւն եղաւ, ու յաջողակ հովմով յառաջ երթալով՝ Նոյեմբերի 2ին ցամաք տեսնել սկսան: Կոլոմբոսին առջի ընկերները պարծանքով մը ցամաքը կը ցուցընէին իրենց նոր ուղեկիցներուն, որոնք այնպէս յաջողութեամբ բաղձանքներնուն հասնելնուն համար՝ ուրախութենէն գրեթէ ապշեր մնացեր էին: Տեսնուած երկիրն անծանօթ կղզի մըն էր, որն որ Կոլոմբոս՝ կիրակի օր ըլլալուն՝ Դոմինիկէ (Տոմինիգա) այս ինքն՝ Կիրակի անուանեց: Բայց հոն յարմար նաւահանգիստ չգտնելով՝

երկայն չկրցաւ մնալ, ելաւ քիչ մը հեռուն տեսնուած կղզիներուն կողմը նաւեց: Մէկէն վեց իրարմէ աղուոր ու զուարճալի կղզիներ դիմացն ելան, որոնց անտառներէն բուրած անուշահոտութիւնն այնչափ սաստիկ էր, որ ցամաքէն դուրս մինչեւ նաւերուն կը հասնէր, այնպէս որ բոլոր նաւորդները սկսան փութալ որ շուտով կղզիներուն մէկուն վրայ ելլեն: Վերջապէս ծովապետը կղզի մը ելաւ, որուն անունը, իր նաւին անուամբը՝ Մարի-գալանդ դրաւ. բայց հոն ալ երկայն չկրցան կենալ, ինչու որ անբնակ էր, մէջը՝ տան կամ մարդու հետք չէր տեսնուեր: Սակայն գետանին գեղեցկութեան կողմանէ՝ ուրիշ մերձաւոր կղզիներէն վար չէր մնար. գրեթէ բոլոր կըղզին բարձր ծառերու անտառներով ծածկուած էր, ծառերուն ոստերէն՝ չտեսնուած պտուղներ ու ծաղիկներ կախուած, գետնին երեսը խնկաբեր տնկերով լեցուն էր: Ծաղիկ մը տեսան՝ որուն տերեւները դափնիի, իսկ հոտը մեխակի կը նմանէր:

‘Նաւատորմիղն ուրիշ մեծ ու երեւելի կղզիի մը մօտեցաւ, որուն մէջտեղը բարձր լեռ մը կար, ուսկից շատ առուներ հեղեղներու նման ուժով դուրս կը թափէին: Ծովապետը յիշեց որ Սպանիայէն ելած ատեն՝ Էստրեմատուրա գաւառը Կուատալուբի վանքին կրօնաւորներուն խոստացած էր, թէ

գտած երկիրներէն մէկուն՝ իրենց վանքին անունը տայ. ուստի եւ խոստմունքը կատարելով՝ սա կղզւոյն անունը Կուստալուբ դրաւ: Աս կղզին Անգլիական կղզիներէն մէկն էր, որունց վրայ Հայդիի բնակիչները սոսկալով կը խօսէին, ըսելով թէ Գարայիպներուն բնակութիւն են, որոնք ահռելի մարդիկ են:

Կոլոմբոս ցամաք ելլելուն պէս՝ նախ գեղ մը տեսաւ, որուն տները՝ Հայդիի եւ ուրիշ կղզիներու շինուածներուն պէս կլոր չէին, հապա քառակուսի, բայց անոնց նման՝ ծառերու բուներէ, ճիւղերէ ու եղեգէ շինուած, յատակը կամ գետինը հող էր, յարկը՝ արմաւենիի ճիւղերէ հիւսուած: Բոլոր տները իրարու քով անանկ կարգաւ շինուած էին, որ բոլորակ կամ շրջանակ մը կը ձեւանար, որուն մէջտեղը հասարակաց տեղերնին կամ հրապարակնին էր:

Սպանիացիք հոն բամբակի կտաւէ շինուած՝ կախեալ անկողիններ գտան ու շատ մը գործուած ու չգործուած բամբակ. նիւթ մ'ալ տեսան, որն որ առջի բերան երկաթ, բայց ետքը տեսակ մը խեցի (չէօմլէք) կարծուեցաւ: Տան մը մէջ մտած ատեննին՝ փայտէ քանդակուած օձեր գտան, որոնք բաւական վարպետութեամբ գործուած էին: Բայց ինչ մեծ զարմանք ու հետաքրքրութիւն ունեցան, երբ որ ուրիշ տան մը մէջ Եւրոպայի

նաւի կտոր մը տեսան։ Ապշեցան մնացին, չէին գիտեր թէ ինչպէս հոն եկեր է։ Շատերը շատ բան ըսին, բայց հաւանականն ան երեւցաւ որ արեւմտեան հովը կղզւոյն եզերքը բերած ըլլայ, ինչպէս որ արեւելեան հովը Կանարեան կղզիները գաւազաններ ձգած էր։ Բոլոր գեղջին մէջ վայրենիներէն մարդ մը չտեսնուելուն՝ Սպանիացիք անարգել ամէն բան աչքէ անցուցին։ Նոյն տեղը՝ Եւրոպայի բադերուն նման ընտանի բադերէ ու թութակներէ զատ ամենեւին ուրիշ կենդանի չտեսան։ Երբ որ այսպէս ամէն ծակ մտնելով, ամէն բան հետաքրքրութեամբ կը դիտէին, մէկէն զարհուրելի տեսարան մը դիմացնին ելաւ, քանի մը խրճիթներու մէջ եւ դուրսը գետնի վրայ շեղջ շեղջ մարդու ոսկրներ գտան։ Տեսնողներուն վրայ սոսկում մ'ինկաւ, եւ իմացան որ բնակիչները մարդակերներ են։ Տեղ տեղ ալ խրճիթներուն մէջ կախուած մարդու գանգեր կային, որոնք կ'երեւար որ ամանի եւ ուրիշ կարասւոյ տեղ կը գործածէին։

Վերջապէս գացողները ամէն բան աղէկ մը քննելէն իմանալէն ետքը՝ դարձան տեսածնին ծովապետին պատմեցին։ Անոնցմէ ետքը շատ չանցաւ՝ քանի մը նաւապետներ վայրենիներէն կնիկ մարդիկ ու տղայ մը բռնած բերին։ Կնիկներէն ոմանք նշաններով

իմացուցին որ իրենք ուրիշ ցեղէ են եւ ան կղզւոյն բնակիչներէն գերի բռնուած են, եւ բուն հայրենիքնին՝ Պորիդէն կղզին է (որն որ հիմա Բորդոյ ռիգգոյ, այս ինքն՝ Հարուստ նաւահանգիստ կ'անուանուի)։ Աս ալ իմացան Սպանիացիք որ կղզւոյն բնակիչները մինչեւ յիսուն մղոն հեռու բոլոր կղզիներուն թշնամի են, եւ ամէնքը կը սոսկացընեն եղեր. եւ չէ թէ մինակ բռնած գերիներին կ'ուտեն, հապա մանաւոր տղաք ալ կը բռնեն եղեր, որ պահեն գիրցընեն եւ այնպէս ուտեն։ Աս քստմնելի պատմութիւնները Սպանիացիները շատ տրտմեցուցին, մանաւանդ զԿոլոմբոս, որն որ տանք լսելով՝ մեծ հոգի մէջ կը մտնէր, ինչու որ նաւապետներէն մէկը Ցիէկոյ անուամբ՝ ութը հոգւով տաստուանց ցամաք ելած էր, ու դեռ ետ չէր դարձած։ Իրիկուն եղաւ, դեռ եկող գացող չկար. երկրորդ օրը նաւատորմղէն անդադար նշաններ կու տային, որ իրենց մարդիկներուն ուր ըլլալը իմանան ու ձայն մը տան, բայց ամէնեւին պատասխան տուող չեղաւ։ Պարապ տեղ ծովապետը չորս դին խնդրակներ խրկեց, որոնք փողերով կղզւոյն չորս դին կը դառնային ու անդադար ձայն կու տային. նաւերէն ու դրսէն ստէպ ստէպ թնդանօթ ու հրացան կ'արձըկէին։ Ցիէկոն եւ իր ընկերները չէին երեւար։ Սպանիացւոց կաս-

կածն երթալով կը հաստատուէր, մանաւանդ որ խնդրակներէն ոմանք իրիկուան դէմ դառնալով՝ պատմեցին թէ նորէն վայրենիներուն խրճիթները մտնելով, մորթած մարդկան միս տեսած էին, որոնք վայրենիները մաղմաղ կրակի վրայ խորովելու դրած էին. ուրիշ տեղ մ՚ալ տեսած էին որ բաղի ու թութակի մի հետ մարդու միս ալ կաթսայի մէջ լեցուցեր ու կրակի վրայ դրեր էին, որ եփի: Ասոնք լսելէն ետքը՝ ալ յոյսերնին կտրեցին ստուգիւ խեղճ Տիէկոն ընկերներովը վայրենիներուն գերի ինկած է, կ՚ըսէին, եւ կը վախնային որ իրենց գլուխն ալ նոյն փորձանքը չգայ:

Բայց Կոլոմբոս չէր ուզեր յոյսը բոլորովին կտրել. կրնայ ըլլալ որ, կ՚ըսէր, դեռ կենդանի ըլլան, եւ անտառներու մէջ՝ մոլորած՝ թափառին: Սակայն խեղճերն ազատելու ի՞նչ ճար կրնար ըլլալ, ո՞վ յանձն կ՚առնէր որ երթայ անանկ վտանգաւոր անտառներու մէջ զանոնք փնտռէ: Ճամբորդներուն մէջ Ոյետոյ անուամբ ազնուական տնէ կատիլիացի երիտասարդ մը կար, որն որ սաստիկ քաջ եւ աներկիւղ ու ծովապետին շատ սիրելի էր: Ասիկա Կոլոմբոսին եկաւ աղաչեց, որ իրեն հրաման տայ երթալու Տիէկոն ու անոր ընկերները փնտռելու: Ծովապետը հրաման տուաւ: Ոյետոյ քառասուն սրտոտ

մարդիկ ընտրեց, եւ անոնցմով բոլոր կղզւոյն մէջ սկսաւ պտըտիլ: Անցած անտառներնին անանկ անկոխ տեղեր էին. որ շատ անգամ սուրերով ճամբայ բանալ հարկ կ'ըլլար, միօրինակ ժայռերէ ու մացառներէ կ'արգելուէին: Բայց աշխատանքնին փուճ ելաւ. Հրացաններուն թնդիւնը, թմբուկներուն ձայնը, կորսուողներուն անունը՝ որ անդադար կը կանչէին, ամէն ձայն ու աղաղակ՝ որոնց արձագանգը բոլոր անտառներն ու բովանդակ կղզին կը թնդացընէր, անօգուտ եղան: Յուսահատած, յոգնած, բայց տեսած երկիրներնուն գեղեցկութեան ու պտղաբերութեան վրայ զարմացած՝ ետ դարձան:

Նաւոնց դեռ ցամաք եղած ատենը՝ ան խեղճ կորսուողներուն վրայ Կոլոմբոսին կասկածն ալ աւելցաւ, ինչու որ ուրիշ շատ գերի կանայք փախչելով՝ Սպանիացւոց նաւերուն մէջ ապաւինելու կու գային, շատերը տղայք ալ ունէին, ու լալով կ'աղաչէին որ իրենց քովը մնան: Կոլոմբոս աս խեղճերը՝ սէր ցուցընելով ու պարգեւներ տալով կը մխիթարէր: Ասոնք ամէնն ալ Պորիգենցի կիներուն ըսածները հաստատեցին: Ծովապետը մտածեց որ ան գերիներէն մէկ քանին պարգեւներով՝ ապարանջաններով, մանեակներով եւ ուրիշ կերպ կերպ զարդերով նորէն վայրենիներուն խրկէ, որ դուցէ իրենք ալ

հետաքրքրութեամբ դան: Բայց անգութ Գարայիպները ասոնց վրան հասան. բոլոր զարդերնին կողոպտեցին, եւ իրենցմէ մէկը. չմօտեցաւ, խեղճ գերիները հազիւ կրցան կեանքերնին ազատել, ու նորէն Սպանիացւոց ապաւինեցան:

Ծովապետը տեղեկացաւ որ նոյն ատենը գրեթէ բոլոր բնակիչները կղզիէն դուրս մերձաւոր կղզիներ աւար առնելու եւ գերի բռնելու գացեր են: Իրենց հոն չեղած ատեն՝ կնիկ մարդիկ, որոնք իրենց պէս պատերազմող ու կատաղի էին, գերիները կը պահէին, եւ արդէն պատրաստուած էին, որ եթէ վրանին յարձակում ըլլայ նէ՝ դէմ դնեն: Գերիներն ըսին թէ Պորիգէնցիք ապստամբութիւն չեն ըներ, միայն Գարայիպներուն յարձակման դէմ կը պատերազմին. բայց խոստովանեցան որ իրենք ալ բռնած գերինին ՙկը մորթեն ու կ՚ուտեն:

Կոլոմբոս կը փութար որ ան վայրենի կղզին թողու, եւ ժամ մը յառաջ երթայ իր սիրելի Իսպանիոլան տեսնէ. բայց խեղճ կորսուածները մտածելով՝ կը յապաղէր, կը յուսար որ դեռ կ՚երեւան: Գարայիպներուն վայրենութիւնն ու անգթութիւնը որչափ աւելի որ կ՚իմանար, այնչափ ան խեղճերն իրենց ձեռքը թողուլն իրեն դժուար կու գար. կը բաղձար որ եթէ զանոնք ազատել չիկրնար

նէ՝ գտնէ ստոյգ գիտնայ որ անոնցմէ ալ յոյս չկայ։ Բայց երբոր Ոյետոյ ընկերներովը յուսահատած ետ դարձաւ, ինքն ալ յոյսը կտրելով՝ տրտմութեամբ կամաց կամաց երթալու պատրաստութիւն տեսնել սկսաւ։

Երբոր առագաստները բանալու վրայ էին, մէկէն դիտուածով մը հեռուն ծովին եզերքը քանի մը Եւրոպացիի հագուստով մարդիկ տեսան, որոնք իրենց կողմը կու գային։ Բոլոր նաւաստորմղին մէջ ուրախութեան ձայն մը փրթաւ, եւ ծովապետը շուտ մը նաւակ մը խրկեց։ Ստուգիւ կորսընցուցած մարդիկներն էին, որոնք թէպէտ ողջ առողջ նաւը հասան, բայց հիւծեր, տկարացեր էին. աշխատութենէ, անօթութենէ ու երկայն ճամբայ քալելէն երեսնին գոյն չէր մնացեր։ Քիչ մը հանգչելէն ետքը՝ սկսան պատմել թէ ինչպէս թանձր անտառի մը մէջ անզգուշութեամբ մոլորելով՝ կը թափառէին. անտառը մութ ու անկոխ էր, ծառերն ալ այնպէս խիտ ու բարձր էին՝ որ երկինք ալ չէր տեսնուեր։ Ո՛չ փողերուն, ո՛չ ալ թընդանօթներուն ձայնը լսած էին. ոմանք խիստ բարձր ծառերու վրայ ելեր դիտեր էին, որ ճամբայ կամ ծով տեսնեն, բայց անկարելի եղած էր։ Թէպէտ միօրինակ քալելով՝ անտառէն դուրս ելած էին, բայց չորս կողմը լճեր ըլլալուն՝ ազատ ճամբայ չէին գտեր,

անօթութիւնն ալ սաստկանալով՝ ա՛լ կեանքերնէն յոյսերնին կտրեր էին. բայց վերջապէս բարեբախտութեամբ ծովեզերքն ելլելով՝ սկսած էին կղզւոյն չորս կողմը դառնալ, որով եւ նաւատորմիղը տեսեր էին: Ամէնն ալ ծովապետին իրենց ազատելուն համար մեծ շնորհակալութիւն մատուցին:

## Ի.

### Գարայիպներու հետ կը կռուին:

Կոլոմբոսի նաւն ընդունած գերի կանայք կ'ըսէին որ դէպ ի Հարաւ նաւելու ըլլան նէ՝ ցամաք երկիր կը գտնեն: Կոլոմբոս ստուգիւ ան կողմերը կը նաւէր, թէ որ օր մը յառաջ Իսբանիոլա երթալու չբաղձար: Կը մտածէր թէ իր առջի ճամբորդութեան ընկերները զինքն անանկ մեծ նաւատորմղով նորէն դարձած տեսնելնուն՝ շատ պիտի ցընծան: Անտարակոյս, կ'ըսէր մտքին մէջ, հիմա առատ պաշար ունենան պիտի, կղզւոյն բերքերէն ո՛րչափ արդեօք ժողված են, ո՛րչափ ալ իրենց հնարագիտութեամբը նորէն հացուցած են: Ո՜հ, կ'ըսէր, ո՛րչափ երանելի կ'ըլլամ թէ որ հոն կանոնաւոր կառավարութիւն մը կարենամ հաստատել, եւ Հնդիկները սիրով դարման գտնելով՝ կրօնի ճշմարտութիւններովը կրթուին, քաղաքականանան, կարգ կանոն սորվին, եւ Սպանի-

ացւոց Հպատակ ու բարեկամ ժողովուրդըլլան։

Ասանկ ջերմ խորհուրդներու մէջ նաւերը դէպ ի հիւսիս կը վարէր, Անդիլեան կղզիներուն մէջէն նաւարկելով, եւ ոչ մէկուն մէջ վայրկեան մը կենալ ուզեց, որ չըլլայ թէ ուշանայ։ Միայն Հեռուանց ողջունելով ու տեսած կղզիներուն զատ զատ անուններ դնելով՝ կ'անցնէին։ Միայն Սուրբ Խաչ կղզին քիչ մը կեցաւ, որն որ բուն բնակիչներուն լեզուաւը Այայ կը կոչուէր ու Գարայիպներուն ձեռքն էր։ Սպանիացիք հոն ալ սոսկալի բնակիչներուն հանդիպեցան, որոնց կերպ կերպ այլանդակ գունաւորած կերպարանքը, ջղոտ բազուկները, յաղթանդամութիւնը, խիստ ու վայրենի նայուածքը յայտնի կը ցուցընէին որ աս ազգին մտաւոր կարողութիւնները՝ միայն պատերազմ, աւեր, արիւնհեղութիւն կը ճանչնային, եւ բովանդակ իղձերնին ու խորհուրդնին ասոնց վրայ էր։

Ծովակալը հոն անոնց հետ պատերազմ մ'ընելու ստիպուեցաւ։ Գունդ մը Գարայիպ ծառակրի մը մէջ մտած կու գային. հետերնին երկու կին ալ կար, որոնցմէ մէկուն հետ թագուհւոյ պէս պատուով կը վարուէին։ Ասոնք Եւրոպացւոց նաւատորմիղը տեսնելնուն պէս՝ առջի բերան ապշութեան մէջ ինկան եւ զարմանքէն անշարժ մնացին.

ուստի եւ Սպանիացիք կրցան մտադրութեամբ զանոնք քննել։ Աչքերնուն չորս կողմը գունաւոր բոլորակ մ'ըրած էին, որն որ խիստ պլանդղակ կ'երեւար. աչուըններին զազանի աչուըններու պէս կը փայլէր, կարծես թէ բբերնէն բոց դուրս կ'ելլէր։ Յօնքերնին թաւ ու կամարաձեւ էր. երեսնին զազանային յանդգնութիւն ու սրտոտութիւն մը նկարուած էր։ Մէջերնէն շատերը՝ կզակներնուն ձեւովը, ակռաներնուն մեծութեամբն ու սրութեամբը, այտերնուն լեցունութեամբը, քթերնուն շիտակ ու քառակուսի ըլլալովը՝ ամեհի առիւծներու կը նմանէին։ Բազուկնին ու սրունքնին՝ բամբակէ կասուներով փաթթած ու սաստիկ պնդած ըլլալով՝ ջղերնին արտաքոյ կարգէ ուռեր ու դուրս ինկեր էր, եւ կ'երեւար որ սաստիկ ուժերնուն համեմատ ալ երագ ու թեթեւ են։

Վայրենիներն ալ դիմացնին ելած զարմանալի տեսարանէն յափշտակած՝ մեծ մտադրութեամբ Սպանիացւոց կը նայէին, այնչափ ապշութեան մէջ էին, որ Սպանիացւոց նաւակներուն մէկը իրենց ծառակրին մօտեցաւ։ Գրեթէ զարնուելու վրայ էր, մէյ մ'ալ անոնք զգաստացան, թիակնին ձեռք առին եւ բոլոր ուժով թիավարելով սկսան փախչիլ։ Խել մը հեռացած էին, բայց Սպանիացի նաւակը վրանին հասնելով՝ առջեւնին

տառաւ ու չէր թողուր որ անցնին։ Վայրենինները մտքերնին դնելով որ ասոնք թշնամութեան հոգւով եկած են ու զիրենք բռնել կ'ուզեն, կեցան ու սաստիկ կռուելու սկսան։ Նետերը կարկուտի պէս Սպանիացւոց վրայ կը տեղային։ Երկու կանայքն ալ՝ համարձակութեամբ ու քաջութեամբ սլաքներն կ'արձակէին։ Անոնց մէկը նետով Սպանիացի մը զարկաւ չարաչար վիրաւորեց։ Սպանիացիք ընկերնին կիսամահ գետնի վրայ ինկած տեսնելով՝ կատղեցան, եւ ատանկ վայրենի կռուի մը շուտով վախճան տալու համար՝ իրենց նաւակին գլխովը Գարայիպներուն ծառակուրը կործանեցին։ Բայց ամէնքը զարմացան մնացին, երբոր տեսան որ ասոնք իրենց ծառակրին դառնալէն ամենեւին չվախնալով ու ջրի մէջ լողալով՝ անանկ քաջ կը պատերազմէին, իբրեւ թէ հաստատուն երկրի վրայ կեցած ըլլան։ Լողացած ատեննին՝ երբեմն երբեմն ծովին տակը ծածկուած ժայռերու վրայ կենալով՝ նետ կը նետէին, եւ այնպէս աղէկ կը հանդիպցընէին որ կարծես թէ ցամաքի վրայ կը կռուէին։ Բոլոր Սպանիացւոց նաւատորմիղն ապշութեամբ կը նայէր ու այնչափ քաջութեան վրայ կը զարմանար։ Բայց վերջապէս շատ ջանալէն ու ամէն ճիգն ընելէն վերջը՝ ուժերնին կտրեցաւ, եւ այնչափ բազմութեան՝ որ զիրենք պաշարած էին՝ չկրնալով

դիմանալ, անձնատուր եղան։ Թագուհին իր որդւոյն աս գերիներուն մէջ գտնուեցաւ։

Հնդիկներուն մէկը չարաչար վիրաւորած ըլլալով՝ երկրորդ օրը մեռաւ. բայց իր մահուանն ալ վրէժը խնդրուեցաւ, ինչու որ ան Սպանիացին ալ՝ որն որ վայրենիներէն մահացու վէրքն առած էր, երկայն ատեն հեծելէն ու չարչարուելէն ետքը՝ մեռաւ։ Կ'երեւայ որ նետը թունաւորած էր։ Ժանտ Գարայիպները ամենեւին սիրով կամ պարգեւով չմեղմացան. ետքը թէպէտ իբրեւ գերի Սպանիա ալ բերուեցան, բայց դաժանութիւննին չթողուցին, այնպէս որ երեսնին նայողը կը զարհուրէր։

Գ.

Խաւանիոլա կղզի հասնիլն:

Նաւատորմը դէպ ի հիւսիս յառաջ երթալով՝ իրարու մօտ շատ կղզիներու կոյտ մը գտաւ, որոնցմէ ոմանք տնկերով ու անտառներով ծածկուած էին, բայց մեծ մասը չոր ցամաք էր, ու գետնէն վեր մերկ ժայռեր բարձրանալով՝ երկինքին պայծառ կապուտակ գունովը ներկուած կ'երեւային։ Կղզիներուն խիստ մեծը Կոլոմբոս Սուրբ Ուրսուլա անուանեց. իսկ բոլոր բազմութեան՝ Տասն հազար Կուսանաց անուն դրաւ, որոնք հիմա Կուսանաց կղզիք կը կոչուին, ու Անդիլեան կղզի-

ներուն Հիւսիսային մասն են: Քիչ մ'ալ յառաջ երթալով՝ Պորիգէն ըսուած կղզին հասաւ, որն որ Գարայիպներուն ձեռքէն փախչող գերի կանանց հայրենիքն էր: Աս երկիրն ալ Սպանիայի թագաւորին ու թագուհւոյն անուամբ ժառանգեց, եւ մէկ մասն ալ անձամբ պտըտելով՝ ուրիշ կողմերէ աւելի քաղաքականութեան նշաններ տեսաւ: Պտղոյ պարտէզները ցանգով պատած, ու մասնաւոր քալելու համար զուարճալի ճամբաներ շինուած տեսաւ: Գեղեցիկ գեղի մը մէջ հասարակ խրճիթներու քով տուն մը տեսաւ, որուն շէնքն աւելի փառաւոր էր: Իսկ կղզին գեղեցկութեամբն ու պտղաբերութեամբը Անգիլեան կղզիներէն վար չէր մնար:

Բայց Սպանիացիք արդէն գիտէին որ աս տեղի բնակիչները՝ Գարայիպներուն դէմ անդադար կռուի մէջ ըլլալով՝ անոնց բարքն ալ ըստ մասին առած էին, ու բռնած գերինին չարաչար տանջելով կ'ուտէին: Ծովապետը հոս ալ մէկ օրէ աւելի չկեցաւ, սիրտը կ'եփէր որ օր մը յառաջ Իսպանիօլա կղզին հասնի. երթալով կարօտը կ'աւելնար: Վերջապէս անպատմելի ուրախութեամբ օր մը Կոլոմբոսի առջի նաւարկութեան ընկերները Հայդիի ծովեզերքը տեսան: Սպանիական կղզի՜ն, սպանիական կղզի՜ն ըսելով՝ ամէնքը վեր վազեցին: Կաստիլիացիները կը կարծէին

Թէ նոր Հայրենիք մը պիտի գտնեն, եւ երազած սքանչելի ոսկի դարերնին հաստատուած պիտի տեսնեն: Ցասնուեօթը նաւն ալ իբր թէ արդէն ընտանի եղած ծովու մը վրայ մեղմով յառաջ կը խաղայրն, բայց դեռ ամրոցը չէր տեսնուեր: Ամէն բանէ յառաջ աս օտարատէր երկրին մէջ կատարելու մեծ պարտաւորութիւն մը, ստուգիւ ողջալի պարտաւորութիւն մ'ունէին. այսինքն ան Սպանիացւոյն դիակին գերեզման մը փնտռել, որն որ, ինչպէս վերը պատմեցինք, դարայիւ կնոջ ձեռքէն վիրաւորուելով՝ Նաւահանգիստը մտած ատեններնին՝ մեռած էր: Դժբախտ Սպանիացւոյն մարմինը բերող նաւը թաւ ու ծառախիտ տեղ մը մօտեցաւ, ու գիւղը դուրս հանելով՝ յուղարկաւորութեան կարգը կատարեց: Աս միջոցիս մէջ երկրին բնակիչներէն գունդ մը ծառաւկուրներով ծովապետին եկան, ու կ'աղաչէին որ շնորհք ընէ իրենց կղզին գայ, ուր ցեղապետնիս, կ'ըսէին, ձեզի կը սպասէ, ու ձեզի պարգեւելու շատ ոսկի պատրաստած է: Կոլոմբոս շնորհակալ եղաւ ու հրաժարեցաւ, ըսելով թէ հիմա չեմ կրնար գալ, ինչու որ ընկերներս ունիմ, որոնց ժամ մը յառաջ հասնիլ կը փութամ: Աս խօսքերով ու առատ պարգեւներով զիրենք արձրկեց, եւ ինք յուղարկաւորութեան գացող Սպանիացւոց գալստեան կը սպասէր:

## Գ.

### Ափրոցը կործանուած կը գտնէ:

Մինչեւ Հիրամ տեսանէր թէ Կոլոմբոս որչափ երկիրներ գտաւ, եւ թէ իր նաւարկութեան ընկեր եղողներուն արտին մէջ որչափ մեծ անհնկալութիւն ձգած էր: Ստոյգ է ան մեծամեծ յոյսերը կէս մը երեւակայութիւն ու ցնորք եղն, բայց աս ալ պէտք է խոստովանիլ որ եթէ մարդկային նենգութիւնն ու չարութիւնք ծովապետին ջանքը եղծանելու չըլլար, գրեթէ ամէնքն ալ կըրնային կատարուիլ: Ստուգիւ թէ որ գաղթականներ հաստատելու աղէկ տեղեակ ըլլար, եւ իր աշխատութեանն ու ջանքերին աղէկ մարդիկ հաղորդ ունենար նէ, ան ամէն զարմանալիքները կրնային իրաք ալ ըլլալ: Կրնար ազգերը դարձընել, թագաւորութիւններ հաստատել, հարստանալ ու քաղաքաւոր Եւրոպացիք բարեբախտ ընել՝ անծանօթ երկրի մը մէջ՝ որ այնպէս պատուական ու երջանիկ էր: Անոնցմէ զատ՝ կրնային առատութեամբ ժողվել ան ոսկին՝ որուն յուսովը ու ցանկութեամբը Սպանիացիք այնչափ գրգռուած էին: Բայց մատնութիւն, խաբէութիւն, անգթութիւն, մոլութիւն ու չարաչար կիրքեր, մէկէն առջի բերան ամէն յոյս ու օգուտը խափանեցին:

Կոլոմբոս Նաւիտատի ամրոցը երեսունութը հոգի թողուցեր էր։ Ստոյգ է երկիրը բոլորովին անծանօթ էր, բայց շատ նպաստ ու օգնութիւն ալ ունէին։ Նախ երկրին ժողովուրդը բարի էր, եւ Սպանիացւոց՝ երկինքէ իջած մարդիկներու պէս պատիւ կ'ընէին։ Սպանիացւոց ուրիշ բան չէր մնար, բայց եթէ բարի ու միամիտ ժողովրդեան աս համարումն իրենց իմաստուն վարմունքովը պահել, որով Հայթիի մէջ ամէն բանի կարող կ'ըլլային, ամէն ուզածնին կրնային ընել։ Բայց աս նոր գաղթականները՝ ծովապետին իրենցմէ բաժնուելուն պէս՝ իրենք զիրենք ծուլութեան եւ ամէն կերպ անկարգութեանց տուին, որն որ իրենց կործանման պատճառ եղաւ։

Կոլոմբոս որչափ որ ամրոցին կը մօտիկնար, այնչափ աւելի փութով նաւաստիները յառաջ կը վարէր։ Նոյեմբերի 25ին կղզւոյն ուրիշ մէկ կողմը խարիսխ նետեց, որ ելլէ նոր ամրոց մը շինելու համար յարմար տեղ գտնէ։ Քանի մը նաւավար կղզւոյն մէջ պտըտելու ատեն՝ առուակի մը քով մարդու եւ տղու մը դիակ տեսան, որոնք այնչափ փտտած ու այլանդակած էին, որ ով եւ ինչ ազգէ ըլլալնին յայտնի չէր. բայց մարդուն վիզը չուան մը կապուած էր, որուն Սպանիոյ շինուած ըլլալը յայտնի կ'երեւար։ Դիակին բազուկ-

ներն ալ խաչաձեւ գերանի մը կապուած էին: Երկրորդ օրը անկէ քիչ մը հեռու ուրիշ երկու դի ալ գտան, որոնց մէկը մօրուօք էր: Հնդիկներուն առանց մօրուքի ըլլալով՝ յայտնի բան էր որ մեռած մարդը Սպանիացի էր: Բայց ինչպէս սպաննուած ու ինչու համար այնպէս անթաղ ձգուած էր: Բոլոր նաւորդները մտմտուքն առաւ. ծովապետը շփոթած ըսելիքը չէր գիտեր:

Թէպէտ կղզւոյն բնակիչները մեծ վստահութեամբ կու գային, ուրախութեամբ ու պարգեւներով նաւատորմղին չորս կողմը իրենց ծառակուրներովը կը կենային, յուսալով որ Սպանիացիներէն զարդեր ու խաղալիկներ առնեն. սակայն աս պարզութիւնը ծովապետին սիրտը հանդարտեցընելու բաւական չէր, մանաւանդ թէ անձկութիւնն երթալով կ՚աւելնար: Վերջապէս ամսոյն 27ին իրիկուան դէմ ամրոցին դիմացն հասան: Ծովապետը խոհեմութիւն սեպեց ան գիշերը նաւերուն մէջ մնալ, որ առտուանց լուսընալէն ետքը ցամաք ելլէ. միայն իր գալուստն աւետելու համար ուրախութեան թնդանօթ նետեց: Բայց ցաւն ու մտմտուքը որչափ աւելցաւ, երբոր ցամաքէն ոչ թնդանօթով, ոչ հրացանով պատասխան տուող եղաւ: Աչքն անդադար ցամաքն էր, որ լոյս մը տեսնէ, մարդու ձայն լսէ, բայց պարապ,

ամէն կողմ մութ էր, ոչ մարդու ձայն կար ոչ ալ ամենեւին նշան մը։

Ծովակալը մեծ տխրութեամբ մէկ դի քաշուեցաւ. բոլոր նաւորդները վախի ու կասկածի մէջ էին. մէյ մ՚ալ յանկարծ կես գիշերուան դէմ ծովուն վրայ լոյս մը երեւցաւ, ու նաւատորմղին մէջ չչնչող ելաւ թէ ցամաքէն նաւ կու գայ։ Եկողը՝ ծառաակուր մըն էր, որն որ քիչ մը հեռու կեցած՝ նաւերէն մէկուն ձայն տուաւ թէ ծովակալին նաւն ո՞րն է։ Նաւը ցուցուցին. բայց ան Հընդիկը՝ որն որ ծառաակրին գլխաւորը կ՚երեւար, չուզեց վեր ելլել, մինչեւ որ անձամբ ծովապետը չտեսնէ։ Կոլոմբոս երեւցաւ, ու լապտերի մը լուսով նայելով՝ ճանչցաւ որ խօսողը Կուապանակարիին եղբայրն էր։ Ասով քիչ մը միխիթարեցաւ, կը յուսար որ իր հայրենակիցներուն վրայ ստոյգ տեղեկութիւն մը կ՚առնէ։ Հնդիկները զԿոլոմբոս տեսնելնուն պէս՝ շուտ մը նաւը մտան, եւ իրենց ցեղապետին կողմանէ զինքը ողջունելէն ետեւ՝ երկու ոսկիէ դիմակ պարգեւ տուին։ Ծովապետը պարգեւը չառած՝ հարցուց որ հոն մնացող Սպանիացիներն ո՞ւր են, ի՞նչ եղան։ Հնդիկներուն գլխաւորը արամութեամբ պատասխան տուաւ, թէ քու երթալէդ ետեւ հոն շատ դժբախտութիւններ պատահեցան։ Գուանաապայ՝ Միպայոյի ցեղապետը Կուապանա-

կարիին վրայ յարձակեցաւ, անոր գեղն այրեց · Կուազանակարին ալ վիրաւորեցաւ, ու հիմա պզտի գեղի մը մէջ հիւանդ կը պառկի։ Իսկ Սպանիացիներէն ոմանք, ըսաւ, հիւանդութենէ մեռան, ոմանք ալ կռուով իրարու վրայ ինկան ու մէկզմէկ սպաննեցին · իսկ մնացածները կղզւոյն ներսի կողմերը գացին։

Կոլոմբոս ասոնք լսելով՝ քիչ մը մխիթարուեցաւ որ գոնէ Սպանիացիք բոլոր չեն կորսուած, ինչպէս ինքը կը կասկածէր, մանաւանդ որ Կուազանակարիին կողմանէ ալ մատնութիւն չէր եղած, որն որ իր գլխաւոր վախն էր։ Ծովապետը պատուիրեց որ Հնդիկներուն աղէկ նային, անոնց գինի եւ ուտելիք հանեց, եւ իրենցմէ խօսք առաւ որ երկրորդ առտու ցեղապետնին մէկտեղ առնեն գան։ Երբոր երկրորդ օրն անցաւ ու Կուազանակարին չերեւցաւ, Կոլոմբոս ցամաքը մակոյկ մը խրկեց։ Գացողները ցամաք կը հասնին. բայց հոն նորէն մեծ տրտմութեան մէջ կ'իյնան։ Ամրոցը կործանած, զգեստներն ու կահ կարասին ցիր ու ցան եղած, աթոռները կոտրտած, ուտելու բաները թափթըփած, ապականած կը գտնեն։ Ամէն բան յայտնի կը ցուցընէր որ մեծ բռնութիւն ու կռիւ եղած էր։ Իսկ Հնդիկներէն մէկը չէր երեւար, ոմանք հեռուէն միայն տեսնելով՝ կը փախչէին։

Սակայն նա դարձաւ եւ ամէն բան ծովապետին պատմեց։ Կոլոմբոս նորէն շփոթեցաւ եւ ուզեց որ երթայ անձամբ տեսնէ։ Ստուգիւ իր ցաւն ալ շատ մեծ եղաւ. ընելիքը չէր գիտեր։ Ի՞նչ է, կ'ըսէր, աս խառնակութեան պատճառը։ Եթէ Սպանիացիներէն ապրող կայ, ինչո՞ւ մէկը չ'երեւար. ուրեմն յայտնի բան է որ ցեղապետը դաւաճանութիւն ըրած է։ Բայց աս ալ կը մտածէր թէ գուցէ ան աւերումները Գաոնապոյին կողմանէ ըլլան, եւ բոլոր Սպանիացիք ալ իրմէ սպաննուած ըլլան։ Իր ընկերները կ'ըսէին թէ ստուգիւ Կուագանակարին դաւաճանութիւն ըրած է։ Բայց Կոլոմբոս ցեղապետին մարդասիրութիւնը յիշելով, չէր կարծեր որ անոր կողմանէ դաւ եղած ըլլայ։ Դէպ ի դաշտերն երկըննալ սկսաւ, եւ երբոր հեռուէն տեսաւ որ բոլոր գեղ մը աւերած եւ ամէն բան չորս դին այրած, կոտըրտած, մոխիր եղած էր, միտքը դրաւ թէ ստուգիւ ցեղապետն անմեղ է։

Պատուիրեց որ շուտ մը ամրոցին քովերը փորեն, եւ գբերը կամ ջրհորները պարպեն, ինչու որ գացած ատեն ապսպրած էր որ եթէ նեղի գալու ըլլան, գանձերնին գետինը թաղեն կամ հորը նետեն։ Ծովապետին հրամանը կատարուեցաւ, չորս կողմը ասդին անդին փոսեր բացին, գբերը մտան

փնտռեցին. բայց բան մը չկրցան գտնել։ Սակայն մօտ գեղի մը մէջ, որուն բնակիչները թողուցեր փախեր էին, Կոլոմբոս զանկապաններ, զգեստներ, կտրուած չուխայի կտորներ գտաւ, որոնք Սպանիացիներուն ձեռքէն առնուած կ'երեւային։ Վերջապէս քանի մը տեղ գետինը փորելով՝ իրարու մօտ թաղուած տասնումէկ սպանիացի գտան։

Ուր որ կ'երթային, բուն տեղացիները կը փախչէին, երեւալ չէին ուզեր։ Աս ամէն նշանները տեսնելէն ետքը՝ ի՞նչ պէտք էր մտածէին։ Կամ ըսին, խղճերնին մաքուր չէ ու երեւնալու կը կասկածեն, եւ կամ Սպանիացիներէն շատ նեղութիւն քաշած ըլլալով՝ մեղի մօտիկնալու եւ հաղորդութիւն ընելու չեն համարձակիր։ Բայց թէ ո՞րն էր բուն պատճառը՝ միայն իրենցմէ կրնային իմանալ։ Ուստի Կոլոմբոս հրամայեց որ քաղցրութեամբ ու պարգեւներ ցուցընելով՝ վայրենիներէն քանի մը հոգի շահի։ Շատ չանցաւ անոնք մէկիկ մէկիկ մօտենալ սկսան. առջի բերան կը վախնային, բայց երբոր տեսան թէ Սպանիացիք զիրենք մարդասիրութեամբ ու ընծաներով կ'ընդունին, առաջուան պէս համարձակ եւ ընտանութեամբ սկսան վարուիլ։ Մինչեւ ծովապետին ալ մօտեցան, եւ սկսան հետը շատ մեծ ընտանութեամբ խօսիլ։

Կոլոմբոսին սիրտը կ'եփէր, գաղթականներուն պատահածն իմանալ կ'ուզէր. վերջապէս ան հինգ Հնդիկներէն մէկը՝ որոնք հետը Սպանիա տարած էր, թարգման դնելով ու տեղացիներէն քանի մը հոգւոյ օգնութեամբ, որոնք քիչ մը սպաներէն սորված էին, ամէն բան տեղն ի տեղը իմացաւ:

## Ե.

### Գաղթականներուն դժբախտութիւնը:

Ան երեսունմ'ութը հոգին՝ որոնք Կոլոմբոս իբրեւ գաղթական հոն թողուցած էր, իրենց կոչումն ու պարտքը ճանչցած չէին: Ասոնք Հայթիի մէջ իբր թէ առաջին քարը պիտի ըլլային, որոնց վրայ Կոլոմբոս իր ապագայ քաղաքականութեան շինուածը պիտի կանգնէր: Երբ որ մեծերնին իրենցմէ հեռացաւ, բնակիչներուն պարզութիւնը ճանչնալով՝ կարծեցին թէ ամէն բան աներկիւղ կրնան ընել: Բայց աս իրենք զիրենք վայրենիներէն շատ վեր սեպողները՝ բոլորովին թանձրամիտ ու ստորին աստիճանի մարդիկ էին, ոմանք գործաւոր, ոմանք ալ նաւավար: Կրթութիւննին շատ քիչ ըլլալով՝ մարդասիրութիւն, չափաւորութիւն, մեծանձնութիւն ինչ բան է չէին գիտեր. եւ երբոր իրենք զիրենք թագաւորի պէս բոլոր երկրին տէր տեսան, իրենց իշխանութեան

ուրիշ չափ չճանչցան, բայց եթէ իրենց կարողութիւնը՝ որով անխիղճ ու անգութ մարդիկ դիւրաւ կը զեղծանին: Յեղապետը՝ միայն Կոլոմբոսին եւ անոր գլխաւոր պաշտօնեաներուն հետ անձամբ տեսնուած էր. իսկ մնացած նաւորդները անոր հրամանին տակ հնազանդութեան ու կարգաւորութեան մէջ տեսած էր: Ուստի երբ որ ծովապետին երթալէն ետքը՝ անոնց անկարգութիւնները տեսաւ, կը զարմանար, չէր գիտեր թէ աս փոփոխման պատճառն ինչ է: Աւչի բերան անոնց ամէն ուզածը կը կատարէր. ոսկի կ'ուզէին՝ կու տար, ինչ որ կը պահանջէին՝ անխափան կը կատարէր: Իր հպատակները գերիի պէս անոնց կը ծառայեցընէր: Երբոր տեսաւ որ անամօթութեամբ ժողովրդեան հետ կ'կենային, սկսաւ զանոնք խրատել որ համեստութեան ու ամուսնական պարտաւորութեան դէմ ժողովուրդը չզրկեն: Աս ամէն բան՝ որոնք վայրենի ազգէ մը մարդ չի կրնար յուսալ, յանդուգն ու անօրէն Սպանիացւոց ցոփութիւնը չկրցան զսպել: Բարբարոս ապստամբներու պէս՝ իրենց բարերարներուն գեղերը կը յարձակէին, անոնց աղքատիկ տները կը մտնէին, ուզածնին կը թալլէին. խեղճ անմեղ մարդիկը կը չարչարէին, քրիստոնէական առաքինութեան, մանաւանդ թէ մարդկութեան դէմ, ամէն

սոսկալի չարութիւն ամէն օր անպատիժ կը գործէին՝ աղքատ, վայրենի, բայց իրենցմէ շատ աւելի զգաստ ժողովրդեան մէջ: Երբոր իրենց ագահութեան, խստասրտութեան ու անօրէնութեան չափը լեցուցին, անկէ ետեւ իրարու հետ կռնալ սկսան, ու իրարու ոքս եղան: Մէջերնին անմիաբանութիւն ինկաւ ու յանկարծ գազանային անգթութեամբ իրենց ամրոցին մէջ իրար ջարդել սկսան: Տիէկոյ Արանային իշխանութիւնն անարգեցաւ, մէկը զէնքը բանի տեղ չէր դներ:

Շատերը սկսան ասդին անդին ցրուիլ, միաբանութիւնը քակուեցաւ. կղզւոյն մէջ թափառական կը պտըտէին, ու թշնամւոյ երկիր մտնող քաղցած զինուորներու պէս՝ քանդել, աւար առնել, բռնութիւններ ընել իրենց օրինաւոր սեպեցին: Պետրոս Կուդդիէրէզ ու Ռոտրիկոյ Եսգոպատոյ աս անկարգութիւնները տեսնելով՝ Արանան մեղադրել սկսան, որ աս չարիքները իր թուլութենէն ու տկարութենէն յառաջ կու գան. եւ ինք հոգւով իրեն դէմ ելան, որով ամրոցին մէջ նորէն հերձուած մ'եղաւ: Բայց պարզ բաժանումը բաւական չըլլալով՝ անգամ մը երկու կողմանէ զարնուեցան, ու մէջերնէն մէկը մեռաւ: Անկից ետքը Կուդդիէրէզ ու Եսգոպատոյ իրենց կողմնակիցներովը Արանայէն զատուեցան գացին, որ ու-

բուշ տեղ մը առանձին բնակին: Շատ ոսկի գտնելու յուսով՝ Սիպաոյի երկիրն ուզեցին երթալ, ուր լսած էին թէ գետերը ոսկի կը բղխեն: Այսպէս աս անխոհեմները անհնա-զանդ եղան իրենց գլխաւորին, որուն իբրեւ ծովապետի ու փոխարքայի հնազանդութիւն երդուեր էին: Կոլոմբոս բաժնուելու ատեն՝ իրենց յայտնապէս ըսած էր թէ Միաբան եղէք, ամրոցը մի թողուք, ու մասնաւոր ար-գելած էր որ ամենուն ուրիշ ցեղապետնե-րու երկիր չերթան:

Չէին գիտեր որ Սիպաոյի լեռները օտար ցեղապետի իշխանութեան տակ են: Գաոնա-պոյ՝ նոյն երկրին ցեղապետը՝ ծննդեամբ Գարայիպացի էր, յանդուգն ու սրամիտ. Սիպա-ոյի բնակիչները նուաճեր ու ամենուն յար-գելի եղեր էր: Իր հպատակներուն վրայ մեծ ազդեցութիւն ունենալէն զատ՝ Հայդիի ու-րիշ ցեղապետաց առջեւն ալ մեծ համարում եւ գրեթէ անոնց վրայ գլխաւորութիւն մը ստացած էր: Գաոնապոյ Սպանիացւոց յա-ռաջադիմութիւնն իմանալով՝ միշտ անհան-գիստ էր, զանոնք հեռացընելու միջոցը կը մտածէր. եւ երբոր անոնց բռնութիւններն ու անկարգութիւնն ալ լսեց, իր հպա-տակներուն սիրտն անոնց դէմ մեծ ատելու-թիւն ձգեց: Այսպիսի մարդի վրայ եղող ժո-ղովրդեան մը երկիրը մտան անխոհեմ Կուզ-

դիէրէզ ու Եազուպատոյ, իրենց ընչաքաղց ինը կողմնակիցներովը։ Խորամանկ ցեղապետը նախ թողուց որ մտնեն, ետքը զամէնքը ալ բռնեց ու մեռցուց։ Աս յաջողութենէն աւելի եւս համարձակութիւն առնելով՝ ժողովուրդը հաւանեցուց որ միացած Սպանիացւոց վրայ ալ երթան, զանոնք ալ ջնջեն ու անոնց պաշտպանութիւն ընող ցեղապետն ալ պատժեն։ Մարիոն ցեղապետն ալ՝ որուն երկիրը Կուադանակարիին սահմանակից էր, իր կողմը շահեցաւ. եւ երկուքը մէկտեղ գաղտ իրենց վայրենի ամբոխն առած՝ յանկարծ Նաւիտատի ամրոցին վրայ յարձակեցան։

Անտառներուն թանձրութիւնը վայրենիներուն գալը ծածկած էր, այնպէս որ Սպանիացիք ամենուն կասկած մը չունենալով՝ անհոգ կը կենային։ Ան միջոցին Գուանանապոյ իրեններովը ամրոցին վրայ կ'իյնայ ու դռները բաց գտնելով՝ ներս կը յարձակի։ Արանայրին քովը տասը հոգի միայն մնացած էր, ուրիշները ասդին անդին հիւղերու մէջ ցրուած էին։ Սպանիացիք աս անակնկալ յարձակումը տեսնելով՝ կը շփոթին, զէնք առնելու կը վազեն, բայց անազան։ Գուանապոյ իր բազմութեամբը վրանին կ'իյնայ, եւ ամէնն ալ մէկիկ մէկիկ խողխողել կու տայ։ Ամրոցը կործանելէն ու ամէն բան ցիր ու ցան ընելէն ետքը՝ առանձին հիւղերու մէջ բնակող-

ներուն վրայ ալ կը յարձակի, կը մեռցընէ, կ'այրէ, կը տոչորէ։ Այս կոտորածով Սպանիացիք դրեթէ բոլոր կորսուեցան. ութը հոգի միայն ծովի նեղուցէ մը լողալով անցնիլ ուզեցին, բայց անոնք ալ չկրնալով ցամաք հասնիլ՝ խեղդուեցան։

Գուատեմալայ աս ամէն բան յաջողութեամբ կատարելէն ետեւ՝ Կուադանակարիին վրայ ալ կը յարձակի։ Կուադանակարի կամ Սպանիացիք պաշտպանելու եւ կամ իրենք զիրենք ազատելու համար՝ դէմ կը դնէ. երկու կողմանէ կը պատերազմին, բայց Գուատեմալայի կողմը զօրաւոր ըլլալով՝ կը յաղթէ, գեղը կ'այրէ, իսկ Կուադանակարի վիրաւորելով՝ հեռաւոր գեղերուն մէկը կ'ապաւինի, ուսկից իր եղբայրը ծովապետին խրկած էր։

Ալվարատօս աս աղէտալի պատմութիւնը լսելով՝ կը հեծէր, եւ սուգութեանը վրայ տարակոյս չունէր, ինչու որ դիպուածները մանր պարագաներովը պատմութիւնը շատ հաւանական կ'ընէին։ Բայց որովհետեւ Սպանիացիներէն մէկը չէր ազատած, որ ան կողմանէ ալ տեղեկութիւնը հաստատուն ընէր, կը կասկածէր որ գուցէ ան ամէն դժբախտութեանց մէջ դաղտնի դաւաճանութիւն մը եղած ըլլայ, կամ թէ Կուադանակարին Եւրոպացւոց թշնամութիւն ըրած ըլլայ, որն որ իր ապագայ գործոց մեծ դժուարութիւն կրնար ըլլալ։

# Զ.

*Կոլոմբոս Կուագանակարիին հետ կը տեսնուի: — Սպանիացւոց անխստանութիւնը: — Գաղաշինա:*

Շատ չանցաւ Կոլոմբոս Կուագանակարիէն նորէն լուր առաւ: Մելքիոր Մալտոնադա անունով նաւապետ մը, նոր ամրոց շինելու յարմար տեղ մը փնտռելու գացած ըլլալով՝ հեռուէն ծառակուր մը տեսաւ, որուն մէջ Կուագանակարիին կողմանէ դեսպան մը կար, որն որ նոյն ցեղապետին եղբայրն էր: Երբ որ մօտեցաւ, նաւապետին աղաչեց որ Կուագանակարիին այցելութիւն մ'ընելու շնորհք ընէ: Մալտոնադա յանձն առաւ ու գնաց: Կուագանակարին՝ որ կախուած անկողնոյ վրայ պառկած էր, զինքը մեծ սիրով ընդունեցաւ. կը ցաւէր որ ծովապետը դեռ չկրցաւ տեսնել, եւ Սպանիացւոց կոտորածին պատմութիւնը ինքն ալ նոյնպէս պատմեց:

Երկրորդ օրը Կոլոմբոս՝ հետը շատ մարդ առած՝ անձամբ անոր այցելութեան գնաց: Կուագանակարին զծովապետը արտասուօք ընդունեցաւ, անոր ամէն բան նորէն մեծ ցաւով պատմեց, եւ ցուցուց թէ ինքը ինչպէս հաւատարիմ մնացեր է. իր հպատակներուն գլխաւորներէն շատերը ցուցուց, որոնք

վիրաւորած էին, եւ ես ալ, ըսաւ, Սպանիացիները պաշտպանելու համար՝ Գաոնապոյին ձեռըքը վիրաւորեցայ։ Յայտնի կը տեսնուէր որ աս վէրքերէն եւ ոչ մէկը Եւրոպացւոց զէնքովն եղած էր, որով Կոլոմբոս հաստատութեամբ միտքը դրաւ որ Կուազանակարին անմեղ է։

Բայց Սպանիացիք նոյնպէս չէին մտածեր։ Ցեղապետին վէրքը դրսէն չէր երեւնար. որովհետեւ փայտէ զէնքի մը սաստիկ հարուածէ պատճառած էր, անոր համար ալ ցաւը կրնար տեւել, թէպէտ եւ նշանը չերեւար։ Այսպէս Սպանիացիք կարծեցին որ ասիկա խարդախութիւն մըն է, եւ շատերը կ'ուզէին որ Կոլոմբոս զանիկա իբրեւ մատնիչ պատժէ։ Բայց Կոլոմբոս ամենեւին յանձն չառաւ։ Ցեղապետին տուած ընծաներն ընդունեցաւ, որոնք էին ութը հարիւր հատ խեցի, որ նոյն կղզւոյն մէջ շատ յարգի էր, հարիւր ոսկիի հատ, ոսկւոյ աւազով լեցուն երեք աման, ու մէկ ձոյլ ոսկի պսակ մը։ Ծովապետն ալ աս ընծաներուն փոխարէն պզտիկ բոժոժներ, ապակի ուլունք, խել մը դանակ, ասեղ, գնդասեղ, պղնձէ զարդեր տուաւ, որոնք ցեղապետին շատ հաճելի եղան։ Պղինձն անոր աչքին ոսկիէն պատուական կ'երեւար։ Իրարմէ բաժնուելու ատեն՝ ծովապետին հետ մինչեւ նաւ գնաց։

Երբ որ նաւատորմիղը տեսաւ, ապշեցաւ մնաց. բայց երբ որ շղթայի զարնուած Գաւրայիպ-ներն ալ ցուցուցին, շատ զարհուրեցաւ ու աչքը դարձուց. չէր կրնար երեւակայել որ Սպանիացիք համարձակած ըլլան անոնց վրայ յարձակելու իրենց կղզւոյն մէջ: Աս մարդակերներուն վրայ ըրած յաղթութիւնին՝ Հայտիցիներուն կարծել տուաւ, որ ճերմակ մարդիկները իրենց զէնքերովը ու նաւերովը անյաղթելի են: Եւրոպայի տնկերն ու անասունները ցեղապետին շատ զարմանալի բաներ երեւցան: Ամենէն աւելի ձիերուն վրայ զարմացաւ. վասն զի իրենց երկրին անասունները շատ պզտիկ ըլլալով՝ Հնդիկները չէին կրնար երեւակայել որ այնպիսի անասուններ գտնուին, որոնք այնչափ ընտանի եւ միանգամայն այնչափ ալ զօրաւոր ըլլան:

Բայց Եւրոպացւոց աս զօրութիւնը տեսնելէն ետեւ՝ անոնց հոն մնալէն Հնդիկները շատ կը վախնային, որովհետեւ անոնց անյագութիւնն ու անկարգութիւնը փորձած էին: Կոլոմբոս իրենց աս մտածմունքը շուտով իմացաւ. կը նշմարէր որ ցեղապետն իր նաւուն մէջ ակամայ ու վախով մը կը կենայ: Երբ որ ծովապետն անոր երկրին մէջ հաստատուելու վրայ կը խօսէր, ըսաւ թէ երկիրը վատառողջ է: Դարձեալ ցուցուց որ

Եւրոպացիները յառաջուան պէս երկնաւոր մարդիկ չէր համարեր. որովհետեւ իրեն տրուած պատկերագիրը (մեթոտը) չուզեց առնել, երբ որ կրօնքի վերաբերեալ բան ըլլալն իմացաւ։ Կամ աւելորդապաշտութեամբ կը վախնար որ չըլլայ թէ իր աստուածները վշտացընէ, կամ կը վախնար որ կախարդական բան մ'ըլլայ։ Վերջապէս թէպէտ եւ Կոլոմբոս Կուագանահարիին շատ առատաձեռնութիւն կ'ընէր, թէպէտ եւ միշտ ինքը զինքը զուարթ կը ցուցընէր, ի վերայ այսր ամենայնի կը տեսնէր որ ցեղապետը յառաջուան մարդը չէ։

Կուագանահարի նաւուն մէջ քիչ ժամանակ կեցաւ, բայց Պորիգէնցի գերիներուն մէջ աղջիկ մը տեսաւ, որուն անունը Սպանիացիք Գադալինա դրած էին, եւ շատ վայելուչ էր։ Իրիկուան՝ ցեղապետին մէկ եղբայրը նաւ եկաւ՝ ոսկւոյ փոփոխութիւն ընելու պատրուակով, եւ Գադալինային հետ ալ գաղտուկ խօսեցաւ։ Բայց խօսածն ինչ ըլլալը քիչ մը վերջն իմացուեցաւ։ Գիշերը Գադալինա իր ընկերներն արթընցուց, եւ անոնց հետ կամացուկ մը նաւէն դուրս ելլելով՝ սկսան դէպ ի ծովեզերք լողալ։ Սպանիացիք իմանալով շուտ մը ետեւնէն ինկան, բայց միայն երեք հոգի կրցան բռնել. մէկալները Գադալինային հետ մէկտեղ ցամաք

Հասան եւ այծեամի պէս վազելով՝ աներեւութ եղան։

Երկրորդ օրը ծովապետը ցամաք մարդ խաւրեց. բայց բոլոր գեղն անապատ կը նմանէր։ Հնդիկները իրենց ամէն ստացուածներն ու կահ կարասիքն առած՝ կղզւոյն ներքին կողմերը փախած էին. Թէպէտ շատ փնտռեցին, բայց գացած տեղերնին գտնելն անկարելի եղաւ։ Սպանիացիները՝ որ արդէն Կուազանակարիին վրայ վստահութիւն չունէին, աս բաներս ալ տեսնելով՝ ան զանիկա ստուգիւ մատնչի տեղ դրին։ Բայց վերջէն յայտնի կը տեսնուի որ անոնց կասկածն անիրաւ էր։ Կուազանակարի ոչ մատնիչ էր, ոչ խաբեբայ. իր պատմածն ստոյգ էր, Սպանիացիները պաշտպանած էր ու միշտ անոնց սէր ունէր. բայց տկար էր։ Ճերմակ մարդիկներուն իր վրայ վստահութիւն չունենալը տեսնելով՝ կ'իմանար որ իր հաւատարմութեան վրայ կը կասկածին։ Անանկ պարագաներու մէջ ինք զինքն ու իր ցեղը վտանգէն ազատելու ամենէն յարմար միջոցը՝ ետ քաշուիլը սեպեց. մինչեւ նոյն ատեն տեսածներն ու կրածները իր վախը բաւական կ'արդարացընէին։

# Ի.

## Նոր աշխարհքին մէջ շինուած առաջին քաղաքը:

Սպանիացիք սա ամէն բաները տեսնելով, անկէ ետեւ սկսան տարբեր աչքով նայիլ ան երկրին՝ որն որ խնդրան իրենց այնպէս գեղեցիկ ու սքանչելի երեւցած էր, եւ որուն վրայ այնպէս երազներ կը տեսնէին։ Ինն օր էր որ Հայդի հասած էին, դեռ չէին կրցած առանց վախի ու պարզեւաց երկիրն ելլել. վասն զի տեսած էին աւերակներ եւ մեռելներու մնացորդներ, հազիւ տարի մը յառաջ շինուած ամրոցին կործանումը, տեղացիներուն իրարու հետ պատերազմիլը, եւ բարեկամ կարծած մարդիկներնուն նենգաւորութիւնը։ Ի վերայ այսր ամենայնի ծովապետը զիրենք խաբած չէր. վասն զի զիրենք այնպէս աղէկ ու բերրի երկիր մը բերած էր, որուն գեղեցկութիւնը երկրաւոր դրախտին կրնար հաւասարիլ, եւ ուր որ իրենք ալ այնչափ առատ ոսկի տեսած էին, եւ չնչին պղնձի ու ապակւոյ կտորներ տալով՝ առած էին։ Սակայն սրտերնին գոհ չէր. որովհետեւ ոսկի դարը ուրիշ տեղ չի կրնար ըլլալ, բայց միայն ան տեղը՝ ուր որ մարդուն կիրքերը չեն կրնար մտնել. իսկ Եւրոպացիք սա կիրքերը արտաքոյ կարգի ա-

գաՀութեամբ, Հպարտութեամբ եւ ամէն տեսակ կիրքերով եկած էին։

Ծովապետն ուզեց անոնց աժգոՀութեան առջեւն առնել։ Նաւատորմիղը ծովեզերքին բոլորտիքը տարաւ, եւ ընդարձակ նաւաՀանգստի մը մէջ կեցընելով՝ նաւաստիներուն առաջարկեց որ Հոն քաղաք մը շինեն։ Ասով ամէնքը քաջալերուեցան։ Ընտրուած տեղը շատ պատշաճ էր։ Բերդի մը պէս բարձրացած խիտ ժայռերը՝ ծովէն եզերքը կը պաՀպանէին։ Դաշտին մէկալ կողմը ընդարձակ անտառ մը կար։ Մէջէն երկու աղուոր գետեր անցնելով՝ անկերը դալար կը պաՀէին ու մարգերը կանանչով կը զարդարէին։ Միջոցը բաւական ընդարձակ էր, եւ Հնդիկներէն իմացած էին, որ աս գեղեցիկ դաշտը Սիպաոյի լեռներուն մօտ էր, ուր որ ոսկին կը գտնուէր։

Նաւէն ելլելու վայրկեանին՝ սաստիկ մեծ ուրախութիւն ունեցան. արտաքոյ կարգի եռանդով մը սկսան նաւերը պարպել. եւ ինքիրմէ շինուած յստակ ջրով աւազանի մը քով վրաններ կանգնել։ Ձիերը մարգերու վրայ թող տուին։ Ուրիշ անասուններն ալ՝ որոնք այնչափ երկայն ատեն նաւերու մէջ փակուած կեցած էին, ցամաք Հանեցին. մեքենաներ պատրաստեցին, եւ այսպիսի մեծ ցնծութեան մէջ Կոլոմբոս նոր աշխարՀքին

առջի քաղաքին յատակագիծը շինեց, որուն անունը՝ Եղիսաբէթ դրաւ։ Աս քաղաքին շէնքերուն մէջէն մինակ եկեղեցին, համբարանոցը եւ փոխարքային տունը քարէ էին, իսկ ուրիշ տները փայտէ։ Փետրուարի 6ին եկեղեցին լմնցաւ, ու Հայր Պոյլ մեծ հանդիսութեամբ պատարագ մատոյց, քովը տասուերկու քահանաներով՝ որոնց գլուխն ինքն էր։

Բայց արդէն ցամաք ելլելնէն քիչ մը ետքը մէջերնին հիւանդութիւն ինկած էր, որուն պատճառն էր օտար օդը. նոյն իսկ ծովապետն ալ աս հիւանդութենէ բռնուեցաւ։ Ուտելիքները կը պակսէին. քաղաք շինելու եռանդնին կամաց կամաց կը մարէր. ամէնքը կը սկսէին վհատիլ։ Ծովապետն որոշեց որ Սպանիա մարդ խաւրէ ու օգնութիւն խնդրէ։ Ուզած բաներն էին գլխաւորաբար գինի, դեղ, զէնք ու զգեստ. դարձեալ խնդրեց ձի, որուն միայն տեսքը Հնդիկները կը զարհուրեցընէր, հանք բանող ու ձուլող գործավարներ։

Աս նաւատորմիղը՝ որն որ Փետրուարի 2ին ճամբայ ելաւ, Գարայիպցի գերիներն ալ Սպանիա կը տանէր։ Հոս զարմանցմամբ ու ցաւով կը տեսնենք որ Կոլոմբոս՝ բարի վախճաններով՝ այնպիսի գործքի մը սկիզբ կ՚ընէ, որն որ մարդկային բնութեան դէմ ու անտեղի

բան մըն է։ Ինչ տէրութեան կ'առաջարկէր որ Գուարայիպները գերիի պէս ծախուին։ Ասով, կ'ըսէր, անոնք կը ստիպուին քրիստոնէայ ըլլալ, գրեթէ իրենց չուզելովն ալ կը կրթուին. կղզիներուն խեղճ բնակիչներն անոնց ձեռքէն կ'ազատին, մարդու միս ուտելու բարբարոսական սովորութիւնք կամաց կամաց կը կորսուի, եւ տէրութիւնն ալ ստակ կը վաստըկի։ Աս բարի վախճանները՝ առաջարկած գործքին գէշութիւնը ծովապետին չէր երեւցըներ։ Ստոյգ է ինչ չիկրնար բոլորովին արդարանալ. բայց պէտք չէ որ զինքն ան խստութեամբ դատենք, որով հիմակուան ատենս այսպիսի գործք մ'ընդոր կը դատուի. որովհետեւ նոյն ատենուան գաղափարները հիմակուաններէն շատ տարբեր էին։

## Բ.

### *Չար խորհուրդ: — Ճամբորդութիւն: — Նոր ամրոց:*

Թէպէտ եւ Սպանիա խաւրուած նաւերը Նոր աշխարհքին բարութիւններուն՝ միայն օրինակը կը բերէին, եւ օգնութիւն կը խընդրէին, ի վերայ այսր ամենայնի Կոլոմբոսին, Հայր Պօյլին եւ ուրիշներուն նամակները այնչափ ազդեցութիւն ըրին, որ Պետրոս Մարտիրոս բարձր ձայնով ըսաւ. Կոլոմբոս

վերջին նամակին մէջ ինծի կը գրէ որ նոր քաղաք մը սկսեր է շինել, մեր երկրին սերմերը սերմանել եւ մեր անասունները շատցնել։ Հիմա մէջերնէս ով զարմանալով պիտի խօսի Սատուռնոսի, Դեմետրի ու Տրիպտոլեմի վրայ՝ որոնք աշխարհք պտըտելով՝ քաղաքականութիւն ու կրթութիւն տարածեցին, կամ Փիւնիկեցւոց վրայ՝ որոնք Տիւրոս ու Սիդոն քաղաքները շինեցին, կամ նոյն իսկ Տիւրացւոց վրայ՝ որոնք հեռու տեղեր երթալով՝ նոր նոր քաղաքներ շինեցին ու գաղթականութիւններ հաստատեցին։

Բայց Սպանիայի մէջ Կոլոմբոսին եւ իր գործքերուն վրայ այսպէս զարմացուած ատեն՝ գաղթականաց մէջ տժգոհութիւնն օրէ օր կ'աւելնար։ Անգէտ ու հպարտ գործավար մը՝ որուն գործքը մետաղները գտնել էր, Կոլոմբոսին դէմ խօսելու սկսաւ, եւ յամառութեամբ կը պնդէր թէ Հայգիի մէջ ամենեւին ոսկի չիգտնուիր, եւ ան տեսնուած ոսկւոյ աւազը, կտորներն ու պսակները ուրիշ տեղէն հոն բերուած ու ցեղէ ցեղ անցնելով՝ պահուած են, եւ թէ նոյն ոսկին գէշ տեսակ ու պղնձի հետ խառնուած է։ Աս մարդուն խօսքերը բանի տեղ անցան։ Պէռնալ Տիազ անունով Բիղացի մը անոր խօսքին հաւանեցաւ, եւ առաջարկեց որ գաղտուկ նաւ մտնեն եւ Կոլոմբոսն ան օտար եր-

կիրը թող տալով՝ Սպանիա դառնան։ Բարեբախտութեամբ Կոլոմբոս աս չար խորհուրդն իմացաւ, Ցիազին ձեռքովը գրուած յիշատակարան մը ձեռք ձգելով։ Կոլոմբոս աս իր կենաց առաջին վտանգին մէջ շատ չափաւորութեամբ վարուեցաւ։ Բայց յանցաւորն առանց պատժի չկրնալով թողուլ, նաւի մը մէջ դրաւ ու դուրս ելլելն արգելեց, եւ ուրիշ նաւերուն թնդանօթները հանելով իր նաւը բերաւ։ Ասով գաղթականները՝ որոնք արդէն դէշ տրամադրութեան մէջ էին, անոր դէմ շատ բարկացան, եւ սկսան զինքը բռնաւորի տեղ դնել։

Ծովապետը՝ մէկ կողմանէ աս անհանգիստ ոգիները զբաղեցընելու, եւ միանգամայն կղզւոյն ամէն կողմերը ճանչնալու համար՝ որոշեց որ դէպ ի Սիպայի լեռները յառաջ երթան։ Իր մարդիկներուն մէջէն ամենէն ընտիրները ժողվեց ու զանոնք աղէկ կարգի մը դնելով՝ գաղթականութեան ամէն ձիաւորներովը մէկտեղ ճամբայ ելաւ։ Արդէն քաջ Օյետան մինակ՝ Սիպայի մէկ մասը քննած էր։ Ճամբորդութիւնը շատ զուարճութեամբ ըրին. գեղեցիկ դաշտի մը մէջէն անցան, որուն ծայրը՝ փշերով ու քարերով լեցուն մանուածոյ անցք մը եկաւ, որն որ դահաւանդներու քովէն նոյն լեռը կը տանէր։ Աս անցքին բերանը հասած ատեննին իրի-

կուն ըլլալով՝ քանի մը վրաններ կանգնեցին ու գիշերն հոն անցուցին։

Երկրորդ օրը շատ դժուարութիւն քաշեցին՝ ձիերով, զէնքերով ու բեռներով նոյն անցքէն անցնելու. բայց աս արշաւանքը Սպանիացիները շատ ուրախացուցած ըլլալով՝ երիտասարդ ձիաւորներն ըսին թէ Մենք շատ անգամ Կրանատայի Մաւրիտանացւոց երկրին մէջ սուրը ձեռքերնիս ճամբայ բացած ենք. եւ այսպէս յանձն առին որ իրենք առջեւէն երթալով՝ զօրքին համար ընդարձակ ճամբայ մը բանան։ Ուրախ զուարթ սկսան աշխատիլ, եւ ճամբայ շիտկողներն ու գործավարները յորդորելով, ծառերուն ճիւղերը կտրելով, փուշերն ու թփերը կոխկրտելով, իրենց ձիերը քաջալերելով ու գլթողները վերցընելով, իրիկուն չեղած՝ յաղթանակաւ ետ դարձան եւ Արեւմտեան Հնդկաստանի առաջին ճամբան շինելնուն աւետիքը տուին, որն որ իրենց պատուոյն համար՝ Ազնուականաց կիրճ անուանուեցաւ։

Երբ որ հետեւեալ օրը նոր բացուած ճամբէն անցնելով՝ լերանց ստորոտը հասան ու վեր ելան, նոյնտեղաց տեսքը Կոլոմբոսին ամէն ընկերները զարմանքով լեցուց։ Մէկէն աչքերնուն երեւցաւ սքանչելի դաշտ մը, որուն համար Լաս Գասաս կ'ըսէ թէ 80 փարսախ երկայնութիւն ու 30 փարսախ լայնու-

թիւն ունի, հազարաւոր վտակներէ եւ մէկ մեծ գետէ մը ոռոգուած. աշխարհքիս ամենէն գեղեցիկ ծառերէն կազմուած անտառներ, լայն արմաւենիներ, մեր ամենէն բարձր կաղնիներէն աւելի բարձր ծառեր, դոյզնագիւտ տնկեր, գոյնզգոյն անուշահոտ ծաղիկներ, բնական աղբիւրներ՝ որոնց վճիտ ջրերը խիճերու վրայէն մեղմ դնդշմամբ մը կը սահէին կ'երթային: Աս ընդարձակ դաշտին վրայ առդին անդին խրճիթներ ու գեղեր կը տեսնուէին, որոնք աս գեղեցիկ ու սքանչելի տեղերուն՝ աւելի զարդ ու գեղեցկութիւն մը կու տային: Անտառներուն մէջէն ելած ծուխը կը ցուցընէր թէ իրենց ընդարձակ միջոցն ալ առանց բնակչի չէ: Աս դաշտին անունը Վեկաւեալ (ալքունի դաշտ) դրին:

Երբ որ Սպանիացիք վար իջան, տեղացւոց մեծ մասը փախաւ, ոմանք ալ իրենց խրճիթներուն մէջ պահուըտեցան ու մուտքերնին եղեգով գոցեցին: Ծովապետը հրամայեց որ աս տկար ամրութիւններուն չդպչին. եւ սէր ցուցընելով, ընծաներ տալով՝ անոնց հետ բարեկամացաւ: Ան ատեն զինքը իբրեւ երեւելի հիւր մ'ընդունեցան ու գեղէ գեղ տարին: Այնպէս պարզ բարք մ'ունէին, որ իրարու խրճիթը համարձակ կը մտնէին, իրենց տան պէս՝ կերակուր կ'ուտէին, եւ մէջերնէն մէկն ալ բան մը չէր ըսեր:

Երկու օրուան մէջ Կոլոմբոս Սիպաոյի լեռներն անցաւ: Նոյն տեղաց երկիրը քարուտ ու չոր էր, եւ շատ քիչ ալ բոյս ունէր: Գաոնապոյ չերեւցաւ, բայց իր երկրին բնակիչները Սպանիացւոց այցելութեան վրայ շատ ուրախացան, եւ ամէնքը կը փութային իրենց ոսկին անոնց տալով՝ բերած խաղալիկներն առնել: Կոլոմբոս համոզուեցաւ որ նոյն լերանց մէջ ոսկւոյ հանք կայ, որովհետեւ ամէն տեղ հեղեղներուն ջրին հետ խառնուած՝ ոսկւոյ կտորուանք կը գտնէր. Նաեւ մէկ յատակ գետակին տակը մարմարիոնի ու յասպիսի կտորներ տեսաւ:

Աս տեղս պզտիկ ամրոց մը սկսաւ շինել տալ, զորն որ Սուրբ Թովմայի ամրոց անուանեց՝ Սպանիացւոց անհաւատութեան համար, որոնք չտեսած՝ չէին հաւատար որ նոյն լերանց մէջ ոսկի գտնուի: Հնդիկները շատ ոսկւոյ աւազ կը բերէին. ծեր մարդ մը իրեն մէկ ունկի ծանրութեամբ ոսկւոյ կտոր մը տուաւ, եւ ըսաւ թէ իմ երկիրս որ ասկէց քիչ մը հեռու է, նարընջի մեծութեամբ ոսկւոյ կտորներ կը գտնուին: Կոլոմբոս՝ այն կողմերը միայն տասնուհինգ օր կեցաւ: Բայց նոյն միջոցին մէջ ամէն տեղ շատ սէր ու ընդունելութիւն գտաւ: Հնդիկներն իրեն պտուղ, թռչուն ու ձուկ կը բերէին, եւ առատ կոչունքներ կ'ընէին: Առջեւը իրենց

երգերը կ'երգէին ու կը պարէին. Նոյն ատեն իմացաւ որ անոնց պարելը զատ տեսակ էր։ Մարմնոյ զանազան շարժուածքներով եւ ոտուըններուն դիրքովն իրենց դիւցազանց պատմութիւնը կրնային ներկայացընել։ Դարձեալ իրենց նախահարց երեւելի գործքերը դարէ դար պահելու համար՝ առանձին երգեր ունէին. աս երգերուն մէջ այնպիսիներ ալ կային, զորոնք իրենց ցեղապետներուն որդիքը միայն կրնային երգել, եւ հասարակ ժողովուրդը բարեպաշտական լռութեամբ մը մտիկ կ'ընէր։

## ԺԸ.

*Կոլոմբոս Եղիսաբէթ քաղաքը կը դառնայ:*

Մարտին վերջը ծովապետն իր ճամբորդութեան վրայ մեծապէս գոհ եղած՝ Ս. Թովմաս ամրոցին մէջ Պետրոս տէ լա Մարգարիտային հրամանին տակ քառասուն-ութը հոգի թող տալով՝ իր տեղը դարձաւ։ Հոն ուրախանալու բաներ գտաւ։ Յունուարի վերջը ցանուած ցորեանը հասած եւ հնձելու մօտ էր. սեխն ու վարունգը մէկ ամսուան մէջ հասունցած էր. իսկ բանջարեղէնները տասն-ուվեց օրուան մէջ կը հասնէին։ Այսպէս ամէն բան կը յաջողէր. երկրին աղէկութիւնը մեծ առատութիւն կը խոստանար։ Բայց Սպանիացիք արդէն սկսած էին իրենց հայ-

րենիքէն հեռացած ըլլալնուն վրայ տրտըն-
ջել. Սպանիա ունեցած ամէն հանգստու-
թիւններն հոս ալ չունենալնուն վրայ կը
տժգոհային: Յորեանը հասած էր, բայց ա-
ղալու ջաղացք չկար, եւ ազնուականները
չէին ուզեր ջաղացք շինողներուն օգնել. կը
կարծէին որ այսպիսի աշխատութիւն իրենց
ազնուականութեան նախատինք է: Կամաց
կամաց տաքութիւնն ալ այնպիսի աստիճանի
մը հասնելով՝ որուն Եւրոպացիք չէին վար-
ժած, ծանր հիւանդութիւններ բերաւ, ո-
րոնց մէկ քանին Սպանիացւոց անծանօթ
էին: Երիտասարդներէն շատերը՝ որոնք բոլոր
իրենց խեղճութեան պատճառը զԿոլոմբոս կը
համարէին, անոր անունը սաստիկ անիծե-
լով մեռան: Աւելորդապաշտութիւններն՝ ու
թշուառութիւնները աւելի կը մեծցընէր.
ամէնքը մտքերնին դրին որ Եղիսաբէթ քաղ-
քին երկիրն անիծուած ու թշուառ երկիր
մըն է: Ստոյգ է որ օդն առողջ չէր, եւ ետքը
հարկ եղաւ որ թողուն երթան: Ծովապե-
տը չէ թէ միայն ընդհանուր վհատութեան
դէմ պէտք էր որ մրցէր, հապա նաեւ ներ-
քուստ ալ շատ մեծ ցաւ կը կրէր, որովհե-
տեւ իր յորդորանքովը Նոր Աշխարհք եկող
այնչափ երիտասարդներուն մահը՝ իր սիրտը
սաստիկ ցաւերու մէջ ընկղմած էր:

Այս պարագաներուն մէջ Կոլոմբոս աղէկ սեպեց որ Սպանիացիներն զբաղեցընէ: Դէպ ի Միպառյ ըրած արշաւանքներնուն մէջ անոնց ցուցուցած ուրախութեան ու գործունէութեան նայելով՝ ուզեց նոր արշաւանքներ ընել: Ուստի եւ որոշեց որ նաւաստիներուն մեծ մասովն ուրիշ կղզիներ փնտռելու երթայ: Եղիսաբէթ քաղաքին մէջ միայն հիւանդներն ու ամրոցին պահպանութեան համար քանի մը մարդ թողուց: Իսկ զինուորները՝ քաջ ու հաւատարիմ Օյետային հրամանին տակ կղզւոյն ներսի կողմերը խաւրեց, որ բոլոր նոյն կողմերուն ցեղապետաց երկիրները քննէ:

Ճամբայ ելլելէն յառաջ Մարգարիտային թուղթ մը գրելով՝ իր հեռաւորութեան ատեն հարկաւոր եղած իշխանութիւնն անոր տալէն զատ՝ նաեւ իմաստուն խրատներ ալ կու տար, յիշեցընելով որ Եղիսաբէթ թագուհին աւելի կ'ուզէ վայրենիները քրիստոնէութեան դարձընել ու կրթել, քան թէ անոնց երկրին հարստութիւնները ստանալ: Անոր համար կ'ապսպրէր որ հետերնին քաղցրութեամբ ու սիրով վարուին: Բայց միանգամայն կը յանձնէր որ եթէ կարելի է նէ՝ Գաոնապոյ ցեղապետը ձեռք ձգէ: — Ամրոցին մէջի Սպանիացիք շատ գէշ կը վարուէին. Հնդիկները սա օտարականաց անկարգու-

թեանց վրայ իրաւամբ բարկանալով, սկսած էին նենգութեամբ անոնցմէ վրէժ առնել։ Մօտաւոր ցեղապետներէն մէկու մը հպատակները՝ երեք Սպանիացի կողոպտեցին։ Օյետան նոյն տեղէն անցնելու ատեն՝ յանցաւորները գտաւ. անոնցմէ մէկուն ականջները կտրել տուաւ, իսկ մնացածները՝ անոնց ցեղապետովն ու ցեղապետին որդւովը Կոլոմբոսին խաւրեց։ Ծովապետն ուզելով Հնդիկները վախցընել, վճռեց որ յանցաւորներուն գլուխը կտրուի, եւ Հնդկաց ու Սպանիացւոց առջեւը զանոնք Եղիսաբէթի հրապարակը բերել տուաւ։ Բայց ուրիշ ցեղապետ մը՝ որ անոնց հետ մէկտեղ եկած էր, Կոլոմբոսին ոտքն ինկաւ, աղաչեց որ թողութիւն տայ։ Ծովապետն աս ազդեցութիւնը բաւական տեսնելով՝ շնորհք ըրաւ։ Ասկէ ետքը ճամբայ ելաւ, յուսալով որ հոն մնացողները իր պատուէրներն ու խրատները պահելով՝ հանդարտութեամբ ու խաղաղութեամբ կը մնան։

## Ժ.

### Կոլոմբոս շատ նեղութեամբ Անտիլեան կղզեաց քովերէն կը նաւարկէ։

Կոլոմբոս միտքը դրած էր որ ան սքանչելի Անտիլեան կղզիները՝ Ասիայի մէկ մասն են, եւ կը կարծէր որ վերջապէս Գաթայի թագաւորութեան պիտի հասնի։ Շատ

վտանգով ու դժուարութեամբ նոյն անծանօթ ծովերուն վրայ կը նաւէր, եւ միշտ կը վախնար որ չըլլայ թէ իրեն բաղձացած երկիրը չտեսած՝ անցնի երթայ: Բայց իր սաստիկ երեւակայութիւնը զինքը կը զօրացընէր: Փոքր նշան մը տեսնելուն պէս՝ կը կարծէր որ Ասիայի Հարուստ երկիրներուն Հասաւ: Սակայն բոլոր տեսած երկիրները՝ մերկ մարդիկներով լեցուն կղզիներ էին, որոնցմէ ոմանք խաղաղաւէր, ոմանք կատաղի, ոմանք քիչ մը խելք ունեցող, ոմանք բոլորովին ապուշ էին: Բոլոր նոյն երկիրները պտղատու եւ առատաբեր էին, սքանչելի տեսք ունէին, եւ տնկերով ու բոյսերով զարդարուած էին: Բայց իր փնտռածն աս չէր, եւ իր սխալ գաղափարը թող չէր տար կիրճին ներքին կողմերն երթալու: Նախ եւ առաջ քան օրուան մէջ բոլոր Գուպա կղզւոյն չորս կողմը դարձաւ. եւ երբոր ցամաք ելաւ՝ Հոնտեղաց բնակիչները զինքը մեծ Հիւրընկալութեամբ ընդունեցան, եւ իրենց երկրին ամենէն ազնիւ կերակուրները բերին: Նաւերուն անցած ատենը՝ կղզւոյն չորս կողմանէ բնակիչները գունդ գունդ կը վազէին տեսնելու Համար, եւ երբ որ Սպանիացիք դուրս կ'ելլէին, տեղացիք ապշած ու զարմացած կը մնային, փանզի միշտ անանկ կը կարծէին որ երկինքէն իջած են:

Ծովապետն աս կղզիէն հեռանալէն քիչ մը վերջը՝ գեղեցիկ Ճամայիգա կղզին գտաւ: Անկից ելաւ եւ շատ աշխատութեամբ ու չարչարանքով խիտ խիտ կղզիներուն մէ-ջէն նաւեց, որոնց անունը Պարտէզ Թա-գուհւոյն դրաւ: Նաւերը հազիւ թէ կրնային աս կղզիներու մէջէն անցնիլ, Ամերիկայի ե-զերքը գտնուող մեծ ժայռերն ու աւազակոյ-տը նաւերուն ընթացքը կ'արգելուին, եւ ա-մէն րոպէ ահու դողու մէջ էին որ նաւերը չխորտակին: Աս ամէն նեղութեանց վրայ՝ օդն ալ ուրիշ նեղութիւն մը կ'աւելցընէր. հովը առտուանց արեւելքէն կը փչէր, իրի-կուան՝ արեւմուտքէն. մէյ մ'ալ ինչ կը նայիս՝ սեւ սեւ ամպեր կու գային երկինքը կը ծածկէին, մէկ կողմանէ կ'որոտար, մէկալ կողմանէ կը փայլատակէր, վերջապէս սաստիկ կը վախցունէր որ մեծ փոթորիկ մը պիտ'որ ըլլէ. բայց քաղցր արշալոյսը ամպերը կը փարատէր: Աս մթնոլորտին փոփոխութիւնը՝ շաբաթներով տեւեց:

Կոլոմբոս միտքը դրած էր որ աս ար-քիպեղագոսն Ասիային չորս կողմը կը պատէ, եւ Գուպա կղզին՝ Ասիայի ցամաք երկրին ծայրն է: Պարտէզ Թագուհւոյն բռնուած կղզիներէն շնչող քաղցր զեփիւռը՝ Մարկոս Պօղոսին Արեւելքի անուշահոտ խնկերուն վրայ պատմածները Կոլոմբոսին կը յիշեցընէր.

Հոնտեղաց առատ դալարիքը եւ թռչուններուն ու միջատներուն փայլուն գոյները իր միտքը դրած սխալ կարծիքն աւելի եւս կը հաստատէին։ Կոլոմբոս Գուպա կղզւոյն քովերէն նորէն պտըտելու մտքով ան գեղեցիկ կողմերը թող տուաւ, եւ կղզւոյն մօտիկնալով՝ հարցուց որ արդեօք հաստատուն կամ ցամաք երկի՞ր է՝ թէ չէ։ Երբ որ Հոնտեղաց բնակիչներն ըսին որ կղզի մըն է, բայց դեռ մէջերնէն եւ ոչ մէկը ծայրը տեսած է, Կոլոմբոս աւելի եւս հաստատուեցաւ որ հաստատուն երկիր է եւ կղզեցիք մտքերնին աղէկ չկրցան հասկըցընել։ Տեղացիք իրեն ըսին որ աս կղզւոյն արեւմտեան կողմը Մանկոն անուամբ երկիր մը կայ. Կոլոմբոս ասիկայ լսելուն պէս՝ կարծեց որ Մանճի ըսուած երկիրն է, եւ սաստիկ ուրախութեամբ ու մեծ քաջալերութեամբ ծովի ժայռերուն մէջէն դէպ ի արեւմուտք սկսաւ երթալ։

Օր մը նաւաստիներէն մէկը, որն որ ցամաք խրկուած էր, սաստիկ վախցած ու խռովուած ետ դարձաւ եւ ըսաւ որ Հիմա ահագին մարդիկներու բազմութիւն մը տեսայ, որոնք կրօնաւորներու պէս ճեփ ճերմակ զգեստ հագած էին։ Կոլոմբոս անմիջապէս մտածեց որ Մանճի ըսուած երկիրը հասած են, վասն զի Մարկոս Պօղոսին պատմածներուն մէջը կարդացած էր որ ան երկրին արեւելեան

կողմերը վայրենի մարդիկներ կան՝ որոնք ամենեւին զգեստ չեն հագնիր, եւ իրենց դրացիները ծաղր կ'ընեն, որոնք, կ'ըսեն, մարմիններնուն վրայ պակասութիւն մ'ունին. եւ աս պակասութիւնը ծածկելու համար՝ երկայն զգեստ կը հագնին: Միանգամայն կարծեց որ Գուպային մէկ կողմէն վերջին անգամ ելած ժամանակը Հնդիկներուն ըսած խօսքն ալ ասիկայ կ'ակնարկէր, ինչու որ ասոնք ըսած էին թէ արեւմտեան կողմերը պոչաւոր մարդիկներ կան, որոնք պոչերնին ծածկելու համար զգեստ կը հագնին: Աս Հնդիկներուն ըսածն ու Մարկոս Պօղոսին պատմածն իրարու հետ համեմատելով՝ կարծեց որ Մանճի գաւառն հասած է. սակայն ստուգելու համար խրկած մարդիկներն ուրիշ բան չտեսան՝ բայց եթէ անգործ ու ամայի երկիրներ: Անտարակոյս նաւավարին ճերմակ կրօնաւորներ տեսայ ըսածը՝ ան տեսակ թռչուններ պիտ'որ ըլլան, որոնք նոյն կողմերը գունդագունդ երամ երամ կը թըռչին, մէկ գլխաւոր մը ունին՝ որն որ ամենէն առաջ կ'երթայ, եւ հեռուանց շատ դիւրաւ կրնայ կարծուիլ որ ճերմակ հագած մարդիկներու բազմութիւն մըն են:

Գուպայի հարաւային կողմը կարգաւ ժայռեր կային, եւ ծովն ալ առանձին կերպարանք մ'ունէր, երբեմն կաթի պէս ճեր-

մակ կ՚երեւար, երբեմն սեւ, երբեմն կանաչ, մէկ կողմը կրաներով ծածկուած, մէկալ կողմը գրեթէ մինչեւ ջրին երեսը աւազակոյտով լեցուն, այնպէս որ մէկ քանի անգամ նաւերը վնասելու վտանգի մէջ ինկան, եւ հարկ եղաւ նաւին գլխի կողմանէ քաշելով՝ ան վտանգաւոր աւազակոյտներէն ազատել: Ասոնց նման ուրիշ երեւոյթներ ալ կամաց կամաց կ՚ապշեցընէին ու կը սասանեցընէին Սպանիացիները, որոնք ան երկայն ու աշխատալի նաւարկութենէն ձանձրացած էին, վասն զի անշէն ու անբնակ կղզիներու խմբերէն ուրիշ բան մը չէին գտներ, եւ առանց օգտի մը Գուպա կղզւոյն անծանօթ եզերքը կ՚երթային կու գային, որն որ իրենք Հաստատուն երկիր կը կարծէին: Օր մը գունդագունդ աղաւնիներու բազմութեամբ օդը խաւարեցաւ, ուրիշ օր մը գունդ գունդ Հողամաղներով (ֆորթողանախներով): Անգամ մը արեւն ելլելու ատեն՝ փայլուն ու շողշողուն թիթեռներու անթիւ անհամար բազմութիւն մը երեւցաւ, եւ իրիկուան դէմ անձրեւ գալով՝ ցրուեցան ու աներեւոյթ եղան: Վերջապէս բոլոր նաւավարները աշխատութենէն տկարցած ու նիհարցած՝ անդադար կը խնդրէին ետ դառնալ, եւ ծովապետը միտքը դրած ըլլալով որ Գուպան Ասիայի վերջին ծայրն է, զինջաւ աւելի յառաջ

չերթալու. բայց վախնալով որ չըլլայ թէ նախանձոտ եւ տհաճ նաւաստիները՝ որոնք իր գիւտերը բանի տեղ չէին դներ, սուտ զրուցեն, մէկ թուղթ մը շինեց՝ որուն ամէնն ալ ստորագրեցին, որ անտարակոյս հասած երկիրնին ասիական հաստատուն երկիրն էր։ Թէ որ երկու օր մ'ալ յառաջ երթային՝ կղզւոյն ծայրը կը դառնային։ Կոլոմբոս անկից Իսբանիոլա դառնալու ատեն՝ կ'ուզէր Ճամայիքա երթալ եւ աղէկ մը նոյն տեղը քննել, վասն զի առջի անգամ հազիւ թէ միայն տեսած էր. բայց Պարտէզ Թագուհւոյն ըսուած կղզիներուն մէջէն նաւելու վտանգները ու դժուարութիւնները՝ զինքը ստիպեցին որ Նորէն Գուպա դառնայ։

Հոնտեղաց ցեղապետներէն մէկը այնչափ ուրախութեամբ զինքն ընդունեցաւ, որ Կոլոմբոս ան ժողովրդեան հիւրընկալութեան վրայ զարմանալէն չէր կրնար դադրիլ։ Իր օրագրութեան մէջ կը պատմէ որ գիշեր մը օդը շատ պարզ ու գեղեցիկ եղած ատեն՝ կղզւոյն մէկ կողմը հասաւ, ուսկից որ քիչ մը առաջ անցած էր. մէյ մ'ալ բոլոր կղզեցիք ամէն կողմէն վազող վազողի երգելով ու կայթելով եկան ու երկինքէն եկած հիւրերը բարեւելու։ Կոլոմբոս կ'ըսէ որ ան տեղաց գեղեցիկ ծաղիկներուն անուշ հոտը, եւ ծառակուրներուն բազմութիւնը՝ որոնք

Սպանիացւոց նաւերուն չորս կողմը կը վըխ-տային, եւ վայրենիներուն ծափահարութիւններն եւ ուրախական երգերը անանկ հաճելի եղան իրենց, որ բոլոր գիշերը մէկ ժամու պէս շուտով անցաւ։

Կոլոմբոս աս երկրին մէջ հանդիսական պատարագ մը մատուցանել տուաւ. եւ հոնտեղաց բնակիչները խորին մեծարանօք աս աստուածային պաշտօնին ներկայ գտնուեցան։ Պատարագը լմըննալէն ետեւ՝ յարգելի ծեր մը, որն որ ցեղապետին բարեկամն էր, Կոլոմբոսին մօտիկնալով ըսաւ. “Հիմա ըրած գործքդ՝ շատ աղէկ է, վասն զի կ'երեւայ որ քու Աստուծոյդ շնորհակալ ըլլալուդ կերպն ասիկա է։ Բայց ինծի ըսին որ դուն շատ երկիրներ նուաճեր ու չորս կողմը սաստիկ վախցուցեր ես։ Գիտցած ըլլաս որ մարդիկներուն հոգիները մարմնէն բաժնուելէն ետքը՝ երկու ճամբորդութիւն կ'ընեն, ոմանք գարշելի ու խաւարչտին տեղ մը կ'երթան, որն որ իրենց նմաններուն անգթութիւն ընողներուն պատրաստուած է. ոմանք ալ ուրախութեան ու զբօսանաց տեղ մը, ուր որ անոնք միայն կ'երթան, որոնք աս աշխարհքիս մէջ խաղաղութիւն պահած են։ Արդ թէ որ դուն ալ մահկանացու ես ու պիտի մեռնիս նէ, փոյթ տար որ չըլլայ թէ կամովին մէկը վշտացընես, . եւ ամենուն

չարիք մ'ընէր անոնց՝ որոնք քեզի չարիք մը չեն ըրած,,։

Ծովապետն աս խօսքին իմաստն իր թարգմաններուն ձեռքովն իմանալէն ետեւ՝ ծերոյն սրտաշարժ խօսքերէն ունեցած ուրախութիւնն յայտնեց ըսելով. "Քու ինծի խօսած խօսքերէդ աւելի հաճելի խօսք չէի կրնար լսել. վասն զի անոնցմով իմացայ որ քու ժողովուրդդ Աստուծմէ կը վախնայ, եւ գիտէ որ ամէն մարդ անմահ հոգի մ'ունի, որն որ իրեն յանցանացն ու բարութեան համեմատ՝ յաւիտենական պատիժ կամ վարձք պիտ'որ ընդունի։ Գիտնաս որ ես շատ երկիւղած ու կրօնասէր տիրոջ մը կը հնազանդիմ, որն որ քու ըսածիդ պէս՝ կը հաւատայ թէ հոգին անմահ է. եւ զիս խրկեց չէ թէ միայն ձեզի, հապա նաեւ բոլոր ուրիշ մարդիկներուն ալ, որ ձեր չգիտցած ճշմարտութիւնները ձեզի սորվեցընեմ, եւ ձեզի ճանչցընեմ ճշմարիտ Աստուածը՝ որն որ բուն ճշմարտութիւնը մարդիկներուն յայտնեց, եւ պատուիրեց որ բոլոր աշխարհքիս սորվեցընեն։ Ասդէն մինչեւ հիմայ շատ մարդիկ աս ճշմարտութիւնն ընդունած են, հիմայ ձեր կարգն ալ եկաւ որ աս ճշմարտութիւնը ճանչնաք։ Ամենեւին մի վախնաք։ Ճերմակ մարդիկները ձեր բարւոյն համար ձեզի կու գան. երբեք ձեզի չարիք մը չեն

Հացըներ, հապա կ'ուզեն որ ձեզի զԱստու-
ած սիրել տան, եւ զձեզ ձեր թշնամեացը՝
Գարայիպներուն դէմ պաշտպանեն,,*: Ծերը
զարմացմամբ մը ծովապետին խօսքը մտիկ
ըրաւ, որն որ թարգմանն իրեն մեկնեց: Բաղ-
մութիւնը չորս կողմերնին առաւ, զզարմա-
ցումնին երթալով կ'աւելնար, երբոր թարգ-
մանութիւն ընող Հնդիկը, որն որ առջի ան-
գամ Կոլոմբոսին հետ Սպանիա գացող ու
հոն մկրտուող Հնդիկներէն մէկն էր, մէջերնին
կեցած՝ ճերմակ մարդիկներու երկիրը տեսած
բաները իրենց կը ստորագրէր. փառաւոր ե-

* Առիկայ առջի անգամ չէ որ Կոլոմբոս կղզեցւոց
հաւատքի վրայ խօսիլը կը լսեր: Հայտիի բնակիչ-
ները կ'ըսէին որ հոգին մեռնելէն ետքը՝ օձերով
լեցուն տեղէ մը կ'անցնի, ուր որ չարագործները
կ'երթան. իսկ աս տեղէն անդին գալարագեղ ու
ծաղկալից կղզիներ կան, ուր որ բարիները կ'եր-
թան ու իրենց տրուած երկրորդ կեանքերնին շատ
քաղցրութեամբ եւ ուրախութեամբ կ'անցընեն:
Ասոնք կը հաւատային որ մէկ Աստուած կամ Մեծ
հոգի մը կայ, որն որ ամէն բան ստեղծած է, ու
իրմէ վարի աստիճանի եղող հոգիներուն հրաման
տուած է որ ամէն բան առանձին առանձին կա-
ռավարեն: Կը հաւատային որ Հոգիները՝ որոնք ի-
րենք Զեմի կը կոչեն, գալու բաները ճանչցընել
կու տան: Ամէն մարդ իրեն Զեմին ունի, կ'ըսէին,
եւ երբոր մէկը բան մը հարցընել կ'ուզէր, ծոմ
կը պահէր ու պատասխանին կը սպասէր: Կ'ըսէին
որ ցեղապետները առանձին եղանակաւ մը աս հո-
գիներէն կրթուած են: Ասոնք ամենեւին կուռք
չունէին. եւ չիկարծուիր որ զոհ մատուցանէին:
Իրենց բոլոր պաշտամունքը՝ քանի մը աւելորդա-
պաշտական գործքերու վրայ կայացած էր:

կեղեցիները, քաղաքներն ու պալատները, մեծաշուք ապետները, ձիարշաւութիւնները, նիզակախաղութիւններն ու ցլամարտութիւնները։ Յարգելի ծերն ասոնք լսելով՝ անանկ արտաքոյ կարգի փոխուեցաւ ու կենդանութիւն մը ստացաւ, որ սկսաւ պոռալ թէ կ'ուզեմ ձեզի հետ մէկտեղ երթալ, չմեռած՝ ան սքանչելիքները տեսնել. եւ կը հարցընէր որ արդեօք ատ երթալու տեղը երկինք չէ՞։ Երիտասարդութեանն ատեն ինքն ալ շատ ճամբորդութիւն ըրած էր, Ճամայիկա, Հայդի եւ ուրիշ հեռու տեղեր կը ճանչնար։ Բայց աս սրտին բորբոքը՝ իր որդւոցը, կնոջն ու իր բարեկամ ցեղապետին արտասուաց ու աղաչանացը դէմ չկրցաւ դնել, եւ միտքը դրածը փոխեց, բայց շատ դժուարութեամբ տեսաւ նաւերուն իրմէ հեռանալը։ Միայն աս անգամ չէ, ուրիշ շատ անգամներ ալ Հնդիկները Սպանիացիներուն այցելութեանէն ապշած ու գրգռուած՝ ուզեցին ամէն բան թողուլ ու մէկտեղ երթալ։ Ճամայիկայի մէջ մէկ երիտասարդ մը իր քոյրերուն ու բարեկամներուն լալուն ու աղաչանացը միտ չդնելով՝ զանոնք թող տուաւ եւ Սպանիացւոց նաւ մը մտաւ. բայց ծովապետին օրագրութիւնն ու պատմագիրներուն գրուածները չեն յիշատակեր որ վերջէն ինչ եղած է։

վտանգով ու դժուարութեամբ նոյն անծանօթ ծովերուն վրայ կը նաւէր, եւ միշտ կը վախնար որ չըլլայ թէ իրեն բաղձացած երկիրը չտեսած՝ անցնի երթայ։ Բայց իր սաստիկ երեւակայութիւնը զինքը կը զօրացընէր։ Փոքր նշան մը տեսնելուն պէս՝ կը կարծէր որ Ասիայի հարուստ երկիրներուն հասաւ։ Սակայն բոլոր տեսած երկիրները՝ մերկ մարդիկներով լեցուն կղզիներ էին, որոնցմէ ոմանք խաղաղասէր, ոմանք կատաղի, ոմանք քիչ մը խելք ունեցող, ոմանք բոլորովին ապուշ էին։ Բոլոր նոյն երկիրները պտղատու եւ առատաբեր էին, սքանչելի տեսք ունէին, եւ տնկերով ու բոյսերով զարդարուած էին։ Բայց իր փնտռածն աս չէր, եւ իր սխալ գաղափարը թող չէր տար կիրճին ներքին կողմերն երթալու։ Նախ եւ առաջ քսան օրուան մէջ բոլոր Գուպա կղզւոյն չորս կողմը դարձաւ. եւ երբոր ցամաք ելաւ՝ հոնտեղաց բնակիչները զինքը մեծ հիւրընկալութեամբ ընդունեցան, եւ իրենց երկրին ամենէն ազնիւ կերակուրները բերին։ Նաւերուն անցած տեղը՝ կղզւոյն չորս կողմանէ բնակիչները գունդ գունդ կը վազէին տեսնելու համար, եւ երբ որ Սպանիացիք դուրս կ'ելլէին, տեղացիք ապշած ու զարմացած կը մնային. վասն զի միշտ անանկ կը կարծէին որ երկինքէն իջած են։

Ծովապետն այս կղզիէն հեռանալէն քիչ մը վերջը՝ գեղեցիկ Ճամայիգա կղզին գտաւ: Անկից ելաւ եւ շատ աշխատութեամբ ու չարչարանքով խիտ խիտ կղզիներուն մէջէն նաւեց, որոնց անունը Պարտէզ Թագուհւոյն դրաւ: Նաւերը հազիւ թէ կրնային այս կղզիներու մէջէն անցնիլ, Ամերիկայի եզերքը գտնուող մեծ ժայռերն ու աւազակոյտը նաւերուն ընթացքը կ'արգելուին, եւ ամէն բոպէ ահու դողու մէջ էին որ նաւերը չխորտակին: Այս ամէն նեղութեանց վրայ՝ օդն ալ ուրիշ նեղութիւն մը կ'աւելցընէր. հովը առտուանց արեւելքէն կը փչէր, իրիկուան՝ արեւմուտքէն. մէյ մ'ալ ինչ կը նայիս՝ սեւ սեւ ամպեր կու գային երկինքը կը ծածկէին, մէկ կողմանէ կ'որոտար, մէկալ կողմանէ կը փայլատակէր, վերջապէս սաստիկ կը վախցունէր որ մեծ փոթորիկ մը պիտ'որ ելլէ. բայց քաղցր արշալոյսը ամպերը կը փարատէր: Այս մթնոլորտին փոփոխութիւնը՝ շաբաթներով տեւեց:

Կոլոմբոս միտքը դրած էր որ այս արքիպեղագոսն Ասիային չորս կողմը կը պատէ, եւ Գուպա կղզին՝ Ասիայի ցամաք երկրին ծայրն է: Պարտէզ Թագուհւոյն ըսուած կղզիներէն շնչող քաղցր զեփիւռը՝ Մարկոս Պօղոսին Արեւելքի անուշահոտ խնկերուն վրայ պատմածները Կոլոմբոսին կը յիշեցընէր.

Հոնտեղաց առատ դալարիքը եւ Թռչուններուն ու միջատներուն փայլուն գոյները իր միտքը դրած սխալ կարծիքն աւելի եւս կը հաստատէին։ Կոլոմբոս Գուպա կղզւոյն քովերէն Նորէն պտըտելու մտքով ան գեղեցիկ կողմերը թող տուաւ, եւ կղզւոյն մօտիկնալով՝ հարցուց որ արդեօք հաստատուն կամ ցամաք երկի՞ր է՝ թէ չէ։ Երբ որ Հոնտեղաց բնակիչներն ըսին որ կղզի մըն է, բայց դեռ մէջերնէն եւ ոչ մէկը ծայրը տեսած է, Կոլոմբոս աւելի եւս հաստատուեցաւ որ հաստատուն երկիր է եւ կղզեցիք մտքերնին աղէկ չկրցան հասկըցընել։ Ցեղացիք իրեն ըսին որ աս կղզւոյն արեւմտեան կողմը Մանկոն անուամբ երկիր մը կայ. Կոլոմբոս ասիկայ լսելուն պէս՝ կարծեց որ Մանծի ըսուած երկիրն է, եւ սաստիկ ուրախութեամբ ու մեծ քաջալերութեամբ ծովի ժայռերուն մէջէն դէպ ի արեւմուտք սկսաւ երթալ։

Օր մը նաւաստիներէն մէկը, որն որ ցամաք խրկուած էր, սաստիկ վախցած ու խռովուած ետ դարձաւ եւ ըսաւ որ Հիմա ահագին մարդիկներու բազմութիւն մը տեսայ, որոնք կրօնաւորներու պէս ճեփ ճերմակ զգեստ հագած էին։ Կոլոմբոս անմիջապէս մտածեց որ Մանծի ըսուած երկիրը հասած են, վասն զի Մարկոս Պօղոսին պատմածներուն մէջը կարդացած էր որ ան երկրին արեւելեան

կողմերը վայրենի մարդիկներ կան՝ որոնք ամենեւին զգեստ չեն հագնիր, եւ իրենց դրացիները ծաղր կ'ընեն, որոնք, կ'ըսեն, մարմիններնուն վրայ պակասութիւն մ'ունին. եւ այս պակասութիւնը ծածկելու համար՝ երկայն զգեստ կը հագնին: Միանգամայն կարծեց որ Գուպային մէկ կողմէն վերջին անգամ եկած ժամանակը Հնդիկներուն ըսած խօսքն ալ ասիկայ կ'ակնարկէր, ինչու որ ատոնք ըսած էին թէ արեւմտեան կողմերը պոչաւոր մարդիկներ կան, որոնք պոչերնին ծածկելու համար զգեստ կը հագնին: Աս Հնդիկներուն ըսածն ու Մարկոս Պօղոսին պատմածն իրարու հետ համեմատելով՝ կարծեց որ Մանճի գաւառն հասած է. սակայն ստուգելու համար խրկած մարդիկներն ուրիշ բան չտեսան՝ բայց եթէ անգործ ու ամայի երկիրներ: Անտարակոյս Նաւավարին ճերմակ կրօնաւորներ տեսայ ըսածը՝ ան տեսակ Թռչուններ պիտ'որ ըլլան, որոնք նոյն կողմերը գունդագունդ երամ երամ կը թըռչին, մէկ գլխաւոր մը ունին՝ որն որ ամենէն առաջ կ'երթայ, եւ հեռուանց շատ դիւրաւ կրնայ կարծուիլ որ ճերմակ հագած մարդիկներու բազմութիւն մըն են:

Գուպայի հարաւային կողմը կարգաւ ծայռեր կային, եւ ծովն ալ առանձին կերպարանք մ'ունէր, երբեմն կաթի պէս ճեր-

մակ կ՚երեւար, երբեմն սեւ, երբեմն կանաչ, մէկ կողմը կրաներով ծածկուած, մէկալ կողմը գրեթէ մինչեւ ջրին երեսը աւազակոյտով լեցուն, այնպէս որ մէկ քանի անգամ նաւերը վնասելու վտանգի մէջ ինկան, եւ հարկ եղաւ նաւին գլխի կողմանէ քաշելով՝ ան վտանգաւոր աւազակոյտներէն ազատել: Ասոնց նման ուրիշ երեւոյթներ ալ կամաց կամաց կ՚ապշեցընէին ու կը սասանեցընէին Սպանիացիները, որոնք ան երկայն ու աշխատալի նաւարկութենէն ձանձրացած էին, վասն զի անշէն ու անբնակ կղզիներու խմբերէն ուրիշ բան մը չէին գտներ, եւ առանց օգտի մը Գուպա կղզւոյն անծանօթ եզերքը կ՚երթային կու գային, որն որ իրենք հաստատուն երկիր կը կարծէին: Օր մը գունդագունդ աղաւնիներու բազմութեամբ օդը խաւարեցաւ, ուրիշ օր մը գունդ գունդ հողամաղներով (փորողախխներով): Անգամ մը արեւն ելլելու ատեն՝ փայլուն ու շողշողուն թիթեռներու անթիւ անհամար բազմութիւն մը երեւցաւ, եւ իրիկուան դէմ անձրեւ գալով՝ ցրուեցան ու աներեւոյթ եղան: Վերջապէս բոլոր նաւավարները աշխատութենէն տկարցած ու նիհարցած՝ անդադար կը խնդրէին ետ դառնալ, եւ ծովապետը միտքը դրած ըլլալով որ Գուպան Ասիայի վերջին ծայրն է, զիջաւ աւելի յառաջ

չերթալու. բայց վախնալով որ չըլլայ թէ նախանձոտ եւ տհաճ նաւաստիները՝ որոնք իր գիւտերը բանի տեղ չէին դներ, սուտ զրուցեն, մէկ թուղթ մը շինեց՝ որուն ամէնն ալ ստորագրեցին, որ անտարակոյս հասած երկիրնին ասիական հաստատուն երկիրն էր: Թէ որ երկու օր մ'ալ յառաջ երթային՝ կղզւոյն ծայրը կը դառնային: Կոլոմբոս անկից Իսքանիոլա դառնալու ատեն՝ կ'ուզէր Ճամայիքա երթալ եւ աղէկ մը նոյն տեղը քննել, վասն զի առջի անգամ հազիւ թէ միայն տեսած էր. բայց Պարտէզ Թագուհւոյն ըսուած կղզիներուն մէջէն նաւելու վտանգներն ու դժուարութիւնները՝ զինքը ստիպեցին որ նորէն Գուպա դառնայ:

Հոնտեղաց ցեղապետներէն մէկը այնչափ ուրախութեամբ զինքն ընդունեցաւ, որ Կոլոմբոս ան ժողովրդեան հիւրընկալութեան վրայ զարմանալէն չէր կրնար դադրիլ: Իր օրագրութեան մէջ կը պատմէ որ գիշեր մը օդը շատ պարզ ու գեղեցիկ եղած ատեն՝ կղզւոյն մէկ կողմը հասաւ, ուսկից որ քիչ մը առաջ անցած էր. մէյ մ'ալ բոլոր կղզեցիք ամէն կողմէն վազող վազողի երգելով ու կայթելով եկան աս երկինքէն եկած հիւրերը բարեւելու: Կոլոմբոս կ'ըսէ որ ան տեղաց գեղեցիկ ծաղիկներուն անուշ հոտը, եւ ծառակուրներուն բազմութիւնը՝ որոնք

Սպանիացւոց նաւերուն չորս կողմը կը վըխտային, եւ վայրենիներուն ծափահարութիւններն եւ ուրախական երգերը անանկ հաճելի եղան իրենց, որ բոլոր գիշերը մէկ ժամու պէս շուտով անցաւ։

Կոլոմբոս աս երկրին մէջ հանդիսական պատարագ մը մատուցանել տուաւ. եւ հոնտեղաց բնակիչները խորին մեծարանօք աս աստուածային պաշտօնին ներկայ գտնուեցան։ Պատարագը լմըննալէն ետեւ՝ յարգելի ծեր մը, որն որ ցեղապետին բարեկամն էր, Կոլոմբոսին մօտիկնալով ըսաւ. «Հիմա ըրած գործքդ՝ շատ աղէկ է, վասն զի կ'երեւայ որ քու Աստուծոյդ շնորհակալ ըլլալուդ կերպն ասիկա է։ Բայց ինծի ըսին որ դուն շատ երկիրներ նուաճեր ու չորս կողմը սաստիկ վախցուցեր ես։ Գիտցած ըլլաս որ մարդիկներուն հոգիները մարմնէն բաժնուելէն ետքը՝ երկու ճամբորդութիւն կ'ընեն, ոմանք գարշելի ու խաւարչտին տեղ մը կ'երթան, որն որ իրենց նմաններուն անգթութիւն ընողներուն պատրաստուած է. ոմանք ալ ուրախութեան ու զբօսանաց տեղ մը, ուր որ անոնք միայն կ'երթան, որոնք աս աշխարհքիս մէջ խաղաղութիւն պահած են։ Արդ թէ որ դուն ալ մահկանացու ես ու պիտի մեռնիս նէ, փոյթ տար որ չըլլայ թէ կամովին մէկը վշտացընես, . եւ ամենուն

չարիք մ'ընէր անանց՝ որոնք քեզի չարիք մը չէին ըրած,,։

Ովկայեան աս խօսքին իմաստն իր թարգմաններուն ձեռքովն իմանալէն ետեւ՝ ծերոյն սրտաշարժ խօսքերէն ունեցած ուրախութիւնն յայտնեց ըսելով. "Քու ինծի խօսած խօսքերէդ աւելի հաճելի խօսք չէի կրնար լսել. վասն զի անոնցմով իմացայ որ քու ժողովուրդդ Աստուծմէ կը վախնայ, եւ գիտէ որ ամէն մարդ անմահ հոգի մ'ունի, որն որ իրեն յանցանացն ու բարութեան համեմատ՝ յաւիտենական պատիժ կամ վարձք պիտ'որ ընդունի։ Գիտնաս որ ես շատ երկիւղած ու կրօնասէր տիրոջ մը կը հնազանդիմ, որն որ քու ըսածիդ պէս՝ կը հաւատայ թէ հոգին անմահ է. եւ զիս խրկեց չէ թէ միայն ձեզի, հապա նաեւ բոլոր ուրիշ մարդիկներուն ալ, որ ձեր չգիտցած ճշմարտութիւնները ձեզի սորվեցընեմ, եւ ձեզի ճանչցընեմ ճշմարիտ Աստուածը՝ որն որ բուն ճշմարտութիւնը մարդիկներուն յայտնեց, եւ պատուիրեց որ բոլոր աշխարհքիս սորվեցընեն։ Արդէն մինչեւ հիմայ շատ մարդիկ աս ճշմարտութիւնն ընդունած են, հիմայ ձեր կարգն ալ եկաւ որ աս ճշմարտութիւնը ճանչնաք։ Ամենեւին մի վախնաք։ Ճերմակ մարդիկները ձեր բարւոյն համար ձեզի կու գան. երբեք ձեզի չարիք մը չեն

հացըներ, հապա կ՚ուզեն որ ձեզի զԱստուած սիրել տան, եւ զձեզ ձեր թշնամեացը՝ Գարայիպներուն դէմ պաշտպանեն,,*: Ծերը զարմացմամբ մը ծովապետին խօսքը մտիկ ըրաւ, որն որ թարգմանն իրեն մեկնեց: Բազմութիւնը չորս կողմերնին առաւ, զարմացումնին երթալով կ՚աւելնար, երբոր թարգմանութիւն ընող Հնդիկը, որն որ առջի անգամ Կոլոմբոսին հետ Սպանիա գացող ու հոն մկրտուող Հնդիկներէն մէկն էր, մէջերնին կեցած՝ ճերմակ մարդիկներուն երկիրը տեսած բաները իրենց կը ստորագրէր. փառաւոր ե-

* Անիկայ առջի անգամ չէ որ Կոլոմբոս կղզեցւոց հաւատքի վրայ խօսիլը կը լսէր: Հայթիի բնակիչները կ՚ըսէին որ հոգին մեռնելէն ետքը՝ օձերով լեցուն տեղ մը կ՚անցնի, ուր որ չարագործները կ՚երթան. իսկ աս տեղէն անդին գալարագեղ ու ծաղկալից կղզիներ կան, ուր որ բարիները կ՚երթան ու իրենց տրուած երկրորդ կեանքերնին շատ քաղցրութեամբ եւ ուրախութեամբ կ՚անցընեն: Ասոնք կը հաւատային որ մէկ Աստուած կամ Մեծ Հոգի մը կայ, որն որ ամէն բան ստեղծած է, ու իրմէ վարի աստիճանի եղող հոգիներուն հրաման տուած է որ ամէն բան առանձին առանձին կառավարեն: Կը հաւատային որ Հոգիները՝ որոնք իրենք Զեմի կը կոչեն, գալու բաները ճանչցընել կու տան: Ամէն մարդ իրեն Զեմին ունի, կ՚ըսէին, եւ երբոր մէկը բան մը հարցընել կ՚ուզէր, ծոմ կը պահէր ու պատասխանին կը սպասէր: Կ՚ըսէին որ ցեղապետները առանձին եղանակաւ մը աս հոգիներէն կրթուած են: Ասոնք ամենեւին կուռք չունէին. եւ չիկարծուիր որ զոհ մատուցանէին: Իրենց բոլոր պաշտամունքը՝ քանի մը աւելորդապաշտական գործքերու վրայ կայացած էր:

կեղեցիները, քաղաքներն ու պալատները, մեծաշուք ապարանները, ձիարշաւութիւնները, Նիզակախաղութիւններն ու ցլամարտութիւնները: Յարգելի ծերն ասոնք լսելով՝ անանկ արտաքոյ կարգի փոխուեցաւ ու կենդանութիւն մը առաւ, որ սկսաւ պոռալ թէ կ'ուզեմ ձեզի հետ մէկտեղ երթալ, չմեռած՝ այն սքանչելիքները տեսնել. եւ կը հարցընէր որ արդեօք աս երթալու տեղը երկինք չէ՞: Երիտասարդութեանն ատեն ինքն ալ շատ ճամբորդութիւն ըրած էր, Ճամայիգա, Հայտի եւ ուրիշ հեռու տեղեր կը ճանչնար: Բայց աս արտին բոլորքը՝ իր որդւոցը, կնոջն ու իր բարեկամ ցեղապետին արտասուաց ու աղաչանացը դէմ չկրցաւ դնել, եւ միտքը դրածը փոխեց, բայց շատ դժուարութեամբ տեսաւ Նաւերուն իրմէ հեռանալը: Միայն աս անգամ չէ, ուրիշ շատ անգամներ ալ Հնդիկները Սպանիացիներուն այցելութենէն ապշած ու գրգռուած՝ ուզեցին անոնց բան թողուլ ու մէկտեղ երթալ: Ճամայիգայի մէջ մէկ երիտասարդ մը իր քոյրերուն ու բարեկամներուն լալուն ու աղաչանացը միտ չդնելով՝ զանոնք թող տուաւ եւ Սպանիացւոց Նաւ մը մտաւ. բայց ծովապետին օրագրութիւնն ու պատմագիրներուն գրուածները չեն յիշատակեր որ վերջէն ինչ եղած է:

# ԺԵ.

## Նաւերը կը ստիպուին ճամփայէն հեռուն եզերքը պտըտիլ:

Հովերն ընդդէմ ըլլալով՝ ծովապետը Խորամեխոլա չկրցաւ դառնալ, հապա ստիպեցաւ դէպ ի հիւսիս երթալ: Նորէն Ճամայիկա կղզին մօտիկցաւ, եւ հարաւային կողմերն սկսաւ քննել: Հոն, ինչպէս նաեւ ուրիշ կղզիներու մէջ, երկրին արգասաւորութեան, օդին գեղեցկութեան ու ծառերուն զքանչելի տեսքին վրայ* զարմանալէն չէր դադրեր: Անտեղաց բնակիչները աս անգամ ալ առջի անգամուան պէս մեծ հիւրընկալութիւն ցուցուցին. իրենց ծառակուրները չորս կողմերնին առած՝ միշտ հետերնին կ'երթային ու ամէն տեսակ պաշար կը բերէին. ամբողջ ամիս մը՝ որ Կոլոմբոս ստիպուեցաւ հոնտեղերը մնալ, ասոնք ուրիշ վայրենիներէն աւելի ընտանութիւն ու սէր ցուցուցին: Երբ որ Սպանիացիք ալ հոնկից պիտի՛ որ երթային, անոնք մասնաւոր այցելութիւն մը

* Հոնտեղը այնպէս բարձրաբերձ ծառեր կային, որ պարզ մէկ կոճղէն շինուած՝ ութը ոտնաչափ երկայնութիւն եւ ութը ոտնաչափ լայնութիւն ունեցող նաւակ մը կրնար շինուիլ. որն որ կը ցուցընէ թէ բուն անկուած ծառը՝ գէթ հարիւր քսանէն մինչեւ հարիւր երեսուն ոտնաչափ բարձրութիւն ու քառասունչորս ոտնաչափ շրջապատ պիտի՛ որ ունենայ:

ըրին, որն որ կը ցուցընէ թէ ծովապետն ան միամիտ կղզեցւոց վրայ ինչ տատրաճանի երկիւղ, մեծարանք ու վստահութիւն ձըգած էր։

Առտու մը երբոր Կոլոմբոս իր խուցը նըստած էր, մէյ մ'ալ հեռուանց երեք ծառակուր տեսնուեցաւ, որոնք նկարներով ու քանդակներով զարդարուած՝ դէպ ի իրենց կը մօտիկնային։ Ամենէն մեծ նաւին մէջ կային ցեղապետ մը, իր կինը, չորս որդիքը, երկու աղջիկներն ու հինգ եղբայրները։ Ամէնն ալ գօտիներով, գլխարկներով, փետուրներով ու պատուական մանեակներով զարդարուած էին. իսկ ցեղապետն ու իր կինը գլուխնուն պսակ ունէին։ Երկու Հնդիկ պզտիկ թմբուկներ կը զարնէին, և ուրիշներն ալ ձեռուընին սեւ փայտէ աղէկ յղկուած փողեր ունէին։ Ցեղապետը Կոլոմբոսին նաւը մտաւ, և ամենուն պարգեւ բաշխելէն ետեւ՝ ծովապետին ըսաւ. "Իմացայ որ քու ազգդ ու իշխաններդ ինչ մեծ զօրութիւն ունին. գիտեմ որ ամենեւին ժողովուրդ մը չկայ՝ որ քեզի կարող ըլլայ դէմ կենալ։ Անոր համար դեռ ճերմակ մարդիկներն իմ բնակած կղզիս չտիրած ու իմ տէրութիւնս ձեռքէս չառած՝ ես կու գամ ինքը զինքս քեզի հպատակ ընելու։ Քեզի կ'աղաչեմ որ գիս, բոլոր իմ ընտանիքս ու ծառաներս՝

քու Թագաւորիդ ու Թագուհւոյդ տանիս, ան երկիրը՝ ուր որ իրենք կը Թագաւորեն, եւ որուն վրայ որ այնչափ զարմանալի բաներ կը պատմուին„: Ծովապետին սիրտն ալ առանձինն վստահութենէն սաստիկ շարժեցաւ, բայց աս կղզեցւոց միամտութիւնը վտանգի մէջ դնելու վախնալով, չեմ կրնար բաղձանքդ կատարել, ըսաւ ցեղապետին, որովհետեւ դեռ ուրիշ շատ երկիրներ կան, որոնց պէտք է որ այցելութեան երթամ:

Քիչ մը ետքը զարհուրելի փոթորիկ մ'ելաւ, որն որ ամբողջ ութը օր տեւեց եւ ստիպեց ծովապետը որ կրճի մը մէջ փակուած մնայ. իսկ մէկալ նաւերը ծովին մէջտեղը գտնուելով՝ ան ահագին փոթորիկին դէմ կը կռուէին: Երբ որ մրրիկը դադրելէն ու օդն հանդարտելէն ետեւ՝ ծովապետն ան կիրճէն դուրս ելաւ, վրան սաստիկ հիւանդութիւն մ'եկաւ, որ քաշած նեղութիւններուն ու աշխատութիւններուն հետեւանքն էր: Աս հինգ ամսուան դժուարին ու վտանգաւոր նաւարկութեան ատեն՝ իրմէ ուրիշ մէկը չկար, որ ինչ վտանգներու մէջ ըլլալնին ճանչնար, անոր համար ինք միշտ հաստատութեամբ կը հսկէր: Ասով մարմնոյն զօրութիւնը բոլորովին սպառած էր, եւ յանկարծական հիւանդութիւն մը՝ իր յիշողութիւնը, տեսութիւնն ու հոգւոյն կարողութիւնները

յափշտակեց առաւ։ Այնպէս խորունկ քնոյ մը մէջ ինկաւ, որ բնաւ ամենայնի մեռածի կը նմանէր, եւ ամենեւին բան մը զինքը չէր կրնար արթնցընել. ասոր վրայ բոլոր նաւա-վարները սաստիկ վախնալով ու լքանելով, կատարեալ անզգայ վիճակի մը մէջ առին զինքը Եղեսարէթ քաղաքին նաւահանգիստը տարին։

ԺԲ.

*Բարթողիմէոս Կոլոմբոս։*

Ի՜նչ ուրախութիւն, ի՜նչ ցնծութիւն չէր ունենար ծովապետը հոն հասած ժա-մանակը, թէ որ իր թշուառութեան հիւան-դութիւնը ներէր. վասն զի Բարթողիմէոս իր եղբայրը Եղեսարէթ քաղաքին մէջ իրեն կը սպասէր։ Բայց խեղճ Բարթողիմէոս՝ Կոլոմ-բոսին ուրախութեամբ իրեն փաթթուիլը տեսնելուն տեղ՝ սաստիկ ցաւով ու արտասու-թեամբ տեսաւ որ անիկա գետինը փռուած, հիւանդ ու բոլոր զգայութիւններէն ու հո-գւոյն կարողութիւններէն զրկուած էր։ . . . Ի՞նչ եւ իցէ՝ բարեբախտութեամբ Կոլոմբոսին յոգնած մարմնոյն պահանջուած հանդար-տութեան ու հանգստեան չափին արդէն լե-ցուած ըլլալով, քիչ մը վերջը արթնցաւ, եւ սիրելի եղբայրը գլխուն վերեւը տեսնե-լով՝ անպատմելի խնդութիւն մ'ունեցաւ։

Տեսնելու բան էր երկուքին իրարու ցուցուցած սիրոյ նշանները: Երկուքն ալ սկսան իրենց գլխէն անցածներն իրարու պատմել. Բարթողիմէոս՝ իր եղբայրը կը մեծարէր եւ անոր հանճարն իրեն պարծանք կը սեպէր. իսկ Կոլոմբոս իր եղբայրը սաստիկ կը սիրէր, ու անոր հաստատուն բարեկամութեանը վրայ կը մխիթարուէր:

Երբոր Քրիստափոր Կոլոմբոս Սպանիայի մէջ կ'աշխատէր, անդիէն Բարթողիմէոս Կոլոմբոս, Անգլիա գացած էր Հենրիկոս եօթներորդէն օգնութիւն եւ պաշտպանութիւն խնդրելու: Բայց փոթորկի մը պատահելով՝ շատ ողորմելութեան մէջ ինկաւ, ու ստիպուեցաւ աշխարհացոյցներ շինել ապրելու համար, մինչեւ որ կարող ըլլայ արքունեաց առջեւն ելլել: Մէյ մ'ալ՝ եղբօրը Սպանիայէն օգնութիւն գտնելով ճամբայ ելլելը լսեց. ասով իր գործքը լմնցած ըլլալով՝ ելաւ Սպանիա դարձաւ: Գաղղիայէն անցնելու ատեն՝ Կարոլոս Ը. թագաւորն անոր ճամբորդութեան օգնութիւն մ'ընելու համար՝ 100 սկուտ տուաւ: Նոյն ատեն Կոլոմբոսի անուան համբաւը չորս կողմը տարածուած էր: Բայց ծովապետին առաջին ճամբորդութիւնն այնչափ շուտ եղած էր, եւ ան ժամանակները Եւրոպայի մէջ հաղորդութիւնն այնչափ դանդաղ էր, որ հազիւ ծո-

վապետին երկրորդ անգամ ճամբայ ելլելէն ետքը Բարթողիմէոս՝ Սպանիա հասաւ։ Թագուհին մտածելով որ երկու եղբարք մէկտեղ միանալով ո՛րչափ կ՚ուրախանան, անմիջապէս նաւ մը պատրաստել տուաւ, եւ անոր կառավարութիւնը Բարթողիմէոսին յանձնելով՝ զինքը ճամբայ դրաւ։

Երդ Կոլոմբոս մտածեց որ ինքը զինքը քիչ մը թեթեւցընելու համար իր պաշտօններուն մէկ մասը իր եղբօրը տայ, անոր համար զանիկա ընդհանուր տեղակալ անուանեց։ Ան կարծէր որ ինք ծովապետ ըլլալով եւ ընդարձակ իշխանութիւններ ունենալով՝ կրնայ ասս աստիճանը տալ. բայց Փերդինանդոս ասոր վրայ վշտացաւ։

## ԺԳ.

### Կոլոմբոսին դառնալուն ատեն՝ կղզւոյն գրաւուած վիճակը:

Իրօք ալ կղզւոյն դէշ վիճակը՝ քաջ եւ հաւատարիմ մարդու մը օգնութեան կարօտ էր. վասն զի ծովապետին հինգ ամսուան չափ հեռաւորութեան ատեն՝ բոլոր կղզեցիք յուսահատութեան վիճակի մէջ ինկած էին։ Պետրոս Մարգարիտան՝ որն որ կառավար դրուած էր, խեղճ Հնդկաց դէմ ըրած անլուր բռնութեանցը համար՝ Ցիեկոյ Կոլոմբոսէն, ծովապետին կրտսեր եղբօրմէն յան-

դիմանուելով, սաստիկ բարկացած էր։ Նոյնպէս Հայրն Պօյլ ալ տրտնջողներէն էր. ուստի եւ Պետրոս Մարգարիտան ու ասիկայ մէկ եղած՝ զԹարթողիմէոս բերող նաւը մնած եւ առանց ծովապետին եւ դառնալուն սպասելու՝ կղզին առանց կառավարի թող տալով՝ ելած Սպանիա գացած էին։ Ցիեկոյ Կոլոմբոս տկար ըլլալով՝ չէր կրնար Սպանիացիները չափու մէջ պահել։ Ասով Սպանիացիք սկսան Հնդիկները չարչարել, կանայքը կը յափշտակէին, աղքատիկ տնակնին կը կողոպտէին, եւ սաստիկ կը տանջէին որ ոսկի բերեն։ Կղզեցիք՝ որ մինչեւ նոյն ատեն անսացող ու հնազանդ էին, սկսան ամենեւին կերակուր չտալ այնպիսի հիւրերուն՝ որոնք այնչափ անիրաւութիւններ կ'ընէին։ Ան ատեն ալ Սպանիացւոց բռնութիւնները չափն ու սահմանն անցան. որով եւ խեղճ Հնդիկներուն վստահութիւնն ալ՝ անհաշտ թշնամութեան փոխուեցաւ։ Որչափ որ առանձին առանձին Սպանիացի գտան նէ՝ ամէնն ալ մեռցուցին։ Ցեղապետուն մէկը տասը Սպանիացի մեռցուց, որոնք իր առջեւն ալ ահագին չարիքներ կը գործէին, վերջէն տան մը կրակ տուաւ, որուն մէջ քառասուն հիւանդ Սպանիացի կային։

Վերջապէս Գաոնապոյ Սիպաոյի զարհուրելի ցեղապետը Սուրբ Թովմայի ամրոցը

պաշարեց, որուն մէջ յիսուն հոգի կար եւ գլուխնին՝ քաջ Ալոնզոյ Օյետան էր: Ասիկայ ցեղապետին ամէն մէկ խորամանկութեան մէջ մէկ խորամանկութիւն կը բանեցընէր, եւ անդադար շփոթութեան մէջ կը ձգէր: Ի վերայ այսր ամենայնի երեսուն օր պաշարուած մնաց. եւ եթէ որ Գաոնապոյին մարդիկները ձանձրանալով չելլէին երթային նէ, իր բոլոր ճարտարութիւնն ու քաջութիւնը չէին կրնար զինքը սովամահ ըլլալէն ազատել:

Գաոնապոյ չկրնալով աս կերպով ամրոցին տիրել, ցեղապետաց մէջ դաշնաւորութիւն մը կազմեց: Կղզւոյն մէջ հինգ գլխաւոր ցեղապետ կար, որոնց տակը ուրիշ իբրեւ հպատակ ցեղապետներ ալ կային: [illegible] բոլոր ցեղապետները միաբանեցան, Կուագանակարի ցեղապետը յանձն չառաւ, ըսելով որ ես ճերմակ մարդիկներուն հիւրընկալութիւն խոստացած եմ, եւ զիրենք չեմ կրնար մատնել: Ասիկայ իր յառաջուան բնակութեան տեղը դարձած էր, եւ ամէն օր հարիւր հիւանդ Սպանիացի կը կերակրէր ու կը պահէր: Ցեղապետներն ասոր դէմ պատերազմ բացին, եւ մէջերնէն մէկը իր կանանցմէ մէկը սպաննեց, ուրիշ մէկ կինն ալ գերի բռնեց. բայց այս ամենայն անոր հաւատարմութիւնը չկրցաւ խախտել:

Այս վիճակին մէջ էր կղզին՝ երբոր Կոլոմբոս հասաւ։ Դաշնաւորութիւնը կամ միաբանութիւնը դեռ ծածուկ էր. բայց Կուագանակարի եկաւ մէկիկ մէկիկ ծովապետին պատմեց, եւ լալով ըսաւ որ եւ քու բարեկամութեանդ մէջ միշտ հաւատարիմ կեցած եմ. արդէն յառաջագոյն ալ Սպանիացիները պաշտպանելուս համար վիրաւորեցայ, եւ հիմա քեզի հաւատարիմ մնալուս համար՝ մեկալ ցեղապետներէն շատ կը չարչարուիմ։ Կոլոմբոս անոր սրտանց շնորհակալ եղաւ. բայց ցաւով կը տեսնէր որ անկէ ետքը իր տէրութիւնն ապահովցընելու միակ միջոցը պատերազմն է։

Փոթորկէն ազատելու համար նախ փորձ մը փորձեց, որն որ այսպէս յաջողեցաւ։ Վեկայի ցեղապետին մարդ խաւրեց որ հրամայէ իրեն այցելութեան գայ։ Երբոր երես երեսի եկան, Կոլոմբոս ըսաւ որ Սպանիացւոց անանկ գէշ վարուիլը բոլորովին իմ կամացս դէմ է, եւ ասկից վերջը ամենեւին անանկ բան չ'ըլլար։ Ասով ցեղապետին հետ բարեկամացաւ, եւ անիկա հաւանեցաւ որ դաշնաւորութենէն ելլէ, ու իր աղջիկը Տիեկոյ Հնդկին տայ, որն որ արդէն մեզի ծանօթ է։ Վերջէն ծովապետը զինքը համոզեց որ թողու իր երկրին մէջ ամրոց մը շինելու։

Երբոր անիկայ դաշնաւորութենէն ելաւ, քաջ Զյետա խոստացաւ որ կատաղի Գառնայոյ ցեղապետը՝ որն որ ամենէն զարհուրելի թշնամիներն էր, նենգութեամբ մը կը բռնէ կը բերէ։ Կոլոմբոս իրեն լեուլի իշխանութիւն տուաւ։ Ահա աս քաջ ու աներկիւղ երիտասարդին մտածած հնարքը։ Հետը մէկտեղ տասը մարդ առաւ, եւ վաթսուն փարսախ տեղ երթալով՝ Գառնայոյին երկիրն հասաւ։ Ցեղապետը փնտռեց գտաւ, ու թագաւորի մը վայել մեծարանքով եւ պատկառանքով քովը մօտիկնալով՝ ըսաւ՝ որ խաղաղութիւն ընելու համար եկած է, եւ թէ ծովապետը կը բաղձայ զինքը տեսնել ու հետը բարեկամ ըլլալ։ Գառնայոյ Զյետային քաջութեան վրայ կը զարմանար. եւ թէպէտ խելքով ու զօրութեամբ մէկալ Հնդիկներէն աւելի էր, բայց իրեն եղած այցելութեան վրայ շատ ուրախացաւ, ինչու որ Եւրոպացւոց իշխանութեան մեծութիւնն աղէկ կը ճանչնար։ Վայրենիները երբոր իրենց թըշնամեաց վրայ զօրութիւն ու խորամանկութիւն կը տեսնեն՝ շատ կը յարգեն. անոր համար ալ Գառնայոյ աս Կաստիլիացի երիտասարդին քաջութեանն ու գեղեցիկ վարմանցը, համարձակութեանն ու արագութեան վրայ սաստիկ կը զարմանար. եւ մէկ

քանի օրէն ետքը սկսաւ Օյետային հետ շատ մտերմութեամբ վարուիլ:

Ան ատեն խորամանկ ու նենգաւոր կաստիլիացին անոր ըսաւ որ Ծովապետը քեզի պէս երեւելի ցեղապետի հետ բարեկամութիւն ու նիզակակցութիւն ունենալու համար՝ ամենեւին բանի մը չխնայեր ու Եղիսաբէթ քաղաքին եկեղեցւոյն զանգակը քեզի պարգեւ կու տայ: Եղիսաբէթ քաղաքին զանգակը բոլոր Հայթի կղզւոյն մարդիկներուն զարմանքին նիւթ եղած էր. նախ կարծած էին որ զանգակը կը խօսի, եւ Սպանիացիք զանիկա կը մեծարեն ու անոր կը հնազանդին, եւ այնպէս անհամեմատ իշխանութիւն կամ զօրութիւն մ'ունի: Գաոնապոյ հեռուէն սա զանգակին խորհրդաւոր ձայնը լսած ատեն՝ իրեն սաստիկ բաղձանք եկած էր տեսնելու: Արդ հիմա սանկ պարգեւի մը դէմ չկրնալով դնել՝ խոստացաւ որ զԿոլոմբոս տեսնելու կ'երթայ:

Երբոր երթալու օրն եկաւ, ցեղապետն աս ճամբորդութեան համար շատ մարդ մէկտեղ առաւ իր պատերազմողներէն: Ճամբան՝ Ալոնզոյ զոյգ մը փայլուն ու շատ ընտիր պողպատէ ձեռնակապ ցուցուց եւ ըսաւ. Ասոնք ապարանջան են, որոնք Սպանիայի թագաւորները տօնի օրերը թեւերնին կ'անցընեն, եւ Ծովապետը քեզի կ'ուզէ պարգեւել:

Գառնապոյ անոր վրայ զարմանալու ատեն՝ Օյետա առաջարկեց որ մէկզի քաշուելով՝ նոյն ազնիւ զարդը վրան առնէ, իր ձիոյն գաւակը նստի, եւ այսպէս մէկէն ի մէկ ինքը զինքն իրեններուն ցուցընէ։ Ցեղապետն ասոր հաւանելով՝ հրաման տուաւ որ իր մարդիկներն հեռանան։ Սպանիացիք նենգաւոր ձեռնակապները բազուկներուն անցուցին, եւ Օյետային ձիուն կռնակն հեծցընելով՝ անոր հետ կապեցին։ Գառնապոյ ծիծաղելով եւ ուրախութեամբ յանկարծակի իրեններուն երեւցաւ, որոնք զինքը զարմացմամբ ընդունեցան. ստէպ ստէպ Հնդիկներուն մէջէն կ'երթար կու գար, իր վրայ կը զմայլէր ու կը զարմանար։ Մէյ մ'ալ Օյետա մէկէն ի մէկ ձին խթելուն պէս՝ փայլակի շուտութեամբ անտառ կը զարնէ, ցեղապետը կ'առնէ կը տանի։

Պոժքախտ ցեղապետին հաւատարիմ մարդիկն ասիկայ տեսնելով՝ ետեւէն կը վազէին որ ազատեն, բայց Օյետային ձին թռած գացած էր. անդիէն ալ սպանիացի ձիաւորները զիրենք վախցընելով ընթացքնին կ'ուշացընէին. պարապ տեղը կ'աշխատէին, Գառնապոյ ձեռքերնէն գացած էր։ Ամենայն ինչ աս յանդուգն Սպանիացւոյն յաջողեցաւ. յիսուն փարսախ տեղ՝ որ դեռ մինչեւ Եղիսաբէթ մնացած էր, վազեց անցաւ։ Գեղե-

րու մէջէն կամ ամենեւին չէր անցներ, կամ բնակիչները կը վախցընէր։ Վերջապէս մինչեւ Եղիսաբէթի դաշտը հասաւ, ու իր գերին ծովապետին առջեւն հանեց։

Օյետա շատ ցնծութեամբ ու ծափահարութեամբ ընդունուեցաւ. իսկ կատաղի Գարպայիւյն իր Թշնամւոյն առջեւն ամենեւին չխոնարհեցաւ, անգամ մ'ալ ծովապետին առջեւ ոտք չելլաւ, բայց զՕյետա արտաքոյ կարգի կը յարգէր ու կը մեծարէր։ Աս վայրենիները խորամանկութենէն ու նենգութենէն ուրիշ պատերազմական կրթութիւն չճանչնալով, երբ որ պատերազմի մէջ խորամանկութեամբ վարուող մը կը տեսնեն՝ զինքը շատ կը յարգեն, անոր համար ալ Օյետա Գաոնապոյին արտաքոյ կարգի մէկը կ'երեւար. իսկ անդին զԿոլոմբոս՝ որ ամենեւին վտանգի մէջ չէր մտած զինքը բռնելու՝ Օյետայէն շատ վար կը սեպէր։ Դժբախտ Գաոնապոն իր շղթաները շատ քաջութեամբ ու հաստատութեամբ կրեց։ Բայց իր ներկայութիւնը կղզւոյն վրայ վտանգաւոր սեպուելով՝ ծովապետն ուզեց զինքը Սպանիա խաւրել։ Սակայն նաւն ալէկոծութեան բռնուելով՝ ցեղապետն ընկերներովը մէկտեղ ալեաց տակ ծածկուեցաւ։

# ԺԳ.

## Առաջին պատերազմ:

Ան թշնամութիւնն սկսած էր, հարկ էր որ Սպանիացիք զէնքով զօրքով կղզին նուաճեն: Գուանաքայրին բռնուիլը՝ բոլոր ցեղապետներուն ոտք հանած էր: Անոր եղբայրներէն մէկը Սուրբ Թովմասի ամրոցին մէջ Օջեդային վրայ յարձակեցաւ, յուսալով որ մէկ քանի սպանիացի գերի կը բռնէ եւ անոնցմով իր եղբայրը կ'ազատէ. բայց խեղճը ինքն ալ գերի բռնուեցաւ: Ան ատեն Գուանաքայրին մէկ ուրիշ եղբայրը՝ իր ազգականներուն վրէժխնդրութիւնն ու բոլոր Հնդիկներուն պաշտպանութիւնն իր վրան առաւ. ասոր անունը Մանիքատոդէքս կը կոչուէր: Ասիկա մէկալ ցեղապետներն ալ գրգռեց ոտք հանեց, անանկ որ Սպանիացւոց բանակին նայելով՝ հարիւր հազար Հնդիկ գլուխը ժողվեց:

Վեկայի գեղեցիկ դաշտը պատերազմի տեղ որոշուեցաւ: Կուադանակարի ցեղապետը՝ որն որ Սպանիացիներուն հաւատարիմ մնալուն եւ բոլոր իրեն դաշնակիցներուն խորհուրդները Կոլոմբոսին յայտնելուն համար՝ անոնց սաստիկ ատելի ու թշնամի եղած էր, ծովափերէն հեռու մէկտեղ գնաց՝ որ պատերազմին վկայ ըլլայ: Կոլոմբոսին՝ Հնդկաց հարիւր հազար զօրքին դիմացն հանելու զօր-

քը՝ բոլոր բոլոր երկու հարիւր հետեւակ ու քսան ձիաւոր զօրք էր։ Բայց աս Եւրոպացի զօրքերն աղէկ զինաւորեալ էին, զրահ հագած, վահանով պաշտպանուած, ձեռուընին սրերով, թրերով, նիզակներով եւ հրացաններով լեցուն, միանգամայն իրենց օգնական ունէին ձիերնին ու իրենց գամփռները։ Իսկ Հնդիկները մերկ էին, եւ ուրիշ զէնք չունէին՝ բայց նետ, սլաք ու լախտ (տոփա)։ Ասոնք երբ որ Սպանիացւոց քիչւորութիւնը տեսան, վրանին գթալով ծիծաղեցան, եւ յաղթութեան վրայ կատարեալ ապահով ըլլալով՝ սկսան թշնամւոյն յարձակման սպասել։

Ծովապետն իր սակաւաւոր զօրքը գունդ գունդ բաժնեց, ու մի եւ նոյն ժամանակ ամէնը մէկէն զանազան դիաց աս Հնդիկներուն վրայ թափեցան։ Ստոյգ է Սպանիացւոց թիւը քիչ էր, բայց կրնար յափշտակող գայլերու հետ համեմատուիլ՝ որոնք սաստիկ կատաղութեամբ ոչխարներու հօտի մը մէջ կը նետուին։ Կատաղի գազանի մը մարդակեր ակռաներուն դիմացը՝ հեզ ու անպաշտպան կենդանեաց բազմութիւնն ի՞նչ բանի կը ծառայէր։ Սպանիացիք ութնական կամ տասնական հոգի մէկ եղած՝ ճեղքեցին մտան մերկ մարդիկներուն մէջ, եւ իրենց հրացաններուն կրկին ու կրկին հարուածներովը՝

խեղճերը կարկտի պէս գետինը կը թափէին։ Ողորմելի Հնդիկները մէկ կողմանէ իրենց ընկերներէն ոմանք մեռած՝ ոմանք մեռնելու վրայ քովերնին ընկած տեսնելով, մէկալ կողմէն ալ թնդանօթներուն եւ հրացաններուն ահագին ու սոսկալի ձայներէն եւ անոնց բոցէն ու մխէն ապշելով՝ ինչ ընելիքնին չէին գիտեր. նետերնին ձեռքերնին բռնած՝ ասդին անդին կը նայէին, եւ շփոթած՝ ո՛ր կողմը նետելիքնին չէին կրնար որոշել. մանաւանդ թէ զէնքերնին թշնամւոյն չուղղած՝ գողդողջալով ձեռքերնէն կ'իյնար։ Ալոնզոյ Օյետաս ասոնց վախն ու շփոթութիւնն աղէկ առիթ սեպելով՝ իր ձիաւորներովը վրանին յարձակեցաւ։ Հնդիկներն այնպիսի ահագին անասուններու տակը չճզմուելու համար՝ իրենք իրենցմէ ճամբայ կը բանային. վասն զի աս անասունները մէկ կողմանէ փողերու ձայնէն՝ միւս կողմանէ մարդիկներուն պոռալէն գրգռուած ու կատղած՝ խխնջալով կ'երթային, կու գային, կը վազէին. եւ առջեւնին եկածը կը կոխէին կ'անցնէին։ Բայց աս վայրենիներուն վախն ու սոսկումը վերջին աստիճանի սաստկացընողը՝ ահագին գամփռներու բազմութիւնն եղաւ, որոնք գրգռելով ու կատղեցընելով ասոնց վրայ թող կու տային։ Վասն զի եւ ոչ գաղափար ունէին որ այսպէս կատաղի ու ասանկ մեծ

անտառուն կրնայ ըլլալ. ինչու որ Ամերիկայի կղզիներուն մէջ այնպէս անտառուն ամենեւին չէր գտնուեր։ Վախը բոլորովին վրանին տիրեց, երբոր տեսան որ սա զարհուրելի անտառուններ կատաղութեամբ վրանին յարձակելով՝ կենդանի կենդանի կտոր կտոր կ'ընէին, վզերնէն բռնած քաշելով քաշքռտելով կ'առնէին կը տանէին, ու մերկ մարմիննին խածատելով՝ արիւնալից արիւնաթաթաւ կը թողուին։ Խեղճերը նետերնին ձեռքերնէն կը նետէին ու ողորմուկ ողորմուկ ձայներով՝ դէպ ի անտառ կը վազէին. որով Սպանիացիք դիւրաւ մը կատարեալ՝ բայց միանգամայն ամօթալից ու նախատական յաղթութիւն ստացան։

Ծովապետն սա յաղթութենէն վերջը ութը ինը ամիս՝ իր զօրքովը բոլոր կղզին պտըտեցաւ, ու մնացած քիչ Հնդիկներն ալ՝ որոնք դեռ դէմ դնելու երես կը բռնէին, դիւրաւ յաղթեց։ Բոլոր ցեղապետները բաց ի մէկէն՝ ամէնն ալ հնազանդեցան։ Աս դէմ դնողը Պոեքիոյ ցեղապետն էր, որուն քոյրը Անագաոնա՝ Գաոնապոյին կինն էր, եւ անոր գերի բռնուելուն համար Սպանիացւոց դէմ սաստիկ ատելութիւն ունենալով, եղբայրը կը գրգռէր որ միշտ դէմ դնէ։

Սպանիացիք յաղթութիւններուն վրայ տուրք դրին որ իւրաքանչիւր մարդ երեք ա-

միսը մէյ մը մէկ բաժոժ լեցուն ոսկւոյ փոշի տայ, իսկ ոսկի չեղած երկիրները՝ քսանուհինգ լիտր բամբակ։ Կուարիոնէքս Վեկայի ցեղապետը Կոլոմբոսի առաջարկեց որ երկիր մը մշակել տայ, որն որ Կաստիլիայի համար տասը տարուան ցորեն կրնար հասցընել։ Իսկ Կոլոմբոս գիտնալով որ Սպանիացիներուն ուզածը՝ միայն ոսկի է, յանձն չառաւ։ — Ասով խեղճ Հնդիկները պարտաւորեցան վտակներու եզերքը պտըտիլ, ու աչուընին հաստատութեամբ գետին ու ջրին վրայ անկած՝ ոսկւոյ կտորներ փնտռել, որն որ ամէն կողմանէ ժողվելով՝ օր աւուր վրայ կը պակսէր։ Աս վիճակն իրենց շատ ծանր ու անտանելի կու գար։ Ագահ ու անագորոյն օտարականներու համար առանց դադրելու աշխատիլը՝ իրենց վերջին աստիճանի դժբախտութիւն մըն էր։ Ա՛լ նոյն ատեն երգ չէր լսուեր, կաքաւ չէր երեւար, հանդիստ չկար, ուրախութիւն չէր տեսնուեր. բոլոր ցեղերու մէջ ալ լացք, ողբ, տրտմութիւն կը տիրէր։

Յուսահատութեան մէջ խեղճ ողորմելիները մտածեցին որ բոլոր մշակութիւնը թողուն, հունձքերը կտրեն, պտղատու ծառերը կտրեն մէջտեղէն վերցընեն, ու այրերու եւ քարանձաւներու մէջ փախչին պահուըտին։ Կ'ուզէին որ սանկով իրենց հիւրերը սովով մեռցընեն. բայց աս խորհուրդն իրենց գլու-

խը դարձաւ։ Վասն զի անոնք Սպանիայէն ուտելիք կ'ընդունէին. քիչ մը յառաջ չորս նաւով ուտելիք խմելիք եւ ամէն տեսակ օգնութիւն եկած էր. բայց ասկից՝ նաեւ թագուհին որոշած էր որ անկէ ետեւ ամէն ամիս մէյ մէկ նաւ խաւրէ։ Ասով Հնդիկները Սպանիացիներէն աւելի նեղութիւն ու սով կրեցին։ Սովէն, աշխատութենէն, հիւանդութենէն ու թշուառութենէն հազարներով կորսուած էին. իսկ մնացածներն ստիպուեցան նորէն իրենց թող տուած բնակարանները դառնալ եւ իրենց ատելի աշխատութեան ձեռք զարնել։ Իրենց քաղցր ու վայրենի ազատութեան ժամանակին ուրախութեանց ու զբօսանաց՝ դառն ծառայութեան տխուր տրտմութիւն մը յաջորդած էր։ Ճերմակ մարդիկներն անոնց խաղաղութիւն, քաղաքականութիւն եւ սուրբ ու աստուածային կրօնի մը բարիքները պիտի բերէին. բայց դեռ երեք տարի չեղած՝ իրենց ագահութեամբն ու չարաչար մոլութիւններովը խեղճ մարդիկներուն դահիճներն եղան։ Ան ատենուան ուղղամիտ անձինքն ազդու եւ ողբալից խօսքերով աս մեծ թշուառութեան վրայ լացին ու կարեկից եղան, մինչեւ շատերը սկսան ըսել թէ չափազանցութիւն է։ Քիչ մը ետքը Ամերիկայի քարոզիչները փորձեցին թէ երբ որ ժողովուրդ մը կատաղի չէ, եւ

քիչ մ'իմացութիւն ու քաղաքականութեան սկզբունք ունի, կարելի է իր սովորութիւնները՝ պարկեշտ ու գովելի սովորութեանց դարձընել: Քրիստոնէութիւնը ինչ որ սկսած ժամանակը Յունաստանի ու Հռոմայի տէրութեան երկիրներուն վրայ ըրաւ, նոյնը պարզամիտ ու քրիստոնէից առաւելութեան վրայ զարմանալով արդէն պատրաստուած ժողովըրդեան վրայ ընելն անկարելի՞ էր արդեօք: Բայց Սպանիացիք զանոնք չարչարեցին, գերի ըրին, անասնոյ պէս գործածեցին, ջարդեցին. եւ երկիւղը զիրենք լռեցուց ու խոնարհեցուց: Առանձին Սպանիացի մը կղզւոյն մէկ կողմանէ մէկալ կողմը առանց վտանգի կրնար անցնիլ. որովհետեւ երկիւղը տեղացւոց վրայ ան աստիճանի տիրած էր, որ ամէնեւին վրէժ խնդրելու գաղափար ալ չէր մնացած սրտերնին: Կղզեցիք Սպանիացւոց ամէն մէկ փոքր հրամանին դողդողալով կը հնազանդէին: Ան միամիտ ու բարի ժողովուրդը՝ որ յառաջագոյն ուրախութեամբ օտարականներուն առջեւն ելած, ձեռքերնին պագած, ու անոնց տուած տղու խաղալիկները՝ իբրեւ զարմանալի պարգեւներ ընդունած էր, քիչ տարուան մէջ բոլորովին մարեցաւ: Երեսուն քառասուն տարուան մէջ մէկ կղզեցի մը չմնաց, եւ հիմայ ան պղնձագոյն ժողովուրդն աներեւոյթ եղած է:

Սպանիացիք թէ՛ բարեկամներուն եւ թէ՛ թշնամիներուն հետ մի եւ նոյն բարբարոսական եղանակաւ վարուեցան: Ծովապետին հոն չեղած ժամանակը Կուազանակարիին հպատակներն ալ տուրքի տակ ձգեցին: Խեղճ ցեղապետը՝ Սպանիացւոց կողմը բռնելուն համար իր գաւառակիցներուն ատելի եղաւ, եւ զոհ եղաւ ան օտարականներուն՝ որոնց այնչափ սիրով ծառայած էր: Անոր համար միշտ կու լար ու կ՚ողբար ան օրը՝ որ նաւաբեկեալ Սպանիացիներուն վրայ արցունք թափելով՝ զիրենք ժողված ու ընդունած էր: Վերջապէս աս իր դժբախտութեան չկրնալով դիմանալ՝ իր լեռներէն մէկուն քարանձաւներուն մէջ տրտմութեամբ ու ողորմելութեամբ մեռաւ:

## ԺԱ.

*Կոլոմբոսի թշնամեաց դաւաճանքը: — Ծովապետն Սպանիա կ՚երթայ:*

Մարգարիտան՝ որն որ բարկանալով Սպանիա գացած էր, հոն հասնելուն պէս՝ սկսած էր ծովապետին կառավարութեան դէմ խօսիլ, եւ թագաւորին ու թագուհւոյն աս մեծ մարդուն վրայ ունեցած վստահութիւնը նուազցուց: Զկոլոմբոս եւ անոր եղբայրներն ու գտնուած երկիրը այնպէս անարգելով ու վար զարնելով ստորագրեց,

որ Թագուհին որոշեց պաշտօնատէր մը խաւրելու, որպէս զի երթայ իրենց կողմանէ՝ եղած բաներուն վրայ դատաստան ընէ: Թէ որ ատիկա այսպիսի գործքի մը յարմար մարդ ըլլար նէ՝ շատ օգուտ կրնար ընել. բայց դժբախտութեամբ անանկ մարդ մ'ընտրուեցաւ՝ որ բնութեամբ շատ ընդունայն ու հպարտ ըլլալով եւ ընդունած պաշտօնէն՝ աւելի եւս բարձրամտելով, ամէն բան աւելի գէշցուց: Խրկուած պաշտօնատէրը՝ որուն անունն էր Ցովհաննէս Ակուատոյ, Եղիսաբեթի նաւահանգիստն հասած ատեն՝ ծովապետն հոն չէր: Ակուատոյ շատ բարձրամտութեամբ վարուեցաւ Բարթողիմէոս Կոլոմբոսին հետ, եւ Թագաւորէն ու Թագուհիէն սպանիացի գաղթականներուն գրուած նամակ մը հրատարակել տուաւ փողերու ձայնով, որուն մէջ իրենց կը հրամայուէր որ Ակուատոյին խօսքերուն հաւտան:

Ընդմիջապէս ամէն տժգոհներն ու յանցաւորները՝ որոնք որ ծովապետէն վախնալու պատճառ մ'ունէին, եւ ան ամէն անպիտան ու նուաստ անձինք՝ որոնք իշխանութիւն կամ զօրութիւն մը տեսած կողմերնին կը դառնան, վազեցին եկան եւ իրենց տրտունջն ու չարախօսութիւնը Ակուատոյին առջեւը դրին: Ասանկով Ակուատոյ գտած պատրուակն վրայ աւելի հպարտանալով եւ արդարու-

թեան ու իրաւանց ամենեւին միտ չդնելով՝ բոլոր ամբաստանութիւններն ընդունեցաւ, եւ մեծամտութեամբ ու յանձնապաստանութեամբ մը հրամայեց որ գունդ մը ձիաւոր զօրք երթայ ծովապետը բերէ։ Բայց զօրքը դեռ ճամբայ չելած՝ Կոլոմբոս Եղիսաբեթ հասաւ, եւ վկայական թուղթը տեսածին պէս՝ ըսաւ որ իմ տէրերուս կամացը հնազանդելու պատրաստ եմ։ Ծովապետին հեզութիւնը՝ տկարութենէ յառաջ եկած կարծուեցաւ. եւ Ակուատոյ իր իշխանութիւնն անոր բանեցուց որ զինքը խոնարհեցընէ եւ իրեն ամէն ուզած գործքերուն արգելք դնէ։ Բոլոր կղզւոյն մէջ համբաւ տարածեցաւ որ ծովապետը պիտ'որ սպաննուի եւ Ակուատոյ անոր տեղը պիտ'որ անցնի։ Հնդիկներն սկսան Կոլոմբոսին դէմ տրտունջներ ու ամբաստանութիւններ ընել, խեղճերը կը յուսային որ վրանին ուրիշ մը գլուխ կ'ըլլայ նէ՝ վիճակնին կը փոխուի։ Ակուատոյ բոլոր աս ամբաստանութիւններն ու տժգոհութիւնները առանց քննելու, առանց զԿոլոմբոս մտիկ ընելու, առանց դատելու եւ տեղեկանալու՝ առաւ Սպանիա գնաց։

Կոլոմբոս կը տեսնէր թէ ինչպէս հարկաւոր է որ իր թշնամիներուն բոլոր ըրած ամբաստանութիւններուն առջեւն առնէ. ուստի եւ որոշեց որ Ակուատոյին հետ ինքն

ալ երթայ: Կղզւոյն կառավարութիւնը իր եղբօրը Բարթողիմէոսին յանձնեց. եւ ամէն ճիգն ի գործ դրաւ որ դաւաճաններուն գլխաւորները մէկտեղ տանի, եւ այսպէս 1496ին Մարտին մէջ ճամբայ ելաւ:

Աս վերջին քաշած վիշտերուն ու նեղութիւններուն դիմացը փոքր մխիթարութիւն եւ ուրախութիւն մը պատճառած էր իրեն ուրիշ Նոր գիւտ մը*: Միքայէլ Տիազ անուանով Սպանիացւոյն մէկը մենամարտութեան մէջ իր ընկերն սպաննած ըլլալով՝ ցեղապետ կնոջ մը քով պահուըտեցաւ, որն որ գեղի մը գլուխ էր, եւ քիչ մը վերջը իրարու հետ կարգուեցան: Բայց Տիազ իր ընկերներէն բաժնուելուն վրայ շատ կը ցաւէր, եւ նորէն անոնց քովը դառնալու միջոց մը կը փնտռէր, որն որ քիչ մը վերջը ամուսինն իրեն տուաւ: Աւիկա Հայնա գետին քովերը լեռներուն վրայ ոսկւոյ հանք մը ցուցուց, զորն որ Սպանիացին դիւրաւ թողութիւն գտնելուն շատ յարմար միջոց համարեցաւ, եւ չխաբուեցաւ ալ: Ծովապետը զինքը շատ սիրով ընդունեցաւ: Եւ որովհետեւ մեծ յօժարութեամբ կ'ընդունէր ան ամէն խորհուրդներն ու կարծիքները՝ որոնք զինքը կը համոզէին թէ Աւիրայի մէջ է, անմիջապէս աս հանքին վրայ

* Ոմանք կը պատմեն որ աս գիւտը ծովապետին ճամբայ ելլելէն ետեւ եղած ըլլայ:

ալ հազար ու մէկ խորհուրդներ ու դրութիւններ սկսաւ մտածել, մանաւանդ որ նոյն հանքերուն մէջ յառաջագոյն գործուած ըլլալու նշաններ ալ կը գտնուէին: Ասիկա բաւական սեպեց մտքին մէջ հաստատելու թէ Սպանիական կղզին Սողոմոնին յիշած Ոփիրն ըլլայ:

Կոլոմբոսի ակնալութիւնները մեծ էին, բայց իրն ալ աւելի եղաւ: Թէպէտ գտածն ալ ըստ ինքեան մեծ բան էր, բայց ժամանակին պարագաները նոյնը աւելի կը մեծցընէին. որովհետեւ աս միջոցիս մէջ՝ որ իր թշնամիներն ըրած գիւտերը վար զարնելու կը նայէին, աս դէպքս իրեն մեծ բախտ մըն էր, ինչու որ ալ կրնար ստուգութեամբ ըսել թէ իրաւցընէ Հայդի կղզւոյն մէջ ոսկւոյ հանք կը գտնուի:

Ճամբորդութիւնը շատ երկայն ու դժուարին եղաւ, արեւելեան հովերուն պատճառաւ՝ որոնց դէմ կռուելու կը պարտաւորէին, եւ հազիւ թէ Յունիսի 11ին Գատիս հասաւ: Նաւերը պաշարի կողմանէ սաստիկ նեղութեան մէջ ինկած էին, եւ նաւաստիներն օրէ օր աւելի կը կատղէին Կոլոմբոսին դէմ, որն որ այնչափ Սպանիացիք այնպիսի վտանգներու եւ ամէն տեսակ նեղութիւններու մէջ կը ձգէր:

Բայց Կոլոմբոս թէ՛ թագաւորին ու թէ՛ թագուհւոյն առջեւը մեծ ընդունելութիւն ու շնորհք գտաւ: Ամենեւին իրեն խօսք չբացին ո՛չ Մարգարիտային ըրած տրտունջներուն եւ ո՛չ ալ Ակուատոյին ըրած քննութիւններուն վրայ, մանաւանդ թէ իրենք զիրենք պատրաստ կը ցուցընէին իր պատճառները լսելու, եւ միշտ ամէն առթի մէջ զինքը կը պատուէին: Ծովապետը խնդրեց եւ ընդունեցաւ որ իրեն ութը նաւ տրուի, որոնց երկուքը կ'ուզէր անմիջապէս գաղթականներուն խաւրել, եւ վեց հատն ալ ինք իր հրամանին տակը պահել: Դարձեալ ընդունեցաւ որ քառասուն ձիաւոր եւ հարիւր ոտանաւոր զօրք, վաթսուն նաւաստի, քսան ոսկերիչ, յիսուն երկրագործ, քսան զանազան արուեստաւորներ եւ երեսուն կին, եւ ասոնցմէ զատ քահանայ, բժիշկ, վիրաբոյժ, գեղագործ եւ մինչեւ երաժիշտ ալ խաւրուի Սպանիական կղզին:

Այս երեքհարիւրի չափ մարդէն զատ՝ որոնք թագաւորական թոշակ պիտ'որ ընդունէին, ծովապետն հրաման ընդունեցաւ որ իր ծախքովը ուրիշ 500 հոգի ալ կարենայ հետը տանիլ: Դարձեալ հրաման եղաւ որ ինք իր հաշուին երթալ ոսկի ժողվել ուզողն ալ երթայ, միայն թէ ժողված ոսկոյն երեքին մէկը պէտք է որ տէրութեան

տայ։ Բայց Թագուհին աս պայմանը դրաւ որ գացողները իր Կաստիլիայի հպատակներէն ըլլան։ Եւ թէպէտ աս առաջարկութիւնը շատերը կը գրգռէր, բայց շատ քիչ մարդ կը գտնուէր՝ որ բոլոր կեանքը Նոր աշխարհքին վրայ անցընել յանձն առնէր, մանաւանդ տեսնելով որ ետ դարձողներէն ոմանք զանազան հիւանդութիւններ ստացեր են ու երեսնին գոյն չկայ։ Ասոր համար Կոլոմբոս աս առաջարկութիւնն ալ ըրաւ որ պատժապարտներուն տրուած կամ տրուելու ուրիշ պատիժները՝ Սպանիական կղզին աքսորուելու փոխուի։ Աս առաջարկութիւնն ալ ընդունուեցաւ. բայց ծովապետին գլուխը ետքը շատ մեծ նեղութիւն հասցուց աս բանս, ինչպէս որ քիչ մը ետքը կը տեսնենք։

Ծովապետն աս ամէն բաները երկու տարուան մէջ կարգի դնելէն ետեւ, 1498ին Մայիսի 30ին ճամբայ ելլելով՝ երրորդ ճամբորդութիւնն սկսաւ։

---

## Գ. ԵՒ Գ. ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ

## Ա.

### *Ամերիկայի ցամաք երկրին գիւտը :*

Երջանիկ կ'ըլլար Կոլոմբոս թէ որ գաղթականութիւններ հաստատելու հոգն ուրիշներուն թող տալով՝ ինք մինակ նոր երկիր գտնելու ետեւէ իյնար: Աս որ ընէր՝ ուրիշ կրելու բան չէր ունենար, բայց եթէ ան նեղութիւնները՝ որոնք անծանօթ տեղեր առանց վտանգաւոր ճանապարհորդութիւն ընողները հարկ է որ կրեն. նախանձու եւ անիրաւութեան նպատակ չէր ըլլար, եւ ընդունած փառքն ու պատիւը այսպիսի ցաւերով խառն չէր ըլլար:

Աս ընելու նոր ճամբորդութեան մէջ միտքը դրաւ որ աւելի դէպ ի հարաւ նաւէ: Նաւերէն երեքը դէպ ի գաղթականութիւն խրկեց՝ որ իրենց պաշար տանին, եւ միանգամայն զանազան արուեստաւորներ ալ խաւրեց: Իրեն քովը միայն երեք նաւ պահեց, եւ անոնցմով կ'ուզէր դարձեալ նոր երկիրներ գտնել: Յունիսի 27ին Կանաչ Հրուանդանի կղզիներուն քովն էր: Քիչ մ'ալ յառաջ գնաց, եւ գրեթէ հասարակածին տակը կը գտնուէր:

Դեռ չէր գիտեր որ ան կողմերը հասարակածին այրող տոչորող ջերմութիւնը՝ ամենեւին հողմով մը զովացում չ'ունենար, եւ թէ ծովը հայելւոյ կը նմանի՝ որ միայն արեւին այրող ճառագայթները կը ցոլացընէ, եւ նաւերը շատ անգամ շաբաթներով անշարժ առանց ճամբայ առնելու միեւնոյն տեղը մնալու կը պարտաւորին: Տաքութիւնն այնպէս չափէ դուրս սաստկացաւ, որ նաւերը կը բացուէին, նաւերուն կուպրը կը հալէր, տակառներուն շրջանակները կը քակուէին կ'իյնային, աղած կամ ապխտած միսը կ'ապականէր, ցորենը կը չորնար, ու նաւաստիներէն մէկը նաւուն ամբարանոցին մէջ չէր կրնար գործել կամ քիչ մը ժամանակ կենալ: Կոլոմբոս դէպ ի արեւմտեան հարաւ նաւարկեց, եւ վերջապէս քիչ մը նուազ այրող ծովէ մը հանդիպեցաւ, ուր քաղցր զեփիւռ մը օդը կը զովացընէր. բայց նաւերը սաստիկ նեղութեան մէջ էին, որովհետեւ Յուլիսի 3էն՝ ամիս մը ճամբորդութիւն ընելէն ետքը՝ մինակ մէկ տակառ անուշ ջուր մնացած էր, եւ նաւաստիները յուսահատած՝ աչուըներնուն առջեւը կը տեսնէին ան վայրկեանը՝ որ ջրերնին բոլորովին պիտ'որ պակսէր. ծովապետն ալ վերջին աստիճանի անհանգստութեան ու խռովութեան մէջ էր:

Ուխտ ըրաւ որ առջի գտած երկիրը Երրորդութիւն անուանէ։

Յանկարծ նաւաստիներէն մէկը կէս օրուան ատեն նաւուն կայմին վրայէն հեռուանց երեք լեռներու ծայր տեսաւ, եւ սկսաւ Երկի՜ր, երկի՜ր կանչել, որով բոլոր նաւաստեաց սիրտն ուրախութեամբ լեցուեցաւ։ — Աս երեք լեռներն իրենց ստորոտովն իրարու հետ միացած էին, եւ այսպէս շատ համաձայն էին Երրորդութիւն անուանն։ Միշտ դէպ ի հարաւ առագաստելով, հազիւ երկու օրէն կրցաւ Կոլոմբոս երկաթ նետել։ Երկիրը քիչ մը փորել տուաւ, եւ անուշ ջուր գտաւ։

Բայց աս անծանօթ երկրին մէջ ամէն բան ծովապետը կը զարմացընէր. շատ չանցաւ՝ դիտեց որ վտանգաւոր յորձանքներ կային, որոնք կ'երեւար թէ անուշ ջրերուն ծովը թափուելովը կը գոյանային։ Անգամ մը լերան պէս ջուրը կամ ջրոյ լեռ մը իր նաւուն վրայ սկսաւ գալ, եւ նաւն այնպէս վեր վերցուց՝ որ քիչ մնաց կ'ընկղմէր. բայց կամաց կամաց սկսաւ իջնալ։ Ծովն ան տեղը անանկ կը մռնչար ու կը փրփրար, որ կարծես թէ տակը լեցուն վտանգաւոր ժայռեր կային։ Կոլոմբոս ան տեղւոյն անունը՝ Վիշապի բերան դրաւ։

Երրորդութեան հարաւային կողմերը ընդարձակ երկիր մը նշմարեց. Նոյն տեղւոյն

բնակիչներէն հարիւր քսան հոգի ծառակուրներով եկան նաւին չորս կողմն առին։ Ասոնք գրեթէ ճերմակ էին, կազմուածքնին գեղեցիկ, եւ մարմիններնուն կէսը գոյնզգոյն ներկած բամբակէ լաթով գոցուած էր. ձեռուըննին մէյմէկ ալ վահան ունէին։ Կոլոմբոս իրեններուն հրաման տուաւ որ թմբուկները զարնեն։ Վայրենիները կարծելով թէ Կոլոմբոսին մարդիկները վրանին պիտ՚ որ յարձակին, սկսան անոնց վրայ նետ նետել։ Բայց երբ որ նաւերէն վրանին մէկ երկու բաղխոտր պարպեցին նէ, սկսան փախչիլ. սակայն նորէն Կոլոմբոսի վերջին նաւին սկսան մօտիկնալ, եւ մէջերնէն մէկը սկսաւ խօսիլ նոյն նաւին ղեկավարին հետ, որն որ իրեն վերարկու եւ գլխարկ մը տուաւ։ Մարդն աս ընծաներն ուրախութեան նշաններով ընդունեցաւ եւ խոստացաւ որ եթէ ցամաք ելլելու ըլլան, ինքն ալ անոնց պարգեւներ կու տայ։

Նաւապետը նոյն ատեն Բարիայի խորշին մէջ կը գտնուէր։ Աս ընդարձակ խորշին մէջ մտնելուն պէս՝ ա՛լ անկից ետքը ինքը զինքն ապահով կը համարէր։ Շատ կը զարմանար աս երկիրներուն վրայ՝ որ իրեն թէ՛ գեղեցիկ եւ թէ՛ առատ ու պտղաբեր կ՚երեւային։ Ցամաք ելած ատեն՝ բնակիչները, որ մինչեւ նոյն ատեն տեսած մարդիկներուն ամենէն աւելի կրթեալ ու խելացի

կ՚երեւային, զիրենք սիրով ընդունեցան: Տեղապետն իրենց կերակուր հանեց: Ամէնքն ալ, թէ տեղացիներն ու թէ Սպանիացիք, միայն անոր կը ցաւէին որ իրար չէին հասկընար, ու կը ջանային որ մէջերնին նշաններով հասկըցընեն: Տեղացիներուն անունը Բարիա կ՚ըսուէր: Անոնք արեւելեան կողմերը երկիր մը կը ցուցընէին, ուր որ առատ ոսկի կը գտնուի, կ՚ըսէին: Իրենց ծովեզերքը շատ գեղեցիկ մարգարիտ կու տար, որուն վրայ Սպանիացիները սաստիկ զարմացան, եւ բոժոժներ տալով՝ այնպիսի պատուական մարգարիտները ձեռքերնէն կ՚առնէին: Կանանց մանեակներն ու ապարանջանները ալ մարգարիտներէն շինուած էին:

Ծովապետը Բարիայի երկրէն ելլելէն ետեւ՝ Վիշապի բերան ըսուած ծովը մտաւ, եւ մեծ աշխատութեամբ հազիւ կրցաւ դուրս ելլել: Կը կարծէր թէ Բարիա կղզի մըն է. բայց հարաւային բերրի եզերքը պտըտելով՝ տեսաւ որ հոնտեղաց ծովուն ջուրը շատ անուշ էր, ուստի եւ ասկից հետեւցուց թէ ան կողմերը շատ գետի ջուր պիտի վազէ: Լայն ու ընդարձակ գետի մը (Օրէնոգօ) բերնէն ծովուն մէջ պատճառած յորձանքի մը պատահեցաւ. եւ միտքը դրաւ որ ան հաստատուն կամ ցամաք երկիր գտած է: Բայց ինք կը կարծէր որ նոյն երկիրը Ասիայի ցա-

մաքն է։ Աս Ամերիկայի ցամաք երկիրը գտած օրն էր 1498ին Օգոստոսին առաջին օրը։ Շատ կը բաղձար նոյն անծանօթ երկիրը քննել։ Բայց չորս ամսուան չափ ճամբորդու-թիւն ընելէն եւ այնչափ նեղութիւն կրելէն ետքը՝ նաւաստեաց գտնուած վիճակը թող չէր տար որ աւելի երկայն ճամբորդութիւն մ'ընէ։ Մանաւանդ թէ նոյն խակ ինքն ալ շատ տկարացած էր. իր յօդացաւութիւնը, ջերմն ու աչքի ցաւը՝ որ զինքը գրեթէ կու-րացուցած էր, պարտաւորեցին որ դէպ ի Հիւսիս նաւէ ու Սպանիական կղզին դառնայ*։

* Այսպէս թէպէտ եւ Ամերիկայի ցամաք կամ Հաստատուն երկրին բուն գտնողը Կոլոմբոս է, ինչպէս որ իրմէ դրուած Երրորդութիւն եւ Վի-շապի բերան անունները յայտնի կը ցուցնեն, որոնք մինչեւ հիմա մնացած են. բայց նոյն աշ-խարհքը անունն առած է Ամերիկոս Վեսբուչչի անուամբ Փիորենցացիէ մը։ Աս մարդս Կոլոմբոսին նոյն տեղերը գտնելէն գրեթէ տարի մը վերջը՝ ծովապետին առաջին ճամբորդութիւններուն օրա-գիրն ու աշխարհագրութիւնները ձեռքն ունենալով՝ Ալոնզոյ Օյետային հետ նոյն կողմերը սպանիական նաւատորմղով մը ճամբորդութիւն ըրաւ, եւ Կո-լոմբոսին մէյ մը գտածը նորէն գտաւ։ Բայց իր ճամբորդութեան ստորագրութիւնը շուտ մը չորս կողմը տարածուելով՝ ամէն մարդ կարծեց թէ նոյն երկիրը գտնողն ինքն է, ուստի եւ իր ա-նունը դնելով՝ Ամերիկա ըսին։

# Բ.

## Հայդիի կառավարութիւնը:

Բարթողիմէոս Կոլոմբոս թէպէտեւ բնութեամբ շատ խելացի ու յաջողակ էր, ի վերայ այսր ամենայնի գաղթականութիւնը չէր կըրնար աղէկ կառավարել: Գլխաւոր դժուարութիւնն ու արգելքը Սպանիացիներուն անհամաձայնութենէն յառաջ կու գար: Կոլոմբոս ճամբայ չելած՝ իրեն յանձնած էր որ կղզւոյն աւելի յարմար մէկ տեղը նոր քաղաք ու ամրոց մը շինէ: Բարթողիմէոս ալ խորհըրդին հետեւելով՝ Ս. Դոմինիկոս (Սան-Տոմէնկոյ) քաղքին ու ամրոցին հիմը դրաւ, եւ Եղիսաբէթ քաղքին բնակիչներուն մեծ մասը հոն փոխադրեց: Ետքը դաշնակից եղաւ Գուառնապոյ ցեղապետին դժբախտ կնոջը հետ, որն որ բոլոր կղզւոյն մէջ անուանի էր եւ իր Պոէքիոյ եղբօրն առջեւը խօսքը կ'անցնէր: Աս կնոջ անունը Անագաոնա էր, որ երկրին լեզուաւը՝ Ոսկեծաղիկ կը նշանակէ:

Պոէքիոյին երկիրը՝ որ Քսարագուա կ'ըսուէր, վերջին խռովութիւններէն վնաս մը չէր կրած, որովհետեւ Սպանիացիք հոն չէին մտած: Բարթողիմէոս ուզեց իրեն ու իր քրոջն այցելութիւն մ'ընել: Անոնք զինքն այնպէս սիրով ու մարդասիրութեամբ ընդունեցան, որ ամենուն ան պարզամիտ վայ-

րենիններէն չէին կրնար յուսալ։ Անագոստանա խելացի կին մ'ըլլալով՝ կը զարմանար Եւրոպացւոց խելացիութեան ու ճարտարութեան վրայ, եւ աղէկ կ'իմանար որ ասոնք իրենց աս ամէն առաւելութիւնները՝ միայն քաղաքականութեան ձեռքով ստացած էին։ Բարթողիմէոս զինքն Սպանիական նաւ մը տարաւ։ Անագոստանա նաւին շինուածքը կը քննէր, բայց ան միամիտ զարմացումը չէր ցուցըներ՝ որն որ հասարակօրէն տեղացիներուն վրայ կ'երեւար, հապա մանաւանդ բանէ հասկըցողի մը պէս կը սքանչանար նաւին արուեստաւոր կազմուածքին վրայ։ Եղբայրը կամօք յօժարութեամբ յանձն առաւ որ Սպանիացւոց հարկ վճարէ, եւ երբոր վճարման ատենն եկաւ՝ Անագոստանա ալ իր կողմանէ վրան ուրիշ ուտելիքներ աւելցուց։

Երբոր Կոլոմբոսի եղբայրն այսպէս խոհեմութեամբ ու քաղցրութեամբ կամաց կամաց տեղացւոց հետ նորէն կը բարեկամանար, իր գործակալները զանոնք չարչարելէն ու նեղելէն չէին դադրեր։ Պոյլէն աւելի եռանդնոտ քահանաներ յաջողութեամբ սկսած էին Վեկայի բնակիչները քրիստոնէութեան դարձընել ու կրթել։ Ասոնց քարոզութիւնը լսելով՝ նոյն հնդիկներէն տասնուվեց հոգւով ընտանիք մը քրիստոնէութիւնն ընդունեցաւ. եւ իրենց Կուարիոնէքս ցեղապետը

քարոզութիւննին մտիկ ընելու կ'երթար: Բայց յանկարծ բարձր աստիճանաւոր Սպանիացի մը գնաց անոր կանանցմէ մէկը մոլորեցուց, որով ցեղապետը կատղելով՝ քրիստոնէութիւնն ընդունելէն ետ կեցաւ, քահանաներն ալ ակամայ ետ քաշուելու պարտաւորեցան: Անոնց երթալէն ետքը՝ տեղացիներն ոտք ելան, իրենց հոնտեղը ձգած խորանն ու պատկերները առին կործանեցին: Աս որ լսեցին Սպանիացիները՝ իրենց խիստ օրինաց համեմատ՝ գացին բռնեցին ու այրեցին աս թշուառ Հնդիկները, որ ո՛չ ըրած յանցանքնին կը ճանչնային, ո՛չ ալ տրուելու պատիժը գիտէին:

Աս բռնութիւնը տեսնելով՝ բոլոր ցեղապետները նորէն Սպանիացւոց դէմ դաշինք դրին, եւ մէջերնին խօսք ըրին որ աս օտարականներուն ձեռքէն ազատին: Կուարիոնէքս՝ ասոնց գլուխն անցաւ, եւ ամէնքն ալ իր քովը ժողվեց: Բայց Բարթողոմէոս Ժամանակէն աս դաւաճանութիւնն իմանալով՝ հետը աղէկ զինաւորած 100 հոգի առած՝ գիշերով գաղտնի Կուարիոնէքսին գեղին վրայ յարձակեցաւ: Սպանիացիք բոլոր ցեղապետները քնոյ մէջ գտնելով՝ յանկարծ վրանին ինկան, կապեցին ու գերի բռնեցին: Աս հնարքն աղէկ յաջողեցաւ: Երկրորդ օրը հազարաւոր Հնդիկներ լալով ողբով առանց

զէնքի եկան Մագդաղենացի ըսուած բերդին չորս կողմն առին, եւ խոնարհութեամբ կը խնդրէին որ իրենց ցեղապետներն ազատեն։ Բարթողիմէոս քաղցրութեամբ վարուեցաւ։ Իր բաղձանքն ան էր որ Հնդիկներն իրեն հետ խաղաղութեամբ ու բարեկամութեամբ դաշնակից ըլլան։ Կուարիոնէքսն եւ ուրիշներն ազատեց, բաց ի երկու հոգիէն՝ զորոնք Սպանիացւոց անհաշտ թշնամի ըլլալնուն համար՝ մահուան դատապարտեց։ Բայց մէկալ կողմանէ՝ ցեղապետին կինը մոլորեցընող Սպանիացին ալ պատժեց։ Խոստացաւ որ իրենց հաւատարիմ ու բարեկամ մնացող ցեղապետներուն եւ ժողովուրդներուն միշտ բարեկամութեան ու պաշտպանութեան նշաններ կը ցուցընէ, բայց միանգամայն մեծամեծ պատիժներ սպառնացաւ եթէ երբեք ապստամբելու ըլլան։ Կուարիոնէքս՝ իր հպատակներուն աղէկ յորդորանք մը տուաւ՝ որ ճերմակ մարդիկներուն հետ խաղաղութեամբ վարուին, որովհետեւ, ըսաւ, անոնց իշխանութեան դէմ չիդրուիր, զօրութիւննին աննուաճելի է, եւ իրենց բարեկամներուն հետ մեծանձնութեամբ կը վարուին։ Բարի ու դիւրահաւան Հնդիկներուն ատելութիւնը շուտ մը սիրոյ դարձաւ։ Իրենց ցեղապետն ուսերնուն վրայ առին, եւ ուրախութեան

աղաղակներով ու ազատութեան երգեր երգելով՝ իր բնակարանը տարին:

Բայց դժբախտութեամբ աս խաղաղութիւնն երկայն չտեւեց: Սպանիացւոյ մը մատնութեամբ բոլոր կղզին նորէն տակնուվրայ եղաւ, ապստամբեցաւ: Բոլոտան անունով մէկը՝ բոլոր գաղթականները Բարթողիմէոսին դէմ ոտք հանեց: Ասիկա Կոլոմբոսին հասարակ ծառաներէն մէկն էր, բայց կամաց կամաց այնչափ մեծցած էր, որ ծովապետը ճամբայ չելած՝ զինքը կղզւոյն առաջին դատաւորը դրած էր: Բարթողիմէոսին՝ հարկ ժողվելու համար՝ Պոկքիոյին ու Անագոանային քովն երթալն յարմար առիթ առնելով՝ գնաց Ցղութեան ամրոցին վրայ յարձակեցաւ: Բարեբախտութեամբ ամրոցին քաջ հրամանատարը հաւատարիմ կեցաւ, եւ Բարթողիմէոս ալ ժամանակին վրայ հասնելով՝ կարող եղաւ զինքը զսպել: Բայց մատնիչն ինչ ըրաւ չըրաւ՝ զԿուարիոնէքս նորէն ապստամբեցուց: Ձայն հանեց թէ Կոլոմբոս երեսէ ինկած է. Հնդիկներուն կ'ըսէր թէ ես զձեզ կ'ուզեմ պաշտպանել, իսկ Սպանիացիներուն՝ թէ կ'ուզեմ զձեզ ազատել աս օտարական (Կոլոմբոսի) ցեղին լուծէն, որ երկաթի ձեռքով զձեզ կը նեղէ: Այսպէսով իր կողմնակիցները շատցուց: Եւ թէ որ նոյն ատեն ծովապետին նաւատոր-

մղին մէկ մասը դաղթականաց օգնութեան հասնէր, անօրէն Ռոլտան զԲարթողիմէոս մեռցընել կու տար։ Բայց թէպէտ իր դաւաճանութիւններն յայտնուեցան. սակայն խեղճ Հնդիկները զոհ եղան։ Կուարիոնէքսին ապստամբութիւնն ալ յայտնուելով՝ պարտաւորեցաւ փախչիլ։ Մայոպանէքս Ցիկուայի լեռներուն ցեղապետը՝ զինքն ընդունեցաւ, եւ աս գեղեցիկ պատասխանը տուաւ Բարթողիմէոսին դեսպաններուն՝ որ զինքը կը խնդրէին. "Ըսէք անգութ ու անօրէն Սպանիացիներուն՝ որ ուրիշները կը կողոպտեն եւ առանց պատճառի Հնդիկները կը սպաննեն, ես իրենց բարեկամութեան չեմ բաղձար։ Կուարիոնէքս աղէկ մարդ է, եւ միանգամայն իմ բարեկամս ու հիւրս է. ես իրեն խոստացայ որ զինքը կը պաշտպանեմ, պէտք է որ խօսքիս վրայ մնամ,,։ Ասով հարկ եղաւ որ պատերազմ բացուի։ Մայոպանէքս գերի բռնուեցաւ. իսկ խեղճ Կուարիոնէքս քիչ մը ատեն լեռներուն վրայ թափառական պտըտելէն ետեւ՝ վերջապէս Սպանիացիներուն ձեռքն ինկաւ, որոնք զինքը Մայոպանէքսին հետ մէկտեղ իբրեւ գերաւ կամ պատանդ զգուշութեամբ կը պահէին։ Աս ամէն բան ըլլալէն վերջն ալ Ռոլտան չուզեց Բարթողիմէոսին առաջարկած խաղաղութիւնն ընդունիլ։ Անոր խրկած պատգամաւ-

որին հետ նախատանօք եւ արհամարհու-թեամբ վարուեցաւ, եւ թէպէտ ատիկա Բար-թողիմէոսին կողմանէ կատարեալ թողու-թիւն կը խոստանար, ի վերայ այսր ամե-նայնի ինք լաւ սեպեց Քսարակուա փախչիլ, որպէս զի ինք ու հետը միաբանած քառասուն ապստամբներուն առանձին հաշուին ոսկի փնտռէ:

Այսպիսի դժբախտ վիճակի մէջ էր Սպանիական կղզին: Մարդկան կիրքերը՝ աս գեղեցիկ տեղն ապականութեան դաշտ մ՚ը-րած էին: Կոլոմբոսի ան անխոհեմ գործքը՝ որով գաղթականներուն թիւը շատցընելու համար հրաման տուած էր, որ բանտի ու թիակի դատապարտուած յանցաւորները նոյն տեղը խրկուին, ատոր շատ օգնած էր: Ռոլտանին գլուխը ժողված մարդիկները գրեթէ բոլոր ասոնցմէ էին:

Ծովապետն հոն հասած ատեն չկրնա-լով զՌոլտան նուաճել՝ յանձն առաւ որ հետը դաշնադրութիւն ընէ, եւ վերջապէս պարտաւորեցաւ Քսարակուայի մէջ իրեն եր-կիր մը տալ: Բայց իր այնչափ յանցաւորներ բերել տալով ըրած պակսութեան առջեւն առնելու եւ գալի չարիքն արգելելու համար՝ անոնցմէ շատ մարդ նաւ դրաւ Սպանիա խաւ-րեց, եւ որպէս զի անոնք Սպանիայի մէջ ի-րեն դէմ բան մը չհանեն, հետերնին իրեն

Հաւատարիմ մնացող մարդիկներէն ալ քանի մը հոգի խաւրեց, եւ ինք Ս. Դոմինիկոս կեցաւ:

Շատ չանցաւ նոյն իսկ ապստամբներն ալ մէջերնին բաժնուեցան: Կուաւերա անունով երիտասարդ ասպետ մը՝ Անագոանային աղջկան հետ ուզեց կարգուիլ: Ռոլտան աս բանիս դէմ կեցաւ: Սպանիացի ասպետն ալ իրմէ ապստամբեցաւ, ու բուն Ռոլտանին կողմնակիցներէն շատերն իր կողմը ձգեց: Ապստամբութիւնը շատ մեծցաւ ու զօրացաւ՝ աս ասպետին ազգականներուն օգնութեամբը, որոնք յառաջագոյն Ռոլտանին բարեկամներն էին, բայց անոր՝ ծովապետին քիչ մը գլուխ ծռելէն ետքը՝ իրմէ հեռացած էին: Ան ատեն Ռոլտան ապստամբներէն եօթը հոգի բռնեց բանտարկեց: Ծովապետն ալ աս գործքիս հաւանեցաւ: Աս որ եղաւ, Մղքուիկա՝ Կուաւերային ազգականներէն մէկը՝ դաւաճանութիւն մը կազմեց, որ թէ՛ զծովապետն ու անոր եղբայրը եւ թէ՛ զՌոլտան սպաննէ:

Ծովապետը ժամանակին աս դաւաճանութիւնն իմացաւ. եւ տեսնելով որ ամէն քաղցրութեան միջոցները, թողութիւնները, դաշինքներն ու ներումը՝ ամենեւին օգուտ չեն ըներ, միտքը դրաւ որ աս ապստամբներուն հետ խստութեամբ վարուի:

Զօրքով վրանին գնաց. Մոքսիկան ու ընկերները բռնեց, եւ իր իշխանութիւնն ի գործ դնելով՝ զՄոքսիկա կախել տուաւ: Մէկալ ապստամբ ընկերներն ալ ետեւէ ետեւ նոյն պատժով պատժուեցան, եւ այսպէս ամէն բան կարգի մտաւ:

Ան ատեն Կոլոմբոս սկսաւ նորէն սիրտ առնել: Ապստամբներուն յաղթած էր, ամէն կողմ իրեն կը հնազանդէին: Գաղթականներուն երկիրներ բաժնեց. քահանաներն սկսան Հնդիկներէն շատերը կրթել ու դարձընել: Շատերը իրենց կամօքը զգեստ հագնել սկսան, եւ ամէն բան աղէկ կ'երթար: Կղզւոյն մշակութիւնը կարգաւ կանոնով կը յառաջանար: Ասով Կոլոմբոս կը յուսար որ գաղթականութիւնն ալ կը յաջողի, ուստի միտքը դրաւ որ քիչ մը հանգչելէն ետեւ՝ նորէն երկիրներ գտնելու ետեւէ իյնայ:

## Գ.

### Պովատիլլա:

Սպանիական կղզիէն ելած նաւերը Եւրոպա հասան: Ցժգոհները Սպանիա մտնելուն պէս՝ ծովապետին եւ իր եղբօրը վրայ սկսան տրտնջել: Աս չարագործները գունդ գունդ ժողվելով՝ փողոցներն ու հրապարակները ծովապետին վրայ սաստիկ գէշ կը խօսէին: Թագաւորը կամ թագուհին տեսած

ստեններին՝ ձայներնին կը բարձրացընէին, եւ անոնց դիմելով՝ իրենց թօշակն ու ըրած կորուստներնուն համար հատուցում կը պահանջէին: Ճամբան ծովապետին Տիէկոյ ու Փերդինանդ որդիքը տեսած ատեններնին՝ կը սկսէին պոռալ կանչվռտել թէ ահա ան օտարական մարդուն որդիքը, որն որ ուրիշ բանի համար Նոր երկիր չգտաւ՝ բայց եթէ Կաստիլիացի ազնուականներուն գերեզման պատրաստելու:

Աս բաները տեսնելով՝ Թագաւորն ու Թագուհին սկսան վախնալ որ Կոլոմբոս կամ կառավարութենէ չհասկընար եւ կամ գիբենք կը խաբէ: Թագաւորը կը կասկածէր թէ գուցէ ծովապետը միտքը դրած է որ գլուխ քաշէ եւ ինքնիշխան ըլլայ ան կողմերը: Իսկ Եղիսաբէթ սաստիկ վշտացաւ որ իր յայտնի հրամանին դէմ նորէն Հնդիկներ խրկած էին որ գերի պէս ծախուին*: Թագաւորին ու Թագուհւոյն տժգոհութիւնը չորս կողմանէ աւելի եւս գրգռուելով՝ անանկ մեծցաւ, որ որոշեցին ընդարձակ ու մեծ իշխանութեամբ գործակալներ խրկել:

Կոլոմբոս կղզւոյն համար դատաւոր մը խնդրած էր, նոյնպէս ուրիշ իրաւարար մը իրեն ու Ռոլտանին մէջտեղը գտնելու հա-

* Աս Հնդիկները՝ Թագուհւոյն հրամանը Կոլոմբոսին ձեռքը չհասած՝ ճամբայ դրուած էին:

մար։ Թագաւորն աս երկու պաշտօնը մէկ հոգւոյ վրայ միացուց, ու աս իշխանութեամբ զՏոն Փրանկիսկոս տէ Պօվատիլլա ճամբայ հանեց։ Ասիկա պիտ'որ երթար ամէն բան քններ, եւ թէ որ հարկաւոր տեսնէր նէ՝ ծովապետն ու իր եղբարքը վար առնելով՝ ինք անոնց տեղը պիտ'որ անցնէր։ Ստուգիւ մեծ անկողմնակալութիւն ու մեծանձնական արդարասիրութիւն մը պէտք էր աս գործքը գլուխ հանելու համար։ Իսկ Պօվատիլլա չէ թէ միայն ծովապետին դէմ սաստիկ նախապաշարում ունէր, հապա նաեւ իր անձնական շահը փնտռող մարդ մըն էր։

Ասիկա 1500ին, Օգոստոսի 23ին Ս. Դոմինիկոս հասաւ, եւ իմացաւ որ Կօլոմբոս իր Բարթողիմէոս եղբօրը հետ Քսարակուա գացած էր հոն մնացած փախստականները բռնելու, եւ թէ ապստամբներէն եօթը հոգի նոյն շաբթուան մէջ սպաննել տուած էր, ու հինգ հոգի ալ նոյն պատժոյ պիտ'որ դատապարտուէին։ Դեռ նաւէն չելած՝ ասոնք լսելով, միտքը դրաւ որ Կօլոմբոս յանցաւոր է, ուստի եւ ոչ հարկաւոր սեպեց պատճառը քննելու՝ թէ ինչու համար ծովապետն աս խստութիւնը բանեցուցած էր։

Երկրորդ օրը նաւէն ելաւ, եւ անմիջապէս բարձր ձայնով իր իշխանութեան թղթերը կարդացընել տուաւ. ետքը հրամայեց

Տիէկոյ Կոլոմբոսին՝ որն որ եղբարցը հեռաւորութեան ատեն հոն մնացած էր, որ ան հինգ բանտարկուածներն իրեն յանձնէ։ Տիէկոյ պատասխան տուաւ թէ պէտք է ծովապետին դառնալուն սպասել կամ անոր գրել ու թագաւորական հրամանագրին օրինակն իրեն խաւրել։ Պովատիլլա սաստիկ բարկանալով՝ թագաւորին երկրորդ մէկ թուղթը կարդալ տուաւ, որն որ իրեն իշխանութիւն կու տար հարկաւոր եղած ատեն Կուսակալի անունն առնելու։

Նոյնպէսով անմիջապէս ինքը զինքը կղզւոյն կուսակալ հրատարակեց, պնդելով որ հինգ բանտարկուածները իրեն յանձնուին։ Տիէկոյ Կոլոմբոս քաղցրութեամբ ըսաւ թէ ես թագաւորին հրովարտակը կը յարգեմ, բայց բանտարկուածներուն համար միայն ծովապետին պատասխանատու եմ, մինչեւ որ թագաւորական հրամանն իրեն ծանուցուի. ինչու որ իր փոխարքայութեան իշխանութիւնը՝ հասարակաց իշխանութենէն շատ վեր է։ Ան ատեն Պովատիլլա երրորդ թուղթ մը դուրս հանեց, որով իրեն հրաման կը տրուէր հարկաւոր եղած ատեն՝ բոլոր ամրոցները, նաւերուն եւ թագաւորին ու թագուհւոյն վերաբերած ամէն բաները իր իշխանութեան տակ առնելու։ Եւ այսպէս ելաւ ամրոցին վրայ գնաց։ Միքայէլ Տիազ

ամրոցին հրամանատարը ժամանակ խնդրեց եւ թղթերն ուզեց տեսնել: Իսկ Պովատիլլա առանց պատասխան տալու՝ իր նաւուն մարդիկը ժողվեց, եւ յարձակեցաւ մտաւ ամրոցին մէջ, ուր որ Միքայէլ Տիազէն ու մէկ ուրիշ պաշտօնակալէն զատ մարդ չգտաւ: Անոնք ալ ամենեւին չընդդիմացան, եւ թողուին որ բանտարկուածներն առնեն:

Այսպէս Պովատիլլա իր իրաւանց ու իշխանութեան չափէն դուրս ելաւ: Իրեն եւ տեւէ եւտեւ երեք թուղթ տուած էին, որ զանոնք գործածէ Նէ որ Կոլոմբոս յանցաւոր գտնուելու ըլլայ. իսկ ինք առանց յառաջագոյն քննելու եւ լսելու՝ յանցաւոր գտեց զԿոլոմբոս, եւ անմիջապէս երեք թուղթն ալ Հրատարակելէն զատ՝ յանդգնութեամբ մը սկսաւ սպառնալ որ "Ջեռուըներն ու ոտուըները կապած Սպանիա պիտ՚որ խրկեմ զինքը, անանկ որ ո՛չ ինք եւ ո՛չ ալ իր սերունդը կարող ըլլայ ուրիշ անգամ աս կղզին ոտք կոխել":

Ծովապետը Քսարակուայի մէջ աս ամէն գործքերը լսելով՝ միտքը դրաւ որ Պովատիլլա յանդուգն բախտախնդիր մըն է, որ եկած է իր իշխանութիւնն ու իրաւունքները խարդախութեամբ յափշտակելու: Արդէն տարի մը կար, որ երկու անգամ զանազան նաւեր եկած ու նաւապետները ցամաք ելլելով

Հրատարակած էին որ Կոլոմբոս երեսէ ձգուած ու իշխանութենէն ինկած է։ Բայց ինք զիրենք ստիպած էր որ ետ դառնան, եւ Հրատարակած լուրերնին պարզ խաբէութեան կամ շատխօսութեան տեղ դրած էր։ Ծովապետն աս մնաց վրայ եղած ատեն՝ իր գտնուած տեղը Պովատիլլային կողմանէ պաշտօնատէր մը եկաւ ու Պովատիլլային կղզւոյն կուսակալ անուանուիլը Հրատարակեց։

Ասով Կոլոմբոսի շփոթութիւնն աւելցաւ։ Պովատիլլա իրեն մարդ մ'ալ չէր խրրկեր, եւ անանկ անամօթութեամբ կը վարուէր որ ամենուն ծանր մարդէ մը ու թագաւորէն այնպիսի ընդարձակ իշխանութիւն ունեցողէ մը չէր կրնար յուսացուիլ։ Ծովապետն ան ատեն եղաւ Պովատիլլային՝ թագաւորին ու թագուհւոյն կողմանէ խրրկուած մեծ մարդու մը պէս, ամենայն չափաւորութեամբ թուղթ մը գրեց։ Բայց պատասխան չառաւ։ Ասանկ մեծ ու անտանելի անձկութեան ու նեղութեան մէջ եղած ատեն՝ մէյ մ'ալ իմացաւ որ նոր կուսակալը Ռոլտանին ու անոր կողմնակիցներուն թագաւորին ու թագուհւոյն ձեռքով ստորագրուած թղթեր խրկեր է. որոնց մէջ իրենց խոստմունքներ ու շնորհաւորութիւն կ'ընէ եղեր։ Ասոնք թագաւորին ու թագուհւոյն

ստորագրութիւնն ունեցող ճերմակ թղթեր էին, որոնք առ անարժան պաշտօնեան ձեռքն ունենալով՝ ուզածը մէջը կը գրէր, եւ իր կողմնակիցներն ու ծովապետին թշնամիները շատցընելու կը գործածէր։

Կոլոմբոս՝ որն որ Ովկիանոսի վրայ ծովապետ, ու գտնուած կամ գտնուելու բոլոր երկիրներուն փոխարքան էր, չէր կրնար հաւատալ որ Թագաւորն ու Թագուհին առանց զինքը քննելու կամ լսելու, եւ յառաջագոյն իրեն բան մը չիմացուցած՝ այսպէս մէկէն ի մէկ զինքը վար ձգեն։ Ուստի եւ հրատարակեց որ Թագաւորն ու Թագուհին իմ իշխանութիւնս ի մշտնջենաւորս տուած ըլլալով, նոր խրկուած գործակալը չէր կրնար Ակուատոյին տրուած իշխանութենէն աւելի մեծ զօրութիւն ունենալ։

Բայց քիչ մը ետքը ստիպուեցաւ կարծիքը փոխելու։ Երկու Թագաւորական պաշտօնատէրներ բերին Թագաւորին ու Թագուհւոյն ձեռքով ստորագրուած թուղթ մը տուին իրեն, որով կը հրամայէին որ Պովատիլլային ամէն խօսքին հաւատայ։ Միանգամայն նոր կուսակալն իրեն կը հրամայէր որ իր առջեւն ելլէ դատուելու համար։ Կոլոմբոս ասոր վրայ սաստիկ այլայլեցաւ, բայց միտքը դրաւ որ հնազանդի, եւ հպատակելովը ցուցընէ թէ իր վրայ եղած կասկա-

ծանկքները բոլորովին անհիմն բաներ են։ Ելաւ առանց բազմութեան Ս. Դոմինիկոս գնաց, միտքը դնելով որ հարկ ըլլայ նէ՝ բոլոր իր իշխանութիւնները Նոր կուսակալին ձեռքն յանձնէ։

Բայց երբ որ մէկ կողմանէ ծովապետն այսպէս խաղաղութեամբ ու հանդարտութեամբ կ՚երթար, մէկալ կողմանէ Պովատիլլա բոլոր զօրքը պատրաստ կը բռնէր, իբրեւ թէ Կոլոմբոս զօրքով ու զէնքով իր վրայ քալէր, եւ այնպէս բերան կը բանեցընէր թէ ծովապետը կամօք անձնատուր չ՚ըլլար։ Ուստի զարմացաւ մնաց երբոր տեսաւ թէ անիկա առանձին ու չափաւոր ծառաներով ելած եկած էր։ Սակայն առանց զինքը տեսնելու, առանց լսելու կամ խօսելու՝ Կոլոմբոս քաղաքին դրան առջեւը հասնելուն պէս՝ հրամայեց որ բռնեն, ոտուըներն ու ձեռուըները շղթայի զարնեն, եւ ամրոցին մէջ պահեն։

Զ Կոլոմբոս երկաթի զարնել՝ ա՛ն երկրին վրայ, զորն որ ինք Սպանիայի ընծայած էր։ Աս մոտածմունքէն նոյն իսկ իր թշնամիներն ալ այլայլեցան։ Մէկը չէր համարձակեր բռնաւորին հնազանդելով՝ ծովապետը շղթայի զարնել, կարծես թէ երբեք այնպէս մեծարոյ ու պատկառելի երեւցած չունէր՝ որչափ երեւցաւ ան ատեն երբոր զինքը նախատանօք ծածկել կ՚ուզէին։ Բայց երբոր

ուրիշները կը հրաժարէին, իր տանը ծառաներէն մէկը շղթաները կապեց: Կոլոմբոսի ցաւն ու կսկիծը չափէ դուրս էր: Թագաւորին ու թագուհւոյն ապերախտութիւնը սիրտը կտոր կտոր կ'ընէին: Միայն իր մեծանձնութիւնը զինքը հաստատուն կը բռնէր: Այսպիսի մեծ տառապանքը մեծագոյն եւս երկայնմտութեամբ քաշեց:

Նոյնպէս Տիէկոյ Կոլոմբոս ալ բանտի մէջ էր: Բայց Պովատիլլա Բարթողիմէոսին վրայ շատ անհանգիստ կ'ըլլար, վասն զի անիկա դեռ Քսարակուայի մէջ էր եւ քովը զօրք ալ ունէր: Բարթողիմէոսին քաջասրտութիւնն արդէն յայտնի էր. կրնար ըլլալ որ իր եղբօրը վրէժն ուզէր խնդրել: Անոր համար կուսակալը ծովապետին յանձնեց որ զինքը հնազանդութեան յորդորէ: Կոլոմբոս աս բանս ալ յանձն առնելով՝ եղբօրը գրեց որ թագուհւոյն հրամանին գլուխ ծռէ ու Ս. Դոմինիկոս դառնայ: Ժամանակը, կ'ըսէր, մեր անմեղութիւնը կը յայտնէ: Բարթողիմէոս զէնքերը վար ձգեց եւ հետեւեցաւ եղբօրը ձայնին, զոր միշտ յարգած էր. եկաւ Ս. Դոմինիկոս, ուր որ խաւար բանտ մը դրուեցաւ՝ առանց եղբօրն երեսը տեսնելու: Պովատիլլա անգթութիւնն ան աստիճանի հասուց, որ երեք եղբարք մէկմէկէ զատ կը պահէր, եւ թող չէր տար որ իրարու հետ տեսա-

նուէին. ոչ բարեկամներնին իրենց կը մօտիկցընէր եւ ոչ ալ իրենց դէմ եղած ամբաստանութիւնները կը ծանուցանէր:

Ասոնցմէ յանդգնելով՝ իրենց թշնամիները ասդին անդին իրենց դէմ նախատական գրուածներ կը կպցընէին, ու նոյն իսկ ան չարագործները՝ զորոնք Կոլոմբոս անխոհեմութեամբ բերել տուած էր, կու գային բանտին պատուհանին առջեւը զիրենք կը նախատէին: Երբեմն ծովապետին միտքը կու գար որ գուցէ Պովատիլլա զինքը կը մեռցընէ: Աս մտածմունքով բոլորովին կը վհատէր. որովհետեւ թէ որ աս ըլլար նէ՝ անուննն աշխարհքիս վրայ միշտ նախատուած կը մնար: Եւ աս բանս գերութենէ ու նոյն իսկ մահուանէ աւելի զինքը կը չարչարէր:

Նոյն միջոցին Պովատիլլա փութով ամէն տեսակ ամբաստանութիւնները կը ժողվէր, որոնք զԿոլոմբոս թագաւորին ու թագուհւոյն առջեւը կրնային յանցաւոր ցուցընել: Թշնամիներուն ամէն ըսածները մտիկ կ'ընէր, ամէն բանի կը հաւատար, ամէն բան նոյն իսկ այնպիսի ամբաստանութիւնները՝ որոնք Կոլոմբոսի բնութեան բոլորովին դէմ էին, կ'առնէր կը գրէր: Երբ որ ամէն այսպիսի ամբաստանութիւնները ժողվեց ու բաւական համարեցաւ, ան ատենը ծովապետն ու իր եղբայրը Սպանիա խաւրել ուզեց, որ հոն դատապարտուին:

Դժբախտ Կոլոմբոս օր մը տեսաւ որ պաշտօնակալ մը պահապաններով բանտը կը մտնէ։ Միտքը տխուր մտածմունքներով պաշարուած ըլլալով՝ այնպէս կարծեց որ զինքը մեռցընելու կու գան։ Գլուխը վերցուց, եւ անպատմելի տրտմութեամբ մը պաշտօնակալին երեսը նայելով՝ Վիլլէոյ, ըսաւ, զիս ո՞ւր կը տանիս։ — Նաւ, Տէր իմ։ — Աս մէկ խօսքը ծովապետին նոր կենդանութիւն ու գրեթէ ուրախութիւն մը տուաւ։ Եւ սկսաւ կանչել. Նա՞ւ։ Ճշմարի՞տ կ'ըսես. իրաւցընէ նա՞ւ պիտ'որ մտնենք։ — Կ'երդնում, Տէր, ըսաւ Վիլլէոյ, որ ըսածս ճշմարիտ է։ Կոլոմբոս ան ատեն սրտանց շնորհակալ եղաւ Աստուծոյ. որովհետեւ այնչափ դառն նեղութիւններէն աս ազատութիւնը չէր կրնար յուսալ։ Վիլլէոյ բարեսիրտ եւ ազնուամիտ մարդ մըն էր. ծովապետը Սպանիա տանելու յանձն առած ատեն՝ աս միտակ կը մտածէր որ անոր դառն վիճակը որչափ որ կարելի է՝ քաղցրացընէ։ Թէպէտ չկրցաւ Ս. Դոմինիկոսի անարգ ժողովուրդն արգելել որ Կոլոմբոսի անցած ատենը զինքը չթշնամանեն. բայց միշտ ցաւակից կ'ըլլար ծովապետին, որն որ ասով այնչափ աւելի կը մխիթարուէր, որչափ որ շատ ատենէ վեր նախատանաց ու թշնամութեան խօսքերէ ուրիշ բան լսած չունէր։

Նաւը ճամբայ ելլելուն պէս՝ Վիլլէոյ յարգութեամբ մը ծովապետին մօտիկցաւ եւ հրաման խնդրեց որ շղթաները քակէ։ Չէ, ըսաւ Կոլոմբոս մեծանձն արիութեամբ. Թագաւորն ու թագուհին ինծի գրած են, որ Պովատիլլային իրենց անունովը ինծի ամէն հրամայածին հնազանդիմ։ Աս շղթաները պիտ'որ կրեմ մինչեւ որ իրենք հրամայեն որ հանուին. Նոյն շղթաները իբրեւ իմ ծառայութեանս համար ընդունած հատուցմանս յիշատակ մը պիտ'որ պահեմ։ Վիլլէոյ աս պատասխանին զօրութիւնն իմացաւ։ Եւ բանտարկելոյն ցուցուցած մեծարանքովը՝ այնպիսի մեծ մարդու մը եղած անիրաւութեան վրայ ունեցած ներքին տհաճութիւնը կը յայտնէր։

## Գ.

### *Կոլոմբոսի արդարանալը։*

Քանի որ տժգոհ ու խռովարար մարդիկները ետ դարձած էին, Սպանիայի մէջ ամէն մարդ գաղթականներուն կողմը կը բռնէր ու Կոլոմբոսի կառավարութիւնն անպիտան ու բռնական կը սեպէր. բայց երբոր լսեցին թէ ինք շղթայի զարնուած ետ կը դառնայ, բոլոր բարկութիւննին անոր թըշնամիներուն վրայ դարձուցին։ Ալ անկէ ետքը չէին հարցըներ թէ ինչ ըրած է։ Հասարա-

կայ ամենուն տհաճութիւնը Պովատիլլային բռնած ճամբան վրայ կը զարնէր։ Ամէն մարդ-արդար բարկութեամբ ու զարմացմամբ կը կրկնէր սա խօսքը թէ Կոլոմբոս երկաթի տակ ան երկրէն ետ կը բերուի, որն՝ որ իր մտացը ճարտարութեան գիւտն է...։ Աս ձայնն ու աղաղակը բոլոր Սպանիացիներն իր կողմը դարձուց, եւ զինքը բերող նաւը Գատիս հասած ատեն՝ նաւահանգիստը սաստիկ շատ մարդիկներով լեցուեցաւ, որոնք իր դժբախ-տութեան մասնակից ըլլալով՝ աչուըներնուն արցունքովը սրտերնուն ցաւը կը ցուցընէին։ Պովատիլլա սոսկալի ամբաստանութիւննե-րով քննութեան թուղթ մը խրկած էր. բայց դեռ աս թուղթն ի պաշտօնէ արքունեաց ձեռքը չհասցուցած, նաւապետը թող տու-ած էր որ Կոլոմբոս սուրհանդակով մը իր արդարացուցման թուղթը խրկէ։

‘Նոյն թուղթը կարդացուեցաւ Կրանա-տա՝ ուր որ թագաւորն ու թագուհին կը գտնուէին, եւ ամենուն սիրտն իրեն կողմը միտելով՝ աս մեծ մարդուն եղած անիրաւու-թեան տեղը լեցընելու կը բաղձային։ Թղթին մէջ Կոլոմբոս պարզապէս դէպքերը կը պատ-մէր. բայց նոյն դէպքերն իր թշնամիներուն ըրած բռնութիւնն ու անգթութիւնը յայտ-նապէս կը ցուցընէին։ Թագուհին սաստիկ նեղացաւ ու սրտմտեցաւ տեսնելով որ ան

աստիճանի իր անուամբը չարաչար վարուած էին. Եւ անանկ գութ ու կարեկցութիւն ունեցաւ, որ անկից ետքը միայն անոր ետեւէն կ'իյնար որ ցուցուցած սիրովը ու պատուովը Կոլոմբոսի կրած նախատինքներն ու վիշտերը ջնջէ։ Ծովապետը դեռ Գատիս եղած ատեն՝ Թագաւորէն ու Թագուհիէն թուղթ մ'ընդունեցաւ, որուն մէջ դառնութեամբ կ'ողբային իրենց անուամբն ու առանց իրենց գիտութեան ու հաճութեան գործուած չարիքներուն ու իրեն եղած նախատինքներուն վրայ։ Միանգամայն իրեն երկու հազար ոսկի կը խրկէին, որպէս զի պատրաստուի որչափ կարելի է շուտով արքունեաց առջեւն ելլելու։

Կոլոմբոս հասաւ հոն նոյն թշուառ ու յիշատակաց արժանի տարւոյն (1500) Դեկտեմբերի 17ին։ Արքունեաց մէջ իբրեւ ծովապետ ու փոխարքայ հետը շատ բազմութեամբ ներկայացաւ, ու մեծ հանդիսութեամբ ալ ընդունուեցաւ։ Թագաւորական գահին մօտեցած ատեն՝ Թագուհին աս երեւելի մարդուն մեծարոյ կերպարանքը տեսնելով, եւ յիշելով միանգամայն իր գործքերն ու կրած արհամարհութիւնները՝ արցունքը չկրցաւ զսպել եւ սկսաւ լալ, բոլոր իր շարժուածքը ներքին այլայլութիւնը յայտնի կը ցուցընէին։ Թագուհւոյն սրտին շարժ-

մունքը տեսնելով՝ ծովապետին սիրտն ալ ելաւ, ուստի եւ լացով ողբով աղանց խօսք մը կարող ըլլալու ըսել՝ Թագուհւոյն ոտքն ինկաւ ու չէր կրնար իր արտասուախառն հառաչանքը դադրեցընել: Բոլոր հանդիսականներուն սիրտը տխրութիւն ու ներքին ցաւակցութիւն մը պատեց, որ արտաքուստ ալ ամենուն երեսէն կ'երեւար: Անիկա իրեն համար նոր յաղթանակ մըն էր, իր պատուոյն եւ անմեղութեան յաղթանակը: Ետքը բոլոր արքունեաց առջեւը այրական քաջասրտութեամբ ինքը զինքն արդարացուց, այնպէս որ ամենուն բարկութիւնը իր թշնամիներուն վրայ կը շարժէր. իր՝ Թագաւորին ու Թագուհւոյն ունեցած հաւատարմութիւնը, եւ անոնց իշխանութեան փառաւորութեանը համար ունեցած եռանդը յայտնի ցուցուց: Վերջապէս խնդրեց որ իր յանցանքները իր սրտին չորութին, հապա դժուարին ու արտաքոյ կարգի պարագաներուն՝ որոնց մէջ գըտնուած էր:

Թագուհին բոլորովին իր անմեղութեանը վրայ համոզուեցաւ, ու յայտնի ալ վկայեց: Իսկ Կոլոմբոս տեսնելով որ իր ծառայութիւններուն եւ իր բարձր աստիճանին արժանի եղած ամէն տեսակ պատիւն իրեն կ'ընեն, սկսաւ յուսալ որ ամէն կերպով իրեն իրաւունք կ'ըլլայ: Բայց կարծես թէ իրեն

բախտն ան էր որ մարդիկներէն ունեցած ակնկալութեանց մէջ միշտ խաբուի: Շատ չանցաւ՝ իմացաւ որ Փերդինանդոս ալ Եղիսաբեթին պէս իրեն դէմ եղած ամբաստանութիւններուն ստութեանը համոզուած չէ, գոնէ անոնց մէկ մասին կը հաւատայ. մանաւանդ իր հաւատարմութեանը վրայ կը տարակուսի: Այսանկ տարակուսանաց մէջ իր միտքը կասկած մ՚ալ ձգեցին որ Կոլոմբոս փառասիրական խորհուրդներ ունի, անոր համար կը վախնար որ չըլլայ թէ անանկ հեռու տեղուանք ծովապետն անկախ տէրութիւն ստանալ ուզէ. ուստի միտքը դրաւ որ իրեն փոխարքայի անուան համեմատ կարողութիւնն ու իշխանութիւնը ամենեւին չտայ: Իրեն միտքն ունեցած բաները պահելով՝ փուճ խոստումներով զԿոլոմբոս կը խաբխըբէր ու ամէն բան կ՚երկընցընէր:

Թէպէտ Պովատիլլա ետ կանչուեցաւ, որովհետեւ ծովապետին դէմ ըրածներէն զատ՝ կղզեցւոց հետ ա՛լ արտաքոյ կարգի բռնութեամբ ու խստութեամբ կը վարուէր, բայց Կոլոմբոսին ալ ըսին որ Սպանիական կղզին դառնալդ՝ քեզի ապահով բան չէ. պէտք է քիչ մը ատեն թող տաս որ թշնամիներդ հանդարտին, ու երկու տարուան համար խոհեմ կառավար մը ընտրուի, որ եղած չարեաց դարմանն մ՚ընելով՝ բաները

կարգի մտնեն: Աս կառավարն եղաւ Նիկողայոս տէ Օվանտոյ, որն որ աս գործքին յարմար մարդ չէր:

## Ե.

### Կոլոմբոսին թող չեն տար որ Ս. Դոմինիկոսի նաւահանգիստը մտնէ:

Կոլոմբոս անգործ չկրնալով կենալ, մտածեց որ վերջի անգամ տեսած ցամաքին Հիւսիսային եզերքին կողմանէ նաւելով՝ անտարակոյս նեղուց մը կը գտնէ, որ արեւմտքի դիէն Ասիային ծովն անցընէ: Փերդինանդոս աս խորհրդին հաւանեցաւ, եւ Կոլոմբոս 1502ին Մայիսի 9ին չորս պզտիկ նաւերով ճամբայ ելաւ. իրեն հետ մէկտեղ էին Բարթուղիմէոս եղբայրն ու Փերդինանդ իր երկրորդ որդին: Աս քաղցր ընկերութիւնն իրեն հարկաւոր էր. վասն զի Սպանիացւոց մէջ օտարական ըլլալով՝ շատ բան քաշած էր հետն հաւատարիմ սիրտ մը գտած չըլլալուն համար: Իրեն փառաւոր գիւտէն ետեւ 10 տարի անցած էր, եւ ան ատեն զգացած կարճ ուրախութեններն ետքը այնչափ դառնութիւններ կրած էր՝ որ առողջութիւնն ալ տկարացած էր: Զանազան հիւանդութիւնները, անհանգստութիւնը, կարօտութիւնը, շատ անգամ արթուն կենալը, կլիմաներու փոփոխութիւնը՝ կամաց կամաց իր առողջու-

թիւնն ապականած էին. եւ տանելով դարմաններու եւ հոգացողութեան կարօտ եղած էր։ Բայց տեսնենք թէ ինչե՛ր ալ պիտ՚որ պատահէին իրեն՝ աս թագաւորին ու թագուհւոյն ծառայութեան համար ըրած չորրորդ ճամբորդութեան մէջ։

Կանոնաւոր հողմերը զԿոլոմբոս հանդարտութեամբ մինչեւ Գարայիբեան կղզիները հասցուցին. հոն հովին ընթացքը փոխեց։ Արդէն որոշուած էր որ Սպանիական կղզին չկենայ. բայց ՚նաւերուն մէկն անանկ պզտիկ ու գէշ էր՝ որ ասանկ մէկ երկայն ճամբորդութեան մը չէր կրնար դիմանալ, ուստի Կոլոմբոս ուզեց որ ան նաւը տալով՝ Օվանտոյին բերած 34 նաւերէն մէկն առնէ։ Անոր համար Ս. Դոմինիկոսի նաւահանգիստը մտեցաւ։

Անանկ կ'երեւայ որ Օվանտոյ ծածուկ հրաման մ'առած ըլլայ զԿոլոմբոս Ս. Դոմինիկոս չխոթելու։ Երբ որ ծովապետն ուզեց ան մէկ նաւը փոխել եւ կամ նաւ մը գնել, անիկա քաղաքավարական բայց հաստատուն եղանակաւ յանձն չառաւ։ Ծովապետը քանի մը օրէ վեր մրրկի մը յայտնի նշաններ կը տեսնէր. ուստի հրաման ուզեց որ քիչ մը ատեն նաւահանգստին մէջ կենայ։ Օվանտոյ աս ալ յանձն չառաւ։ Կոլոմբոս մեծ տրտմութեամբ ձգեց գնաց, տեսնելով որ

իրեն գտած նաւահանգիստը այնպիսի նեղութեան ատեն՝ իրեն դէմ գոցուեցաւ։ Անդիէն նաւերին մարդիկն ալ սկսան յայտնի տրտնջել եւ աւաղել որ ասանկ դժբախտ ու երեւէ ինկած մարդու մը հետեւեցան, որն որ Սպանիական նաւահանգստի մը մէջ մտնել չկըրնալնուն պատճառ կ'ըլլար։

Բայց Կոլոմբոս իմանալով որ Պովատիլլա, Ռոլտան եւ ուրիշ չարագործներն ու իր թշնամիները Սպանիա տանող նաւերը ան օրերը ճամբայ պիտ'որ ելլեն, սաստիկ մեծանձնութեամբ մը ուզեց թէ նաւերը եւ թէ իր թշնամիներուն կեանքերն ազատել։ Օվանտոյին մարդ խաւրեց՝ աղաչել տուաւ, որ գոնէ Սպանիա մարդ տանող նաւերուն ելլելն ուշացընէ, ըսելով որ ստուգիւ մըրկէն պիտ'որ կորսուին։ Իսկ ինծի ուրիշ ճար չիմնար, ըսաւ, բայց եթէ ծովեզրներուն մօտերը նաւել, որովհետեւ նաւահանգիստ մտնելու թող չէք տար։ Բայց իրեն ազդարարութիւնն արհամարհուեցաւ. ծովը խաղաղ եւ օդը պայծառ ըլլալով՝ իր գուշակութեան չհաւտացին եւ նաւերը ճամբայ ելան։ Ամենէն մեծ նաւը ահագին ոսկի բեռնաւորած կը տանէր, որն որ Հնդիկներուն տառապանացն ու քրտանցը պտուղն էր։ Ան նաւուն մէջն էին Պովատիլլա, Ռոլտան ու Կուարիոնէքս Վեկայի դժբախտ ցեղապետն ալ՝ որն որ ե-

ըեք տարիէ վեր գերի մնացած էր։ Ամենէն պզտի նաւուն մէջն ալ ծովապետին 4000 ոսկի դահեկանները կային։

Կոլոմբոսին գուշակածին պէս՝ քանի մը օր ետքը սոսկալի ալէկոծութիւն մ'ելաւ, որն որ կը ծագէր արեւադարձներուն ան մրրիկներէն՝ որ անտառները կը խլեն, կը կոտրեն, իրենց ճամբուն վրայ գտած ամէն բաները տակն ու վրայ կ'ընեն ու ծովին ջուրը սարսափելի բարձրութեան մը կը հանեն . . . ։ Կոլոմբոս իր տկար նաւերը ծովեզերաց քով ապահովցուց։ Երկրորդ իրիկունը անանկ թանձր խաւար եղաւ, որ նաւերն իրար չէին կրնար տեսնել։ Կոլոմբոս իր նաւն աւելի ցամաք մօտեցուց. իսկ Բարթողիմէոս ցամաքէն հեռանալովը քիչ մնաց կը կորսուէր. բայց վերջապէս մրրկէն ետքը չորս նաւն ալ Ս. Դոմինիկոսի արեւմտեան մէկ նաւահանգստին մէջ իրար գտան։ Հոն իմացան որ Սպանիացւոց նաւատորմիղը գրեթէ բոլորովին կորսուած է։ Պովատիլլան ու Ռոլտան տանող հարուստ նաւն ընկղմած էր։ Ան անգութ եղանակաւ ստացուած անիրաւ հարստութիւնները անոնց հետ կորսուած էին. մնացած նաւերն ալ այնպիսի վիճակի մէջ մնած էին, որ չէին կրնար ճամբորդութիւննին յառաջ տանիլ. մինակ մէկ նաւ մը ողջ մնացած էր, այս ինքն՝ ան ամենէն

(

պզտիկ ու ողորմելի նաւը՝ որուն մէջ Կոլոմբոսին ստակը կար։

Կոլոմբոս շատ նեղութիւններով սա ճամբորդութիւնը յառաջ տարաւ։ Անձրեւներն ու մրրիկը 60 օր տեւեցին Սպանիական կղզւոյն մօտերը, եւ շատ անգամ նոր մրրիկներու պատահեցաւ՝ երբ որ Գարայիպեան ծովուն մէջ կը նաւարկէր։ Շատ ալէկոծութիւն տեսած եմ, կ՚ըսէ Կոլոմբոս, բայց ասանկ սաստիկ տեսած չունիմ։ Երբ որ Ս. Դոմինիկոսի ծովեզրներէն կրցաւ ելլել՝ դէպ ի հարաւ քալեց ու Պարտէզ Թագուհւոյն ըսուած կղզիներն անցնելով՝ ուրիշ կղզիներու բազմութեան պատահեցաւ, որոնց մէջ զանազան ծառերով զարդարուած շատ բարձր կղզի մը գեղեցիկ տեսք մ՚ունէր։ Բարթողիմէոս նոյն կղզին Եղեւիններու կղզի անուանեց, որ հիմա Կուանակա կ՚ըսուի։

## Ձ.

### Զարմանալի դիպուած մը։ — Կոլոմբոս Ցարիկեի ծովածոցը կը գտնէ։

Հոն Կոլոմբոսին զարմանալի բան մը պատահեցաւ, եւ շատ հաւանական է որ եթէ անսացած ըլլար՝ իրեն տառապանացը մեծ մխիթարութիւն կրնար գտնել։ — Եւրոպայի ցռկանաւներուն չափ երկայն ծառակուր մը թեթեւ շարժելով դէպ ի Սպանիացւոց

նաւերը կու գար: Երբ որ մէկ կողմանէ Կոլոմբոս հեռուէն զարմանալով կը նայէր, նաւն եկաւ իր նաւուն քով հասաւ. մէջը գտնուող Հնդիկներն անմիջապէս սկսան խօսակցիլ՝ առանց ամենեւին վախ կամ զարմանք մը ցուցընելու: Կոլոմբոս իրենց ան նաւն աղէկ մը դիտելով՝ տեսաւ որ թէպէտ արտաքոյ կարգի երկայն էր, բայց միայն մէկ ծառի բունէն փորուած էր: Մէջը ցեղապետ մը կար, որն որ նաւուն մէջտեղը՝ գոցուած տեղ մը կը նստէր: Ծառակրին մէջ ուրիշ շատ անծանօթ բաներ կային. Եւրոպայի մէջ չճանչցուած հնդիկ նուշ (գագաօ)՝ զորն որ աս Հնդիկները թէ կ'ուտէին; եւ թէ ստըկի տեղ կը գործածէին, պղնձի կացիններ, (կըղզիներուն մէջ եղածները՝ կարծր քարէ էին,) նոյնպէս պղնձի զանգակներ, մարմորէ ու փայտէ շինուած ճարտարագործ գործիքներ ու ամաններ, զանազան գոյներով ներկուած բամբակ, կանանց արկանելիքներ կամ վերարկուներ, տեսակ մը բամբակէ պատմուճան արանց համար, վերջապէս փայտէ սուրեր՝ որոնց երկակողմանի բերանն անանկ եղանակաւ մը կտրուած էր՝ որ մէջը շատ կարծր ու սուր գայլախազ մը դրուած ու ձկան փորոտիքէ շինուած պզտի լարերով հաստատուած էին. աս էր Մեքսիկացւոց սուրը:

Ասոնց մէջէն խելացի ծեր մը Կոլոմբոսին իմացուց որ ինքն ու իր ընկերները արեւմտեան կողմը մեծ երկրի մը վրայ կը բնակին եւ անկից հոն երկու օրուան միայն ճամբայ է. իրենք երկայն ճամբորդութենէ մը կուգան. եւ թէ որ Կոլոմբոս հեռուներին երթալ կ'ուզէ նէ, աւելի հեռու երթալով՝ արեւմտեան կողմը մեծ ու շատ հարուստ թագաւորութիւն մը կը գտնէ, ուր որ շատ ոսկի կայ: Աս վրան խօսած տեղերն էին Եուկադան ու Մեքսիկոյ:

Թէ որ Կոլոմբոս իրենց ետեւէն գացած ըլլար, աս փառաւոր գիւտն ըրած կ'ըլլար, եւ ցամաքին անդիի կողմը կը տեսնէր ան ծովը՝ զորն որ ինք նեղուցին մէկալ կողմը կ'ուզէր գտնել: Բայց դժբախտութեամբ նախապաշարուած ըլլալով որ նոյն անցքը պիտի գտնէ, չուզեց հարաւային արեւելեան ուղղութիւնը թողուլ. Հնդիկներուն շնորհակալ եղաւ, պարգեւներ տուաւ, եւ իրեն ճամբան յառաջ տարաւ: Թէ որ գլխուն գալու չարիքները գիտցած ըլլար, ցամաք կամ հաստատուն երկիրը գտնելու աս գեղեցիկ առիթը շատ ուրախութեամբ կ'ընդունէր: Ստոյգ է՝ Գորդէսին 1515ին Մեքսիկոյ գտած ատեն քաշած դժուարութիւններուն նայելով, պէտք է ըսել որ նաեւ Կոլոմբոս ալ շատ դժուարութիւններ պիտ'որ կրէր, բայց որ-

չափ ալ մեծ ըլլային անդժուարութիւնները, ի վերայ այսր ամենայնի իր քաշածներէն մեծ չէին կրնար ըլլալ:

Քանի մը օր հանդարտութիւն ըլլալէն ետեւ՝ նոր ալէկոծութիւն մ'ելաւ, անընդհատ մրրիկ, փայլատակունք, կայծակներ, որոտումներ, անդադար անձրեւ. մէկ փոթորկին ետեւէն ուրիշ փոթորիկ մը կու գար: Ասանկ ալէկոծութեան մէջ հարկ էր որ ծովապետը միշտ արթուն կենար եւ հսկէր. բայց նոյն միջոցին՝ յօդացաւն անանկ սաստիկ բռնեց որ ստիպուեցաւ անկողին մնալ. սակայն քունը չէր տաներ. անկողինը նաւուն ճոթը՝ ապակիներով ծածկուած տեղ մը դնել տուած էր, եւ միշտ հոնկից երկինքը կը նայէր ու ծովը կը դիտէր եւ անանկով նաւերուն ընթացքը կ'ուղղէր: Շատ անգամ ցաւերն անանկ սաստկացան՝ որ ալ մահուան դուռը հասած կ'երեւար: Ասանկ միջոցներուն՝ իր եղբօրն ու որդւոյն վիճակը մտածելով, որոնք հարիւր յիսուն նաւորդներու հետ անանկ ալէկոծած ծովու վրայ մնացած էին, շատ անհանգիստ կ'ըլլար: Բայց եղբօրն ու որդւոյն քաջասրտութիւնը զինքը կը հանդարտեցընէին. եւ բարեպաշտ յուսով մը իր սուրբ սովորութեան համեմատ ինք զինքը Աստուծոյ նախախնամութեան յանձնելով, եռանդեամբ կ'աղօթէր:

Այս ալէկոծութեան ու ցաւերու դէմ եղած կռիւը 40 օր տեւեց. այսչափ օրուան մէջ միայն 70 փարսախ ճամբայ ըրած էին, թէպէտ Հնդստուբասի գլուխ բռնած տեղը գտած ըլլալով՝ քիչ մ'ալ հոն կեցած էին։ Վերջապէս ուրիշ հրուանդան մ'ալ անցնելով՝ աղէկ հով ու հանդարտ ծով մը գտան։ Ասանկ երկայն ալէկոծութենէ ազատելնուն՝ ուրախութեամբ մը սա հրուանդանին անունը Փառք Աստուծոյ դրին։ Ծովապետը 62 փարսախի չափ ծովեզրին քովերէն գնաց. չէր գիտեր որ փնտռած անցքը գտնելիք չունի, եւ երկու Ամերիկան չէ թէ իրարմէ նեղուցով մը բաժնուած, հապա կրճով մը մէկմէկու կապուած են, եւ անկէ անդին ուրիշ Ովկիանոս մը կայ։ Ան միջոցին մեծ դժբախտութիւն մ'ալ պատահեցաւ. մակոյկ մը ջուր ու փայտ առնելու համար գացած ըլլալով՝ գետի մը բերնէն ելած ատենը խրեցաւ. մարդ մ'ալ չկրցաւ ազատիլ, ամէն բան ընկղմեցաւ։ Կոլոմբոս սա գետը Դժբախտութեան գետ կանչեց։

Ծովապետը միշտ իր երեւակայութեամբը ճամբան յառաջ տանելով՝ թէպէտ շատ մարդաբնակ տեղերու առջեւէն կ'անցնէր, կարգաւորեալ գեղեր կը տեսնէր, բայց ամենեւին չէր կենար։ Նաեւ տեղւոյ մը առջեւէն անցաւ, որուն ցեղապետը քանի մը

տղայական բաներ առնելով՝ իրեն գեղեցիկ ոսկիէ թիթեղ մը տուաւ, եւ խոստացաւ որ շատ ոսկի ալ կու տայ, թէ որ Վերակուայի քաղաքներուն մէջ ատեն մը մնան։ Բայց ինք ան ոսկւոյ գաւաթը թող տալով՝ իր ճամբան յառաջ տարաւ, թէպէտ անդիէն ալ նաւորդները տրտնջելէն չէին դադրեր։

Սպանիացիները տեղ մը ցամաք ելած էին. տեղացիները տեսնելով որ Բարթողիմէոս իրեն քարտուղարին բան մը գրել կու տայ, կարծեցին որ կախարդութիւն կ՚ընէ. եւ որպէս զի նոյն կախարդութիւնն իրենց չվնասէ, Սպանիացիներուն վրայ հոտաւէտ փոշի մը փչեցին. Սպանիացիք ալ ասկա մոգական գեղ մը կարծեցին։ Անով նաւաստիք իրենք զիրենք կախարդութեան մը ազդեցութեանը տակ սեպելով՝ անկէ վերջը իրենց ճամբորդութեան յապաղումն ու դժբախտութիւնները՝ տեղացիներուն իրենց վրայ ըրած հմայութեան կու տային։

Կոլոմբոս Ցարիէնի ծոցին քովերը պտըտելով եւ ելք մը չգտնելով՝ տեսաւ որ աս ճամբով նեղուց մը չիգտնուիր, անոր համար դարձաւ Վերակուայի ոսկեշատ երկիրը, որպէս զի շատ ոսկի գտնելով՝ իրեն ճամբորդութիւնը Սպանիայի ոսկեսէր կառավարութեան առջեւ օգտակար ցուցընէ։

## Ի.

### Կոլոմբոս վերադառնալ կ'ելլէ:

Ան ատեն Դեկտեմբերի 5ին հասած էին, եւ արդէն 9 ամիս էր որ ծովակալը ծովու վրայ կը գտնուէր: Որդերը նաւերուն փայտերը կը ծակծկէին կ'ապականէին: Ծովակալին հակառակ հողմէ մը արգելուելով՝ չէր կրնար Վերակուա ցամաքը ելլել. ուստի ուղեց որ արդէն ճանչցած նաւահանգստի մը մէջ մտնէ: Այս նաւահանգիստն անանկ աղուոր տեղ մըն էր՝ որ Կոլոմբոս անունը Բորդոյ պելլոյ (Գեղեցիկ նաւահանգիստ) անուանած էր: Բայց նաւերն աս նաւահանգիստը մտնելու ատեն՝ նոր մրրիկ մը վրայ եկաւ: Ծովապետն աս մրրիկը սոսկալի եղանակաւ կը ստորագրէ: Եկածն անձրեւ չէր, կ'ըսէ, հապա երկրորդ ջրհեղեղ մը: Նաւավարներն իրենք իրենցմէ ելած՝ իրենց բաց նաւուն մէջ գրեթէ խղդուելու վրայ էին: Ծովը, կ'ըսէ Կոլոմբոս, կաթսայի պէս կ'եռար: Երկինքն անանկ փայլատակում կ'ըլլար, որ ընդարձակ հնոց մը կը կարծուէր: Այս փոթորկին ութերորդ օրը նաւորդները կարծեցին որ ալ պիտի խղդուին. ինչու որ իրենց աչքին առջեւը ծովին ծոցին վրայ թաթառ (խօչնամ) մը սկսաւ ձեւանալ, եւ օդին մէջ կլորորկելով կը բարձրանար, վերէն ալ զարհուրելի ամպ

մը վարի կողմը սուր ծայրով մը աս թաթաւին վրայ կ'իջնար։ Շուտ մը ամպի ջուրն ու ծովուն ջուրը իրարու միացան, սիւն մը շինեցին, որն որ ծովէն վրայ քալելով՝ պարհուրելի ձայներով չորս կողման ալիքները վեր կը վերցընէր։ Աս ահագին թաթաւը սկսաւ դէպ ի յառաջ գալ։ Նաւորդները մօտքերնին դրին որ ա՛լ պիտի մեռնին եւ բոլոր մարդկային ջանքը փուճ է։ Անոր համար սկսան եռանդեամբ աղօթել. եւ Աստուծոյ տեսչութեամբը թաթաւն իրենց նաւերուն մէջտեղէն առանց վնաս մ'ընելու անցաւ։ Ասանկ երկիւղի եւ ուրախութեան մէջ սկսան Աստուծոյ գոհութիւն տալ։

Վերջապէս Դեկտեմբերի 17ին Բորդոյ պէլլայի նաւահանգիստը կըցան մտնել, ու անկէ ալ Վերակուա ուզեցին դառնալ։ Բայց ճամբան նորէն սաստիկ հովերու բռնուելով՝ ուրիշ նաւահանգստի մը մէջ կեցան, եւ եգիպտացորեն, ջուր ու փայտ հոգացին. հազիւ Յունուարի 6ին մեծ ուրախութեամբ Վերակուա հասան։ Կոլոմբոս գետի մը բերանը կեցաւ, եւ անունը Բեթղեհէմ դրաւ։

Սպանիացիները մինչեւ նոյն ատեն քանի որ ափանց քովերէն երթալու սկսած էին, տեղացիներէն ոմանք՝ իրենց աղէկ, ոմանք ալ գէշ ընդունելութիւն ըրած էին. շատ անգամ հարկ եղած էր զանոնք վախցընելու

համար թնդանօթ նետել: Այս վայրենիներէն ոմանք մեծամեծ ու վստահութիւն ունեցող մարդիկ էին, ոմանք ալ չարասէր ու թշնամի: Վերակուայի վայրենիներուն գլուխը՝ Գուիպիան անուամբ պատերազմող ցեղապետ մըն էր: Անիկա անգամ մը ծովապետին եղբօրը հետ տեսնուեցաւ, եւ հրաման տուաւ որ իրեն հպատակներուն հետ բան առնեն տան: Բայց ինք խարդախ ըլլալով՝ ուրիշներուն վրայ ալ վստահութիւն չունէր, ուստի եւ ասանկ ոսկեսէր ու արտաքոյ կարգի օտարականաց գալուն համար սիրտը շատ անհանգստութեան մէջ էր: Իր հպատակները զինքը շատ կը սիրէին ու կը պատուէին: Երկրորդ անգամուն որ Բարթողիմէոս նոյն ցեղապետին հետ տեսնուեցաւ, գետի մը եզերքն էր, ուր նստելու տեղ չկար. անդիէն Հնդիկ մը ջրին մէջէն սաստիկ խոշոր քար մը հանեց, լուաց, շփեց, ու թագաւորական աթոռի մը պէս ցեղապետը վրան նստեցուց: Խորամանկ Գուիպիան Բարթողիմէոսին խոստացաւ որ իրեն քանի մը առաջնորդ տայ, որ զինքը ոսկւոյ հանքերուն տանին: Բայց անիկա խաբէութիւն էր. առաջնորդները զինքը մեծ անտառ մը անցընելով՝ թշնամի ցեղապետի մը սահմանը տարին, ուր որ ստոյգ է ոսկի կար, բայց Վերակուայի ոսկւոյն պէս շատ չէր:

Օովապեանին եղբայրը շատ ցեղապետներ ատեններու գնաց, որոնք զինքը շատ սիրով ընդունեցան. ամէն տեղ ոսկւոյ հետքեր կը գտնէր, բայց ամէն կողմէ ալ իրեն ան կ'ըսէին թէ հարաւային կողմը հարուստ թագաւորութեան մը մէջ է բուն ոսկւոյն տեղը, եւ հոնտեղաց բնակիչները Եւրոպացիներուն պէս հագուած են: Անոնց կարծեաց խօսքերնին Բերուի վրայ էր, որովհետեւ Ցարիէն կրծին բնակիչները Բերուն կը ճանչնային:

Բարթողիմէոս նոյն անծանօթ երկիրը պտտած ատեն՝ հետն յիսունուինն աղէկ զինաւորած մարդիկ ունէր: Անոնք ծովեզրներէն կ'երթային, ծովէն ալ հետերնին մակոյկ մը կ'երթար: Բարթողիմէոս աս արշաւանին վրայ անչափ գոհ եղաւ, որ Կոլոմբոս մտածեց թէ Բորդոյ պելլոյ ամրոց մը շինէ, եւ հոն քանի մը Սպանիացի թող տայ, որպէս զի ոսկի ժողվեն: Քիչ ատենուան մէջ նոյն ամրոցը շինուեցաւ լմնցաւ: Բարթողիմէոս 90 հոգւով հոն պիտո՛ր կենար: Թէպէտ եւ Կոլոմբոս շատ ջանացած էր որ տեղացիներուն սիրտը շահի, բայց շուտ մ'իմացուեցաւ որ անոնց վստահիլ չ'ըլլար: Ստուգեցին որ Գուիպիանին առաջնորդութեանը ամէն մերձաւոր ցեղերը կը միանան որ վրանին յարձակին: Բայց Մենտեզ քաջ ազնուականը՝ որն որ ինքը զինքը բոլորովին Կոլոմ-

բաժին նուիրած էր, իրենց խորհուրդը քակտեց ու Սպանիացիները յանկարծական կոտորած մը պատեց: Ասիկա ընկերով մ' եղաւ Հնդիկներուն մէջը գնաց, որոնք երկու զինեալ Սպանիացի տեսնելուն պէս՝ տակն ու վրայ եղան. Մօտերը ցեղապետ մը կայ, ըսին, որուն դէմ պատերազմելու համար կը ժողվինք: Մենտէզ անանկ ձեւացուց որ իրենց կը հաւատայ, եւ ելաւ Գուիպիանին վրանը գնաց, որ վիրաւորած էր, եւ խոստացաւ որ զինք կը բժշկէ: Բայց հազիւ թէ վրանին դռնէն անցած էր՝ Գուիպիանին որդին զինքը բռնեց, եւ ձեռքէն շատ դժուարաւ կրցաւ ազատիլ: Մենտէզ գիտէր որ աս վայրենիներուն արտաքոյ կարգի զարդասիրութիւն ունին, ուստի իրեն սանտր ու մկրատ մը տալով եւ մազը Սպանիացւոց պէս շիտկել սորվեցընելով՝ զինքը շահեցաւ եւ ազատեցաւ:

Երբ որ Մենտէզ դարձաւ, բոլորովին ստուգուելով որ իրենց դէմ դաւաճանութիւն կայ, Բարթողիմէոս միտքը դրաւ որ ալ զօրաւոր եղանակաւ մը գործէ: Մակոյկ մը մտաւ, Վերակուայի գետէն վեր մինչեւ Գուիպիանին բնակած տեղը գնաց, տունը մտաւ, Գուիպիանը՝ իրեն կիներովը, որդիներովը ու յիսունի չափ Հնդիկներով՝ գերի բռնեց, եւ առաւ տարաւ առանց միտ դնելու տեղա-

ցուոց ճչիւն, որոնք գանձեր բերած՝ կ'ուզէին իրենց ցեղապետին փրկանք տալ։ Սանքեզ նաւապետը գերիները մակուկով կը տանէր։ Խորամանկ ցեղապետն աղաչեց որ կապանքները քիչ մը թուլցընեն, եւ քիչ մը ետքը գետը նետուեցաւ ու ջրին տակէն լողալով շուտ մը աներեւոյթ եղաւ։ Բարթողիմէոս իրեն թշնամւոյն ինչ եղած ըլլալը չգիտնալով՝ ցեղապետին ձեռքէն առած ոսկի թիթեղներով, պնակներով ու ոսկւոյ հատերով իր եղբօրը քովն եկաւ։ Հնդիկներն անտառներուն մէջ ցրուած էին։ Բարթողիմէոս կարծեց որ բաւական զանոնք սարսափեցուցած ըլլալով՝ ա՛լ վախնալու բան չունի, մանաւանդ որ հրազէնքներուն անընդդիմանալի զօրութեան վրայ վստահացած էր։ Ուստի եւ եղբօրը հետ մէկտեղ՝ մնացողներուն պաշար հոգալու ամէն հարկաւոր միջոցներն որոշելէն ետեւ՝ թող տուաւ որ ծովապետն երթայ։

## Բ.

## Վայրենիները գաղթականներուն վրայ կը յարձակին։

Հազիւ թէ Սպանիացւոց նաւերը գետին բերնէն անցած էին, անդին դառնացած Հնդիկները մտքերնին դրին որ իրենց երկրին վրայ հաստատուն բնակութիւն ունենալու

համար եկած օտարականները ջնջեն։ Ցեղա-
պետին արդէն մեկուկէն փախչելէն ետեւ՝
իրենց մէջը եկած էր։ Քանի որ ծովապետին
նաւերը նաւահանգստին մէջ կը կենային,
ինք պաշտպանուած կը կենար, բայց երբ որ
տեսաւ որ անոնք իր կնկտիքը, տղաքները,
հայրենակիցներն ու բարեկամներն առին
տարին, ալ կատաղութեանը սահման ու չափ
չմնաց։ Բոլոր իր հպատակներն ու դրացիները
ժողվեց, եւ ամէնքը մէկտեղ Սպանիացւոց
տկար տներուն վրայ յարձակեցան։ Վայրե-
նիներն ահարկու ձայներ հանելով՝ տանիք-
ներուն վրայ ելան, եւ սկսան արմաւենիէ
շինուած որմերուն ճեղքուածներէն նետեր
նետել։ Աս առաջին անգամ յարձակելնուն՝
եօթը Սպանիացի վիրաւորեցին, եւ մէկ հոգի
մ'ալ սպաննեցին. բայց հրացանները, կրա-
կող զէնքերն ու ահագին շան մը խածուածքը
Հնդիկները փախչելու ստիպեցին։ Բարթո-
ղիմէոս տեսաւ որ գաղթականութիւնը մեծ
վտանգի մէջ է ։

Աս պատերազմին ատեն մակոյկ մը եկաւ,
ծովապետին կողմանէ իրեն տեղեկութիւն
տալու եւ ջուր առնելու համար։ Ծովապե-
տը հակառակ հովերէն ափանց քով արգե-
լուած կեցած էր. բայց Բարթողիմէոս աս
անակնկալ օգնութեան վրայ ուրախանալու
ատեն՝ անդիէն մեծ դժբախտութիւն մը պա-

տահեցաւ: Մակոյկը գետէն վեր նաւելու ատեն՝ այնպէս տեղ մը հանդիպեցաւ, ուր որ ջուրը թանձր անտառի մը խիտ ծառերուն մէջէն վազելով, ջրին երեսը խորարու հիւսուած ահագին ճիւղերը՝ նաւուն յառաջ երթալուն արգելք կը դնէին: Երբ որ մակոյկն աս դժուարին անցքէն պրծելու կը ջանար, մէկէն ի մէկ վայրենիներու ահագին ճիչ ու աղաղակ մը լսուեցաւ. եւ անտառին ախունքէն թեթեւ ծառակուրներու բազմութիւն մը յարձակելով՝ մակոյկին բոլորտիքն առին: Իրենց կատաղութիւնը՝ չափաւորութիւն չէր գիտեր. նետերու կարկուտ մըն է սկսաւ: Ցիէկոյ Դրեսդան՝ որ մակոյկին կ'առաջնորդէր, նետէ մը զարնուելով՝ ինկաւ. իր ընկերները վհատեցան, եւ տասնումէկ հոգիէն հազիւ մէկը միայն լողալով ազատեցաւ. մէկալները բոլոր սպաննուեցան:

Գաղթականութեան մէջ գտնուող Սպանիացիները տխուր յուսահատութիւն մը պաշարեց. ահ 'ու դողով իրենց գլուխը գալիքին կը սպասէին: Գետն աչքերնուն առջեւը իրենց ընկերներուն կորած անդամները կը տանէր: Ուզեցին մակոյկներն մտնել եւ երթալ գլուխնին եկածը Կոլոմբոսին իմացընել. սակայն ջրին բռնութիւնը թող չէր տար որ նաւ մտնեն: Մէկալ կողմանէ ալ կը վախնային որ չըլլայ թէ Կոլոմ-

բոս իրենց վիճակը չգիտնալով՝ ելլէ երթայ։ Թալեթողիմէոս չէր կրնար զիրենք կատարեալ հանդարտեցընել, բայց տաշտափի մինակ կըրցաւ համոզցընել՝ որ իրենց բնակած տեղն ամրացընեն. տասնի մերկ, անզէն ու պատերազմ չգիտցող մարդկան դէմ քիչ հնարք բաւական էր։ Թալեթողիմէոս մակոյկը ցամաք քաշեց, եւ քովը սնտուկներ ու տակառներ շարելով՝ թումբեր շինեց, մուտքին երկու պզտիկ թնդանօթ զետեղեց, եւ այսպէս տեղացիներուն դէմ դնելու պատրաստուեցաւ։

## Թ.

## Կոլոմբոսի հոգը: — Գաղթականներուն ազատութիւնը:

Ծովապետն ու նաւերուն մէջ եղողները մեծ անձկութեան մէջ մնան, տեսնելով որ ան գացած մակոյկը չ'երեւար։ Բռնուած Հնդիկներէն շատերը իրենց փակուած տեղէն պրծած, եւ մէկ փարախէն աւելի տեղ լողալով՝ ցամաք ելած էին, մնացածներն ալ գերութենէ ազատելու համար՝ շուանի կտորուանքներով իրենք զիրենք խղդեցին մեռցուցին։ Երբոր Կոլոմբոս սաստիկ վախի մէջ էր իրեն գաղթականացը վրայ, Պետրոս Լետեսմա անունով քաջ նաւապետ մը զինքը անձկութենէն ազատեց։ Աս յանդուգն նաւավարը ինքը զինքը ծովը նետեց, եւ ա-

լիքներուն դէմ կռուելով՝ վերջապէս բարեբախտութեամբ ցամաք հասաւ։

Ողորմելի զաղթականները զինքն արտաքոյ կարգի ուրախութեամբ ընդունեցան։ Նաւավարներն անոր բոլորտիքը ժողվեցան, ստիպեցին, աղաչեցին որ ծովապետը զիրենք մէկտեղ առնէ եւ աս վայրենեաց մէջ թող չտայ, ուր որ ուրիշ. բանի ակնկալութիւն չէին կրնար ունենալ, բայց եթէ խեղճութեանց ու մահուան։ Լետեւեամս բոլոր եղածն իրենցմէ լսելէն ետեւ՝ նորէն ծովը նետուեցաւ, ու նոյն յաջողութեամբ նաւերուն հասաւ։ Ծովապետն իրմէ լսած լուրերովը՝ վհատութեան մէջ ինկաւ։ Ինն օրէ վեր ալեկոծութիւնը կը տեւէր. անկարելի էր որ նաւերը ցամաք մօտենային. հազիւ թէ ծովուն վրայ կրնային կենալ։ Վերջապէս սաստիկ աշխատութեամբ եւ Ցիեկոյ Մենտէզին ճարտարութեամբը հնարք մը գտան ցամաք եղող Սպանիացիներն իրենց ամէն ունեցածովը լաստի վրայ դնելով նաւերը փոխադրելու։

Մեծ ձախորդութեանց մէջ ազատութեան ուրախութիւնը՝ վտանգին մեծութենէն կը չափուի։ Նաւաստիք երբ որ մէյ մը նաւերուն մէջ մտան, սկսան աւելի մեծ ուրախութիւն ունենալ՝ քան որչափ որ կ'ունենային թէ որ նոր աշխարհք մը գտած ըլ-

լային։ Բայց այս երկայն ու տաժանելի ճամբորդութիւնը՝ վտանգներու եւ դժբախտութիւններու շարք մը պիտի ըլլար։ Կոլոմբոս տեսաւ որ անկարելի է թէ ան իր նաւերովը նոր երկիրներ գտնելու ետեւէ իյնայ, ուստի եւ հարկէն ստիպուելով՝ ուզեց Սուրբ Դոմինիկոս դառնալ. բայց ճամբան միօրինակ ալէկոծութիւն կը քաշէր։ Նոյն ալէկոծութեան մէջ անգամ մը նաւերէն մէկը ալեաց բռնութենէ վարուելով՝ ծովապետին նաւին վրայ եկաւ, իրարու զարնուեցան եւ սաստիկ վնասեցան։ Վերջապէս 1503ին Յունիսի 23ին Ս. Դոմինիկոս հասնելու տեղ՝ Ճամայիքա հասան։ Կոլոմբոս՝ կ՚ըսէ թէ նոյն ատեն ամէն մարդ յոգնած ու վհատած, խարիսխները կորսուած, եւ նաւերը բոլոր ծակ ծակ եղած էին։ Աս վայրենի կղզւոյն վրայ ապատելու ուրիշ միջոց չգտաւ, բայց եթէ նաւերը ցամաք հանել, որովհետեւ ամէն կողմանէ ջուր առնելով՝ չէին կրնար ծովին երեսը կենալ, եւ կը վախցուէր որ կ՚ընկղմին։ Ուստի նաւերը ծովուն քով աւազի վրայ քաշել տուաւ, եւ իրարու հետ աղէկ մը կապել տալէն ետեւ՝ ամէն մէկուն երկու ծայրերուն վրայ պզտի խցեր շինել տուաւ, ու հոն որչափ որ կրնար նէ նաւերը քակելով անոնց կտորներովը ինք զինքը կ՚ամրացընէր։ Պէտք էր այլ ուրախանալ ուրիշ այնչափ վտանգնե-

րէն ազատելուն համար։ Իբրեւ հրաշք մը կը համարէր որ իր դիւրաբեկ նաւերն այնպէս երկայն ժամանակ այնչափ նաւակոծութեանց ու ամէն տեսակ վտանգներու մէջ հաստատուն մնացին։

## Ժ.

### Խորած Աւանէրոսն մեծակը։

Կոլոմբոս նոյն տեղն ամէն բանի չքաւորութիւն կը կրէր։ — Հաւատարիմ Ցիէկոյ Մենտէզը իր հնարագէտ ու գործունեայ միտքովն իրենց ուտելիք կը հոգար։ Կղզին շատ բազմամարդ ու բերրի էր։ Քաջ Ցիէկոն մերձաւոր ցեղապետի մը հետ բարեկամացաւ, եւ իրմէ խոստում առաւ որ իր հպատակներն ամէն օր իրենց ըրած որսէն ու բռնած ձկէն նաւերը բերեն, եւ անոնց տեղ Հնդիկներուն հաճելի բաներ առնեն։ Համարձակեցաւ ինք առանձին ցեղէ ցեղ պտըտիլ. կղզւոյն մէջ մինչեւ տասուիրեք մղոն յառաջ գնաց, եւ ամէն մէկ ցեղապետին հետ դաշնադրութիւն ըրաւ։ Ինք այսպիսի գործքերու շատ յարմար բնաւորութիւն մ'ունէր, իր յաջողակութիւնը, վառվռունութիւնն ու զուարթութիւնը Հնդիկները կը զուարճացընէին։ Ցեղապետներէն մէկը իրեն Հնդիկ մը տուաւ՝ որ իր անկողինը կրէ, ուրիշ ցեղապետ մ'ալ ուրիշ Հնդիկ մը տուաւ՝ որպէս զի իրեն հար-

կաւոր պաշարը տանի։ Մենտէզ հետն այսպէս մարդ ունենալով՝ Ճամայիգայի մինչեւ արեւելեան ծայրն հասաւ, հոն երիտասարդ ցեղապետի մը հետ այնպէս սիրով կապուեցան, որ անուններն ալ իրարու հետ փոխեցին, որն որ վայրենիներուն մէջ բարեկամութեան ամենէն մեծ ցոյցն է։ Աս ցեղապետն իրեն գեղեցիկ ու հաստատուն ծառակուր մը տուաւ, եւ տեղը՝ մեծ յօժարութեամբ պղնձէ կոնք մը, զգեստ մը ու Տիէկոյին քովը մնացած երկու շապիկներէն մէկն առաւ։ Վեց հնդիկ Մենտէզին հետ աս ծառակրին մէջ մտան, սկսան ծովու վրայէն կղզւոյն չորս կողմը պտըտիլ, եւ իւրաքանչիւր ցեղին տեղը հասած ատեննին՝ կը կենային որ Մենտէզին խնդիրքովը ցեղապետներուն պատրաստած պաշարներն առնեն։

Իրեն դառնալը՝ Սպանիացւոց մեծ ուրախութիւն պատճառեց. որովհետեւ պաշարնին գրեթէ բոլորովին լմնցած էր։ Բայց իր բերած ծառակուրը աղէկ խորհուրդ մը ձգեց դժբախտ ծովապետին մտքին մէջ, որն որ իր հիւանդութեանց ու նեղութեանց մէջ կը մաշէր։ Գիշեր ցորեկ Ճամայիգայէն ելլելու միջոց մը կը մտածէր, բայց չէր կրնար գտնել։ Արդ իր քաջասիրտ բարեկամին հասած իրիկունը զինքը մէկդի առնելով, "Որդեակ, ըսաւ, միայն դուն եւ ես կ'իմանանք ինչպիսի

վտանգի մէջ ըլլալնիս։ Մենք շատ քիչուոր ենք, իսկ վայրենիները մեծ բազմութիւն են։ Ասոնք փոփոխամիտ մարդիկ են ու շուտով կը բարկանան։ Պզտիկ գրգռութեամբ մը կրնան վրանիս վառուած նիւթեր նետել ու մեր տերեւներով շինուած խուղերը սպառել։ Կրնան փոքր բանով մը գրգռիլ, եւ ալ մեզի կերակուր չբերել։ — Ի՞նչ կ'ըլլանք մենք ան ատեն։ — Ես ազատութեան միջոց մը մտածեցի։ Պէտք է որ քանի մը քաջ նաւավարներ քու ծառակուրդ մտնեն ու Սպանիական կղզին երթան, զմեզ այսպիսի վտանգաւոր տեղէն ազատելու համար նաւեր բերեն։ Ի՞նչ կ'ըսես,,։

"Տէր, գիտեմ, պատասխանեց Մենտէզ, թէ ինչպիսի՜ վտանգի մէջ ենք, բայց աս ծառակրով մինչեւ Սպանիոլա երթալն անկարելի է. երկու կղզիներուն մէջ 40 մղոն միջոց կայ եւ ծովն ալ նոյն տեղերը միշտ մրրկալից է։ Ո՞վ կը յանդգնի այսպիսի վտանգաւոր գործքի մը ձեռք զարնել,,։

Մ՝ենտէզին խօսած ատեն՝ Կոլոմբոս մտադրութեամբ մը իրեն կը նայէր, աղաչելու կերպով մը, իբրեւ թէ կ'ուզէր ըսել. Կը տեսնես որ այսպիսի դիւցազնական յանդգնութիւն մը մտածած ատենս՝ միտքս քեզմէ ուրիշ մէկը չունէի։ — Քիչ մը ետքը Մենտէզ կանչեց. "Տէր, զձեզ ու հոս եղող-

ներն ազատելու համար՝ ես շատ անգամ ինքը զինքս վտանգի մէջ դրած եմ: Բայց շատ տժգոհներ կան, որոնք կ'ըսեն թէ փառք ու պարծանք բերող ամէն գործքերն ինծի կը յանձնէք դուք: Ուստի աս անգամ ալ վրաս ունեցած աս ձեր վստահութեան վրայ պիտի նախանձին: Անոր համար վաղը զիրենք ամէնքը ժողվեցէք, առաջարկեցէք իրենց աս արշաւանը. թէ որ յանձն առնող կ'ըլլայ նէ՝ Աստուած իրեն առաջնորդ ըլլայ. իսկ թէ որ ամէնքը կը հրաժարին նէ՝ ես կ'ելլեմ կ'երթամ,,: Կոլոմբոսի աչուըները սկսան զուարթանալ:

Երկրորդ օրը ծովապետը զամէնքը ժողվեց ու զօրաւոր եւ շարժիչ եղանակաւ մը աս բանս իրենց առաջարկեց: Բայց բոլոր նաւաստիք մէկէն պոռացին որ խնդրածն անկարելի բան է: Մէկը չհամարձակեցաւ ծառակրի մը վրայ 40 մղոն ծով անցնիլ: — Ան ատեն Ցիէկոյ Մենտէզ իր խոստման համաձայն ոտք ելաւ. "Տէր, ըսաւ, ես միայն մէկ կեանք ունիմ, բայց պատրաստ եմ քու ծառայութեանդ ու բոլոր աս նաւերուն վրայ եղած քաջ մարդիկներուն ազատութեան համար նոյն կեանքը վտանգի մէջ դնել: Աստուծոյ պաշտպանութեանը կ'ապաւինիմ, որուն որ փորձը շատ անգամ առած եմ,,: Թէպէտ եւ Կոլոմբոս աս ըլլալիքը գիտէր, ի վերայ այսր

ամենայնի սիրտն արտաքոյ կարգի շարժե-
ցաւ: Փաթթուեցաւ աս քաջասիրտ բարե-
կամին, եւ շնորհակալ եղաւ:

Քիչ մը վերջը Մենտեզ Օվանտոյին
ուղղուած նամակ մ'առնելով ճամբայ ելաւ:
Սպանիական կղզիէն նաւ մը պիտի խրկէր
զԿոլոմբոս տանելու համար, եւ ինք առանց
նոյն նաւին դառնալուն սպասելու՝ Սպանիա
պիտ'որ երթար: Հետը՝ միայն մէկ սպանիա-
ցի ընկեր մ'առաւ, վեց ալ Հնդիկ՝ ծառա-
կուրը կառավարելու համար:

Առջի փորձը յաջող չգնաց: Նաւա-
հանգստէն քիչ մը հեռու՝ կղզւոյն բնակիչ-
ները զինքն, իր ընկերն ու վեց Հնդիկները
բռնեցին, բանտ դրին: Բայց ինք յաջողու-
թեամբ կրցաւ փախչիլ. երբոր վայրենիները
վիճակ կը ձգէին աւարը մէջերնին բաժնելու՝
Մենտեզ իր ծառակուրը մտաւ նաւահան-
գիստն եկաւ: Չիգիտցուիր թէ ընկերն ինչ
եղած է: Սպանիացիք չէին կրնար յուսալ որ
այսպիսի դիպուածէ մը ետեւ՝ միւսը դրածը
նորէն յառաջ տանիլ ուզէ: Բայց Մենտեզ
ամենեւին վհատութիւն չունենալով՝ ուզեց
նորէն ճամբայ ելլել, միայն խնդրեց որ զինք
պաշտպանելու համար քիչ մը տեղ ցամաքէ
զինաւորեալ մարդիկ մէկտեղ երթան: Աս
անգամ ուրիշ ծառակուր մ'ալ առած էր
զորն որ Փիէսգոյ անունով Ճենովացի քաջ

նաւապետ մը կը վարէր: Նաւաստիներէն քանի մը հոգի ալ ուզեցին հետերնին երթալ: Ամէն մէկ ծառակրին մէջ վեց Սպանիացի, վեց ալ Հնդիկ կար, ճամբու պարէն եւ Սպանիացիներուն համար ալ զէնք: Բարթողիմէոս ալ՝ իրեն զօրքովն անոնց ետեւէն գնաց որչափ որ անոնք կղզւոյն ծովեզրներուն քովէն կը նաւէին: Երբոր կղզւոյն ծայրը հասան, Մենտեզ ու հետն եղողները՝ իրենց հայրենակիցներուն մնաք բարով ըսելէն ետեւը՝ քաջասրտութեամբ հեռացան: Բարթողիմէոս տրտմութեամբ մը կը նայէր երկու ծառակուրներուն ետեւէն, որոնք չորս կողմանէ բաց ծովուն մէջ նետուած կ'երթային. եւ ան ատեն ետ դարձաւ, երբ որ բոլորովին աներեւոյթ եղան: Թէպէտ ինքը զինքը խաբելու համար կը մտածէր որ Հնդիկները շատ անգամ ասանկ ողորմելի նաւակներով հեռու տեղուանք երթալու կը յանդգնին. բայց մէկալ կողմանէ ալ մտածելով որ իրեն, եղբօրն ու հետերնին եղողներուն կեանքն աս վտանգաւոր նաւարկութեան յաջողութենէն կախուած է, ահու դողի մէջ կ'իյնար:

## ԺԸ.

### Փորրասին գլուխ քաշելը:

Կոլոմբոս քիչ մը հանգիստ էր, եւ կը յուսար որ բաները կ'աղէկնան: Փիէսգոյին

դառնալուն օրերը կը համրէր, որն որ իր խնդրած նաւը պիտի բերէր։ Բայց իր հաշուած ժամանակը շատոնց անցած էր, եւ դեռ նաւ չէր երեւար։ Ասով ծովապետը սաստիկ անհանգստութեան մէջ ինկաւ։ Կը վախնար որ չըլլայ թէ ծառաւկուրները կորսուած ըլլան։ Այսպիսի մտածմունքներով կը մաշէր. իր Աստուծոյ ապաւինութիւնը շատ անգամ զինքը կը քաջալերէր. բայց ետքը նորէն կը լքանէր։ Նոյն միջոցին յօդացաւութիւնն ալ սաստկանալով՝ մտատանջութեանց վրայ մարմնոյ ցաւեր ալ աւելցուց, որով ստիպուեցաւ իր ողորմելի խրճիթին մէջ անկողինը մնալ։

Իր մարդիկներէն շատերն ալ հիւանդացան եւ ամէնքն ալ վհատութեան մէջ ինկան, եւ ծովապետն իրենց ամէն չարեացը պատճառ համարելով՝ սկսան իրեն դէմ տրտնջել։ Մէջերնէն քառասուն'ութը հոգի Փորրաս բռնած երկու եղբայրներէն գրգռուելով՝ յայտնապէս ապստամբեցան։ Կ'ուզէին ծառաւկուրներով Սպանիա դառնալ։ Փորրասեան եղբարք զիրենք համոզցուցած էին որ աս բանը կարելի է, եւ կ'ըսէին ալ որ ստուգիւ Մենտէզ ու Ֆիէսգոյ Ս. Դոմինիկոս գացած չեն, հապա ծովապետը զիրենք Սպանիա խաւրած է, արքունեաց հետ իր բաները շիտկելու համար։ Նաւաստիք աս

անպատշաճ խօսքերուն հաւատացին, եւ
որոշուած օրը ամէնքը զինաւորած՝ մէկտեղ
ժողվեցան, ու Կաստիլիա՛, Կաստիլիա՛ կը
պոռային: Ծովապետը թէպէտ եւ չէր կրնար
ոտքի վրայ կենալ, բայց անկողնէն ելաւ, եւ
եթէ իր հաւատարիմ ծառաները զէնքը բա֊
զուկներնուն վրայ առած՝ իր խրճիթը չտա֊
նէին նէ, անօրէնները ստուգիւ կը զարնէին
կը մեռցրնէին: Վերջապէս իրենց ապստամ֊
բութեան չհաղորդուող նաւաստիք աս խռո֊
վութիւնը դադրեցրնելու միջոց մը գտան:
Ի՞նչ բանի համար է, ըսին իրենց ընկերնե֊
րուն, աս աղմուկը. թէ որ բացարձակապէս
աս խենթութիւնն ընել կ'ուզէք նէ, ծովա֊
պետէն ի՞նչ կ'ուզէք, ծառակուրներու մէջ
մտէք գացէք: Ան ատեն Փորրաս սաստիկ
ձայնով մը պոռաց. ես Կաստիլիա պիտ'որ
դառնամ, ո՛վ որ կ'ուզէ նէ՝ թող ետեւէս
գայ: Եւ շուտ մը ապստամբները զարհուրելի
ձայնով մը Կաստիլիա՛, Կաստիլիա՛ պոռացին,
ու զէնքերնին շարժելով՝ ծառակուրները
վազեցին: Նոյն ատեն տասը աղէկ ծառակուր
կար, զորոնք Կոլոմբոս գնած էր: Քառասուն'֊
ութը ապստամբներն անոնց մէջը նետուե֊
ցան, եւ կղզւոյն բոլորտիքը պտըտելով
Հնդիկներ կանչեցին, որ գան իրենց թիա֊
վարութիւն ընեն: Իրենց չարութիւնն ան
աստիճանի հասցուցին մինչեւ զԿոլոմբոս

տեղայիններուն իբրեւ բռնաւոր եւ իրենց թշնամի հրատարակեցին, ու յորդորեցին որ զինքը մեռցընեն։

Երբ որ եզերքէն հեռացան, Մակոյկները մրրկալից ծովի մը մէջ մտնելով՝ ամէն րոպէ դառնալու վտանգի մէջ էին։ Աս վտանգը տեղացւոց պատահէր նէ, անոնք վարժած ըլլալով՝ մակոյկները նորէն կը դարձընէին եւ մէջը կը մտնէին. բայց Եւրոպացիք աս ճարտարութիւնը չունէին։ Մակոյկները թեթեւցընելու համար՝ նախ ունեցածնին չունեցածնին ու ետքը հնդիկները ծովը նետեցին. եւ որովհետեւ ցամաքը շատ հեռու էր, աս խեղճերը չէին կրնար լողալով հոն հասնիլ, անոր համար մակոյկները կը դառնային. իսկ Սպանիացիք զանոնք իրենց սրերովը կը վռընտէին։ Ասանկով անոնցմէ տասն'ութը հոգի մեռան։ Աս միջոցին՝ մրրիկն ալ վրայ հասնելով՝ ծառակուրները չէին կրնար ծովին դիմանալ. ուստի եւ Փորրաս ստիպուեցաւ առաջարկել որ ցամաք ելլեն։ Իր սաստիկ հպարտութիւնը թող չէր տար որ նորէն ծովապետին հնազանդի, անոր համար իրեններովը գնաց կղզւոյն ծայրը գեղի մը մէջ հաստատուեցաւ։ Անկից իր ընկերները մօտ տեղերը տարածուեցան, եւ երբեմն բռնութեամբ, երբեմն անուշութեամբ ապրուստնին կը հոգային։

## ԺԹ.

### Սով: — Կոլոմբոսին կերակուր գտնելու համար մտածած հնարքը:

Ապստամբներուն երթալէն ետքը՝ Կոլոմբոս զինքը հիւանդաց խրճիթը տանել տուաւ, եւ հոն հաւատարիմ մնացած նաւաստիները ժողվելով՝ իրենց հաւատարմութիւնը գովելէն եւ շնորհակալ ըլլալէն ետեւ՝ յորդորեց որ Աստուծոյ ապաւինին, եւ խոստացաւ որ երբոր Սպանիա դառնան նէ՝ իրենց աղէկ հատուցում մ'ընէ: Զիրենք այսպէս մխիթարելէն ու հաստատելէն ետեւ՝ ամիս մը ամէն օր հիւանդներուն այցելութեան կ'երթար. կերակուրնին ալ՝ Հընդիկներուն հետ փոխանակութիւն ընելով կը հոգային: Ասանկով ամէնքը քաջալերուեցան:

Սակայն ժամանակը կ'անցնէր, եւ Մէնտեզէն լուր մը չկար: Ծովապետը երբեմն կասկածի կ'երթար որ չըլլայ թէ Օվանտոյ մատնութիւն ընէ: Կը վախնար որ կ'ուզէ զինքն ու իր մարդիկները խրած նաւերուն վրայ մեռցընել: Այսպիսի խորհուրդներն իրեն շատ վախ ու դառնութիւն կը բերէին: Եւ թէպէտ շուտ մը աս խորհուրդը մտքէն կը վռնտէր, բայց երբ որ միտքը կու գար որ ինչ խստութեամբ նոյն կուսակալն ալէկոծութեան ատեն իրենց ապաւինելու տեղ տալու զլացած էր, ամէն բան կարելի կ'երեւար:

Կամաց կամաց Հնդիկներն ալ կերակուր բերելէն ձանձրացան։ Փորրասին կողմնակցաց արշաւանքներուն շատ բարկացած, եւ նոյն մարդիկներուն խօսքերովը ծովապետին դէմ սաստիկ գրգռուած էին։ Այսպէսով հիւանդ Սպանիացիք ստիպուեցան խրճիթներնէն դուրս ելլել, որպէս զի որս ընեն կամ ձուկ բռնեն եւ պտուղ ժողվեն. բայց աշխատութիւննին պարապ ելաւ, որովհետեւ Հնդիկները նենգութեամբ ամէն պտուղներն ու անոնց յարմար բոյսերը յառաջագոյն կը ժողվէին կը վերցընէին։ Ասով սաստիկ յուսահատութեան մէջ ինկան։ Ծովապետը չէր համարձակեր այնչափ քիչ զօրութեամբ տեղացւոց հետ պատերազմ ընել, եւ իր հիւանդ մարդիկը վտանգի մէջ ձգել։

Ամենէն մեծ չարեաց պատճառը Հնդիկներուն չարակամութենէն յառաջ կու գար։ Կոլոմբոսին ճարտարմտութիւնն ասիկա յաղթելու հնարք մը գտաւ։ Իր աստղաբաշխական գիտութեամբն իմանալով որ մօտ օրերը լուսնոյ խաւարում պիտ՚որ պատահի, իր Հնդիկ թարգմանը վայրենիներուն խաւրեց եւ ըսել տուաւ որ ցեղապետները մէկտեղ ժողվին, որովհետեւ ծովապետն իրենց շատ հարկաւոր բան մը պիտի զրուցէ։ — Որոշուած օրը բոլոր ցեղապետները մէկտեղ ժողվեցան. ծովապետն իրենց գնաց, եւ անոնց դէշ վար-

մունկքն երեսնին զարնելով՝ ըսաւ՛ թէ ինչպէս որ Աստուած զՓօրրոս իր ապստամբութեան համար մրրկով ու ալեկոծութեամբ պատժեց, նոյնպէս զձեզ ալ պիտ՚որ պատժէ. եւ արդէն աս գիշեր իր բարկութեան նշանը պիտ՚որ ցուցընէ, լուսնին լոյսը կամաց կամաց խաւարցընելով։ Աս խօսքերն ազդու ձայնով մ՚ըսելէն ետեւ՝ զանոնք թողուց գնաց։ Երբ որ գիշերը Հնդիկները լուսնոյ խաւարիլն իրօք տեսան՝ սկսան դողալ, եւ ծովապետն Աստուծոյ բարեկամ համարելով, անմիջապէս հետերնին կերակուր առած՝ վազեցին եկան, եւ ոտքն իյնալով՝ կ՚աղաչէին որ իր Աստուածն հաշտեցընէ։ Կոլոմբոս իրենց զղջումն ընդունել ձեւացուց, եւ երթամ ձեզի համար աղօթք ընեմ ըսելով՝ իր խրճիթը մտաւ։ Երբ որ խաւարումն անցնելու ժամանակը հասաւ, զուարթ երեսով մը դուրս ելաւ, եւ ըսաւ թէ իմ Աստուածս ձեզի թողութիւն կու տայ, եւ հիմա լուսինն ալ իր առջի պայծառութեանը կը դարձընէ։ Խեղճ վայրենիներն ասոր վրայ շատ ուրախացան, եւ երբ որ լուսինը քիչ մը ետքը պայծառացաւ նէ՝ մտքերնին դրին որ Կոլոմբոս բնութենէ վեր մարդ մըն է։ Անկէ ետքը Սպանիացիք ամէն տեսակ առատ ուտելիք կունենային։

## ԺԳ.

### Մենտեզին յաջողութիւնը: — Օվանտոյին բռնած ճամբան:

Մենտեզին երթալէն վերջը ութ ամիս անցած էր, եւ Կոլոմբոս գրեթէ ալ իրմէ յոյսը կտրած էր: Սակայն աս ճշմարիտ բարեկամն իրեն յանձնուած գործքը հաւատարմութեամբ կատարած էր: Մենտեզ ու Ֆիէսգոյ արտաքոյ կարգի վտանգներ ու աշխատութիւններ, եւ ջրի սով քաշելէն ետքը (որովհետեւ խեղճ թիավարները ծարաւելով բոլոր ջուրը շուտ մը լմնցուցած էին) Սպանիական կղզին հասած էին, բայց գաղթականաց բնակած տեղւոյն հակառակ ծայրը, Ս. Դոմինիկոսէն 120 մղոն հեռու: Ութսուն մղոնի չափ ծովեզերքէն յառաջ երթալէն ետքը ցամաք ելան, ու տեղացիներէն շատ աղէկ ընդունելութիւն գտան: Հոն լսելով որ Օվանտոյ Քսարագուա է, յանդուգն Մենտեզ մինակ՝ անտառներուն մէջէն ոտքով յառաջ գնաց, ու Քսարագուա հասաւ:

Օվանտոյ՝ Մենտեզին երեսանց աղէկ ընդունելութիւն ըրաւ, ու խոստացաւ Ս. Դոմինիկոս հրաման խրկելու որ երթան ծովապետն առնեն: Բայց շաբթէ շաբաթ թող տալով՝ ամիսներով ուշացուց: Կ'ըսէր թէ Սպանիայէն եկող նաւերը մինչեւ որ չհաս-

նին՝ չեմ կրնար Ճամայիգա նաւ խաւրել։ Վերջապէս եօթն ամիս սպասելէն ետքը՝ Մենտէզ անգութ կուսակալէն հրաման առաւ. Ս. Դոմինիկոս երթալու եւ հրաման տանելու որ նաւ մը խաւրեն։

Աս հաւատարիմ մարդն երթալուն պէս, Օվանտոյ արտաքոյ կարգի եւ չմեկնուելու հրաման մը տուաւ։ Նաւահանգստէն թեթեւ նաւ մը խաւրեց դէպ ի Ճամայիգա, Էսգոպար անունով նաւապետի մը հրամանին տակ, որն որ Բոլտանին կողմնակից ըլլալով՝ մեռնելու դատապարտուած եւ Պովատիլլային գալովն ազատած էր, ուստի եւ ծովապետին թշնամի էր։ Աս Էսգոպար ծովապետին նամակ մը կը տանէր։

Երբ որ Ճամայիգայի վրայ եղող Սպանիացիք իրենց ազգէն նաւ մը տեսան, արտաքոյ կարգի ուրախանալով՝ սկսան բարեւել եւ իրարու ազատութեան աւետիս տալ։ Նաւը կղզիէն քիչ մը հեռու կեցաւ, եւ մակոյկ մը վար իջեցուց, որն որ խեղճ Սպանիացիներուն մօտիկցաւ. բայց մէջէն ամենեւին մէկը դուրս չելաւ։ Էսգոպար՝ առանց խօսք մը ըսելու՝ իրենց քիչ մը գինի, կտոր մը խոզի միս եւ Օվանտոյէն՝ ծովապետին գրուած նամակ մը տուաւ։ Ետքը ցամաքէն քիչ մը հեռացաւ, ու փողով մը ըսաւ ծովապետին՝ որ Կուսակալը զիս խաւրած է քու դժբախ-

տութեանցը վրայ ունեցած ցաւն յայտնելու եւ միանգամայն ծանուցանելու համար թէ շատ կը ցաւի որ Ս. Դոմինիկոսի մէջ այնչափ մեծ նաւ մը չկայ, որ բոլոր հետդ եղողները կարող ըլլայ առնել, բայց կը ջանայ որչափ կարելի է շուտ մը յարմար նաւ մը գտնել եւ խաւրել: Միանգամայն աս ալ ըսաւ որ եթէ Օվանտոյին պատասխան տալ կ'ուզէ նէ՝ շուտ ընէ, որովհետեւ կուսակալն հրամայած է որ նաւը շուտով ետ դառնայ:

Հարկ եղաւ որ ծովապետն իր բարկութիւնը ծածկէ. ուստի եւ Օվանտոյին թըղթին պատասխան տալով՝ կ'աղաչէր որ իրեն նաւ մը խաւրէ, եւ միանգամայն Մէնտեզին ու Ֆիէսգոյին դիւցազնական գործքը կ'արդարացընէր, ըսելով որ արտաքոյ կարգի նեղութեանց մէջ ըլլալուն համար՝ ան երկու մարդիկները խաւրած էր: Կը վախնար որ չըլլայ թէ կուսակալն անոնց Սպանիական կղզին գալը արքունեաց հրամանին հակառակ համարի: Երբ որ աս կարճ նամակը գրուեցաւ, Էսգոպար առաւ, եւ առանց ծովապետին հետ ուրիշ խօսք մը խօսելու, առանց ցամաք մարդ մը հանելու, առանց խեղճ նաւաստիներէն մէկը հետը առնելու, առագաստները բացաւ ու գիշերուան մութին ճամբայ ելաւ:

Անոր երթալէն ետեւ՝ Գոլոմբոս ինքը զինքը գոհ եղածի պէս ցուցուց. իր մարդիկ-

ներուն բսաւ որ կուսակալը մինակ մէկ պզտիկ նաւ ունենալով՝ որն որ այնչափ բազմութիւնը չէր կրնար տանիլ, նոյն պզտիկ նաւը՝ պատգամաւորութեան համար խաւրած էր, եւ ուրիշ մեծ նաւ մը կը խոստանար, որն որ քիչ օրէն պիտ'որ գար: Բայց նաւաստիները իրենց գլխաւորին խօսքերուն չհաւտալով՝ կը մտածէին որ Կոլոմբոս վերջին աստիճանի երեսէ ձգուած է, եւ իրենք ալ անոր պատճառաւը նոյն տեղերը պիտի մնան: Ծովապետն ալ իր կողմանէ կը մտածէր որ Օվանտոյ իր մահը կ'ուզէ, եւ անոր համար դիտմամբ ութ ամիս զինքն առանց օգնութեան թողուց. եւ նաւը խրկելուն պատճառն ան էր որ իմանայ թէ արդեօք մեռա՞ծ է՝ թէ չէ: Սակայն եւ այնպէս Կոլոմբոս նոյն դէպքն աղէկ առիթ սեպեց զՓօրրաս ու իր քովինները հնազանդութեան դարձնելու. մանաւանդ որ իմացած էր թէ մէջերնէն շատերը զղջացած են: Ուստի եւ Սպանիայի կուսակալէն ընդունած խոստումն իրենց իմացուց, եւ թողութիւն խոստացաւ: Բայց Փօրրաս յանդրգնութեամբ մերժելէն զատ՝ ուզեց ծովապետին եւ հաւատարիմ մնացողներուն վրայ յարձակում ընել: Ան ատեն ծովապետն իր եղբայրը վրան քալեցուց: Պատերազմի սկսելէն առաջ Բարթողիմէոս նորէն թողութիւն խոստացաւ, բայց պարապ տեղ: Կռիւը

շատ քիչ տեւեց։ Փորրաս Բարթողիմէոսին ձեռքը գերի ինկաւ։ Ապստամբները փախան, եւ երկրորդ օրը Հնազանդութեան թուղթ մը խաւրեցին։ Ծովապետն անոնց թողութիւն տուաւ, բայց իր նաւերուն մէջ առնել չուզեց, վախնալով որ չըլլայ· թէ անոնց ու իր նաւաստիներուն մէջ կռիւ մը ծագի։

## ԺԴ.

*Կողոմբոսի ազատիլն ու Ս. Դոմինիկոս երթալը։ — Սպանիական կղզւոյն վիճակը։*

Էսքոպարին երթալէն վերջը խեղճ Սպանիացիները դեռ երկայն ատեն սպասելէն ետեւ՝ օր մը յանկարծ տեսան որ երկու սպանիացի նաւ լեցուն առագաստներով դէպ իրենց կու գային։ Ասոր վրայ որչափ ուրախացած ըլլալնին՝ ինք իրմէ կրնայ իմացուիլ։ Սկսան իրարու փաթթուիլ, ամէն անցած խռովութիւնները մոռցան, եւ նոր եկողներուն գիրկը նետուելով՝ զանոնք իրենց բարեկամն ու ազատիչը կը կանչէին։ Մեծ ուրախութեամբ թող տուին (1504ին, Յունիսի 28ին) ան կղզին ուր որ այնչափ անգամ կարծած· էին թէ առանձին առանց օգնութեան ու ամէն մարդիկներէն մոռցուած՝ պիտ՚որ մեռնին։ Կ՚ըսեն թէ տեղացիք ալ անոնց երթալը տեսնելով լացած ըլլան։ Աս ցաւն անտարակոյս ծովապետէն բաժնուել-

նուն համար էր, որուն վրայ՝ լուսնոյ խաւարման օրէն վեր՝ մեծ գաղափար ունեցած էին։

Սպանիացիք մէկուկէս ամսուան ճամբորդութեամբ Ս. Դոմինիկոս հասան (Օգոստոսի 13ին)։ Օվանտոն՝ ծովապետին անուան ու աստիճանին վայլած պատուով ու յարգութեամբ ընդունեցաւ զինքը, եւ ասով իբրեւ թէ զինքն այնչափ ատեն անգթութեամբ թողուլն ուզեց մոռցընել տալ։ Բայց թող չտուաւ որ ծովապետն իշխանութիւն մը բանեցընէ. մինչեւ նաեւ իր նաւաստիներուն վրայ ունեցած իրաւանցն ալ ուզեց խառնուիլ։ Ըրած արդար բողոքմանցը՝ քաղաքավարական ծիծաղով պատասխան կու տար։

Սպանիական կղզւոյն մէջ ամէն բան Կոլոմբոսին մեծ ցաւ կը պատճառէր. իր իշխանութիւնն ուրիշին ձեռքը կը տեսնէր. իր անուան ու արժանաւորութեան վայլած վստահութիւնը՝ ցուրտ քաղաքավարութեան մը փոխուած էր. իր անձնական գործքերը գէշ վիճակի մէջ էին, բայց ամենէն աւելի գաղթականութեան ողորմելութիւնը իր սիրտը կը վիրաւորէր։ Կը տեսնէր որ կղզեցիները կրթելու եւ դարձընելու համար ունեցած խորհուրդներն ու մտածած կարգերը տակն ու վրայ եղած էին. բոլոր կղզին արեան մէջ թաթխուած էր. բարի քահանաները՝ Աւետարանին ճշմարիտ առաքեալները կ'ողբային,

տեսնելով որ իրենց գործքն սկսելէն յառաջ աւրուած էր: Սպանիացիներն աւելի եղած էին: Հնդիկներէն շատերը սպաննուած, մնացածներն ալ բռնութեան տակ ճնշուած: Ան հայրական կառավարութեան տեղ՝ զոր որ ծովապետն իսկզբան ուզած էր դնել; Օվանտոյ՝ անգթութենէ ու խստութենէ ուրիշ բան չէր ըներ:

Հոստեղս Օվանտոյին ատենը կղզւոյն մէջ պատահածները համառօտիւ մը կը դնենք: Հնդիկները՝ որովհետեւ Եղիսաբէթ թագուհւոյն հրամանաւ ազատ հրատարակուած էին, չէին ուզեր հանքերը բանիլ: Օվանտոյ հրաման ունէր զանոնք չափաւոր եղանակաւ մը աշխատցընելու՝ առատ վարձք տալով եւ հետերնին շատ քաղցրութեամբ վարուելով, միանգամայն ցեղապետներուն՝ մեծարանք ու հպատակներուն՝ եղբայրական սէր ցուցընելով, որպէս զի ճշմարիտ կրօնքի դառնալու ճամբայ բացուի: Աս էր թագուհւոյն հրամանը. տեսնենք հիմա թէ ինչպէս կատարուեցաւ:

Սպանիացիք Հնդիկներն իրենց ծառայութեանց կը գործածէին. եւ տուած վարձքերնին ոչինչ բան մըն էր: Կրօնքի վարդապետութիւն սորվեցընելը բոլորովին մէկդի թող կու տային, եւ մկրտելով ամէն բան կը լմնցընէին: Զանոնք տըոյմով կնկտոցմով

հեռու տեղեր կը խաւրէին, եւ ով՛ որ քիչ մը ատեն կը հանգչէր, ծեծի տակ ոսկրները կը կոտրէին: Կերակրոյ տեղ միայն կտոր մը արմատ ալիւրէ շինուած հաց կու տային. խեղճերը շատ անգամ անօթութենէ անանկ կը նեղուէին, որ կը ստիպուէին Սպանիացւոց սեղանէն ինկած ոսկրները կրծել: Ա՛ս դանդաղ ու տկար մարդիկներուն վրայ դրուած աշխատութիւնները՝ անանկ սաստիկ էին որ եւ ոչ զօրաւոր մարդիկ կրնային դիմանալ: Թէ որ ալ չկրնալով դիմանալ՝ անտառները փախչէին, Սպանիացիք անասուն որսալու պէս վրանին կ'երթային ու իրենց անհնազանդութեան համեմատ կը պատժէին: — Ութ ամիս միօրինակ հեռու տեղեր հանք հանելու պիտ՛որ աշխատէին: Շատերը չկրնալով դիմանալ կը մեռնէին. իսկ տեղերնին դարձողներուն վրան զօրութիւն մնացած չէր ըլլար. շատերն ալ ճամբան կը մեռնէին, որովհետեւ այնպէս յոգնած տկարացած՝ երկայն ճամբուն չէին կրնար դիմանալ:

Քաարակուայի գեղեցիկ դաշտերուն վրայ Անագոանային հպատակներն ալ աս վիշտերը կը քաշէին: Անոնց ցեղապետները՝ զիրենք չարչարող Սպանիացւոց հետ քանի մը անգամ կռիւ ըրին: Անկից Օվանտոյ միտքը դրաւ որ Անագոանան ալ կ'ուզէ ապստամբիլ, ելաւ զօրքով Քաարակուայ գնաց,

իբրեւ թէ հարկ ժողվելու համար կ'երթայ։ Ասիկա այն միջոցին էր երբ որ Տիէկոյ Մենտէզ եկաւ իրմէ խնդրելու որ զԿոլոմբոս ազատէ։ Անագոանա Սպանիացւոց ամենուին անհաւատարմութիւն մ'ըրած չէր. միշտ կը ջանար ձեռքէն եկած օգնութիւնն անոնց ընելու, եւ թէպէտ անգթութիւններին կը տեսնէր, ի վերայ այսր ամենայնի անոնց քաղաքականութեան առաւելութեան համար միշտ զիրենք մեծ կը համարէր։ Երբ որ Օվանտոյին զօրքով այն կողմերը գալն իմացաւ, կարծեց որ իրեն հետ բարեկամութիւն հաստատելու համար կու գայ, ինչպէս որ առաջ ծովապետին եղբայրը՝ Բարթողիմէոս եկած էր։ Ուստի եւ բոլոր ցեղապետները ժողվեց, եւ իր հպատակներէն մեծ խումբ մը հետն առած՝ կուսակալին դիմացը գնաց, եւ աս հանդիսով զՕվանտոյ իր տունը տարաւ։ Շատ օրեր զանազան խաղեր խաղցընել ու պար բռնել կու տար, եւ ամէն եղանակաւ ջանաց որ իր սէրն ու մեծարանքը ճերմակ մարդիկներուն ցուցընէ։

Աս եղանակաւ ատեն մը Անագոանա զԲարթողիմէոս զարմացուցած ու անկէ պատիւ գտած էր, եւ նոյն ժամանակէն ի վեր ամենուին իր վարմունքն ու հաւատարմութիւնը չէր փոխած։ Բայց Օվանտոյ միշտ կասկածի մէջ էր, եւ աս տեսածներն ամե-

նեւին սիրտը չշարժեցին։ Միշտ կը կարծէր որ անիկա իր ու բոլոր Սպանիացւոց մահուան կը բաղձայ։ Աս երեւակայական չարեաց առջեւն առնելու՝ իր անգթութիւնն ուրիշ ճար մը չգտաւ, բայց եթէ զանոնք սպաննել. ուր որ եթէ իր երեւակայած դաւն ստոյգ ալ ըլլար՝ խափանելը շատ դիւրին էր. որովհետեւ փորձը յայտնի ցուցուցած էր թէ Սպանիացիներուն որչափ դիւրին էր մերկ ու աւանց զէնքի Հնդիկներուն յաղթելը։

Օվանտոյ իր վախճանին հասնելու համար ուզեց նենգութիւն մը բանեցընել. Անագոանային ըսաւ որ ես քեզի սպանիական մեծ հանդէս մ՚ընեմ։ Հնդիկները շատ սիրով կը տեսնէին աս տեսակ հանդէսները, որոնց մէջը աղէկ վարժած ձիեր եւ փառաւոր հագուած ձիաւորներ շատ դժուարին կռիւներ ու խաղեր կը ձեւացընէին։ Ոսկին, ձիերու աղուոր ծածկոցներն ու փայլուն զէնքերը շատ կը զմայլեցընէին զցեղապետները, որոնք ժողվուած էին աս խաղերը տեսնելու համար։

Հանդիսին օրը առտուանց ձիաւորներն եկան դաշտի մը վրայ ժողվուեցան պատըշգամի մը առջեւ՝ ուսկից որ Հնդիկներուն գլխաւորները հանդէսը պիտի տեսնէին։ Ցեղապետներն աղաչեցին որ խաղը սկսի։ Օվանտոյ նշանը տուաւ. բայց ձիաւորները խաղի

սկսելու տեղ՝ պատշգամը պաշարեցին, բոլոր ցեղապետները բռնեցին, եւ իրենց Թագուհւոյն հետ մէկտեղ գերի ըրին: Անգութ Օվանտոյ բոլոր ցեղապետները քննութեան տակ ձգեց, եւ սաստիկ տանջանքներ տալով՝ իր ուզածն անոնց բերնէն առաւ: Ասկէ ետքը հրամայեց որ զիրենք պատշգամին սիւներուն կապեն ու կրակ տան. եւ այսպէս ամէնն ալ բոցերու մէջ այրեցան: Նոյն ժամանակը հանդէսը տեսնելու համար եկած Քսարակուայի բնակիչներն ալ սաստիկ անգթութեամբ ջարդուեցան: Սպանիացիք ան աստիճանի կատղած էին որ ամենեւին մարդու չխնայեցին. մէջերնէն քանի մը հոգի ուզեցին մէկ երկու տղաք ազատել, բայց կատաղի ընկերներնին զանոնք իրենց պաշտպաններուն ձիերուն գաւակին վրայ սպաննեցին: Քանի մը հոգի փախչելով՝ ծովեզերքն եկած եւ ծառակուրներու մէջ մտնելով մօտ կղզի մը գացած էին, անոնց ալ ետեւէն գացին ու գերի բռնեցին:

Իսկ զԱնագոանա, առին Ս. Դոմինիկոս բերին, եւ տանջանքներու մէջ իր հպատակներուն բերնէն առնուած խօսքերուն համեմատ դատելով՝ դատապարտեցին ու գազանասիրտ Սպանիացւոց աչքին առջեւը կախեցին:

Ահաւասիկ աս զարհուրելի արշաւանքին համար Օվանտոյ զՔրիստափոր Կոլոմբոս

Ճամայիգա կղզւոյն վրայ այնչափ ատեն թողուցած էր: Աս գեղեցիկ երկիրը՝ զորն որ բնութիւնն իր ամէն պարգեւներովը զարդարած, էր, Օվանտոյին ձեռքը աս խեղճութեան հասաւ: Եղիսաբէթ թագուհին հիւանդ ու մեռնելու անկողնոյն վրայ Սպանիոլա կղզւոյն մէջ եղած աս խեղճութիւնները լսելով՝ շատ բարկացաւ: Անագոանա իշխանուհւոյն մահուան վրայ լացաւ, զորն որ Կոլոմբոսին պատմութիւններն իրեն շատ սիրելի ըրած էին. եւ մեռնելուն մօտ թագաւորէն պահանջեց որ անմիջապէս զՕվանտոյ ետ կանչէ:

## ԺԵ.

### *Կոլոմբոսի Սպանիա դառնալը:*

Ծովապետը 1504ին Սեպտեմբերի 12ին ճամբայ ելաւ Սպանիա դառնալու: Կարծես թէ աս չորրորդ դժբախտ ճամբորդութեան սկիզբէն մինչեւ վերջը հարկ եղած էր ամէն ցաւերու դէմ կռուիլ: Հիւանդութիւնը րոպէ մը հանգիստ չէր թողուր, ալէկոծութիւնն անպակաս էր, որով քանի մը անգամ իր նաւերը վնասեցան: Երբ որ նաւահանգիստ հասաւ, զինքը Սեւիլլա տանել տուաւ: Հոն լսեց որ թագուհին ծանր հիւանդ էր. ասոր վրայ շատ ցաւեցաւ, որովհետեւ զԵղիսաբէթ իբրեւ իր բարերարը շատ կը

սիրէր, եւ միայն անկէ արդարութիւն ու պաշտպանութիւն կը սպասէր։ Իր որդւոյն գրած Թղթերէն մէկուն մէջը այսպէս կ'ըսէ. Աստուած մեր Թագուհւոյն առողջութիւն տայ. վասն զի ինք միայն կրնայ խառնաշփոթ բաները կարգի դնել։

Իրօք ալ բոլոր իր գործքերը մեծ խառնակութեան մէջ էին. իր մուտքերը չէին տար, իր մարդիկներուն հատուցում ընել չէին ուզեր։ Հիւանդութիւնը Թող չէր տար որ ինք անձամբ արքունիքն երԹայ. եւ իր Տիէկոյ որդին՝ որն որ իր տեղը պիտի գործէր, Փերդինանդոսին յապաղութիւններէն կը վհատէր։ Գուցէ ոմանց աս Կոլոմբոսին խեղճութեան պատմութիւնն անստոյգ երեւայ։ Բայց աՀաւասիկ ինք իր որդւոյն այսպէս կը գրէ՝ իմ եկամուտներէս ամենեւին բան մ'ընդունած չունիմ, ու փոխով կ'ապրիմ։ Քսան տարի այնչափ աշխատութիւններով ու վտանգներով լըրած ծառայութենէս շատ քիչ շաՀ ունեցայ, որովՀետեւ Սպանիայի մէջ գլուխս դնելու տեղ մը չունիմ։ Թէ որ կերակուր ուտել կամ քնանալ ուզեմ, պէտք է որ պանդոկ երԹամ, եւ Հոն ալ շատ անգամ վճարելու ստակ չեմ ունենար։ Իր ընկերներն ալ նոյն խեղճութեան մէջն էին։

Այսպէս ինք իրաւունքը խնդրելու եւ ինքը զինքը պաշտպանելու եւ ապերախտութեան դէմ կռուելու զբաղած ատեն՝ թագուհին մեռաւ։ Աս կորուստն իրեն մեծ ցաւ պատճառեց, որովհետեւ անոր մեռնելովն իր մէկհատիկ պաշտպանը կորսնցուց։ Փերդինանդոս թագաւորը՝ որ միայն իր շահը կը փնտռէր, տեսնելով որ Կոլոմբոսին մահը մօտ է եւ անկէ ետեւ իրեն օգուտ մը չիկրնար ունենալ, ամենեւին հոգ չէր տաներ. մանաւանդ որ մտքին մէջ անոր դէմ միշտ կասկած ունենալով՝ իշխանութիւն մը տալ չէր ուզեր։ Ծովապետին բարեկամներուն, եղբարցն ու ազգականներուն մեծամեծ խոստումներ կ'ընէր, բայց ամենեւին չէր կատարեր։ Կոլոմբոս ալ այնչափ անգամ բողոքելէն ձանձրացած՝ այսպէս կը գրէ. Կ'երեւայ որ թագաւորը պատշաճ չիտեսներ իրմէ ու թագուհիէն ընդունած խոստմունքներս կատարել. իր կամացը դէմ դնելը՝ հովի դէմ կռուիլ է։ Ես ինչ որ պէտք էր ընել նէ՝ ըրի. Մնացածն Աստուծոյ կը թողում, որն որ իմ ամէն կարօտութիւններուս մէջ ինծի օգնական եղած է։

Աս ապերախտութիւնն իր մահը շուտցուց։ Կոլոմբոսի ցաւերը սաստկացան. իմացաւ որ հիւանդութիւնն անբժշկելի է։ Իր հոգին մահն ընդունելու պատրաստեց։ Վեր-

չին օրերը բոլոր իր կենաց ընթացքին նկարագիրն էին. բոլոր կենաց մէջ ցուցուցած վըստահութիւնը, պարտքերը կատարելու ճշդութիւնը, համեստութիւնն ու արիութիւնը մինչուան ժամանակն ալ ունէր: Շատ խոնարհութեամբ մեղքերը խոստովանեցաւ, կատարեալ հաւատքով սուրբ խորհուրդները ընդունեցաւ, եւ "Տէր, ի ձեռս քո յանձն առնեմ զհոգի իմ" ըսելով, հոգին աւանդեց 1506ին, Մայիսի 20ին 65 տարեկան:

Բոլոր իր կենացը մէջ իր հոգւոյն ու իր բախտին հոգը Աստուծոյ ձեռքը յանձնած էր. Աստուած ալ իր բախտը շատ մեծ ըրաւ: Իր կրածները՝ պէտք չեն իր ըրածները մոռցընել տալ. ինք հասարակ նաւավար մը եւ հասարակ ծնողաց որդի ըլլալով՝ իր խելքովը կրցաւ ծովէն անդին Նոր երկիր մը գըտնել, ծովապետի ու փոխարքայի աստիճան բարձրացաւ: Իր մահուընէ ետքը ընտանիքին ան պատիւներն ընդունեցաւ՝ զորոնք իր կենդանութեան ատեն իրեն զլացած էին: Իր աղէկ վարմունքը՝ ամենէն երեւելի մարդիկներուն մէջ իրեն միշտ պատուական տեղ մը կը սահմանէ: Թէ որ Հնդիկներուն հետ քանի մը առիթներու մէջ խստութեամբ վարուելուն ու զիրենք գերիի պէս ծախելու խորհուրդ տալովը սխալեցաւ նէ, անոնք պէտք

չէ այնչափ իրեն տալ, որչափ իր ժամանակին եւ գտնուած պարագաներուն՝ որոնք շատ անգամ մեծամեծ յանցանքներն ալ կը թեթեւցընեն: Ինք իր յանցանքները անկեղծութեամբ կը ճանչնար, եւ կը զրուցէր որ ըրած սխալմունքները՝ իր տկարութենէն ու գիտութեան պակասութենէն էր, չէ թէ սրտին չարութենէն՝ ան որ միշտ բարի եղաւ եւ միշտ բարին խնդրեց: Իր գործքը դեռ կեցած է, եւ միշտ պիտի կենայ. գրեթէ բոլոր Ամերիկան քրիստոնեայ ու քաղաքականութեամբ ծաղկած է: Թէ որ Սպանիացւոց անգթութիւնը՝ Նոր երկրին մէջ իրենց առաջին բնակութիւններն արեան հեղեղներով ողողեց նէ, աս չարեաց պատճառը մարդուս կիրքն է, եւ դժբախտութեամբ ամէն յաղթութեանց ու ասպատակութեանց պատմութեան մէջ նոյն չարիքը շատ կամ քիչ կը գտնուի: Կոլոմբոս Ամերիկա գտնելու պարծանքն ունի, բայց անկէ հետեւած չարիքներուն ամենեւին իրմէ պատճառած չեն:

Կարծես թէ աս մեծ մարդուն մեռնելովը մարդիկներէն կրած անիրաւութիւններն ալ դադրեցան: Մարմինը՝ փառաւոր յուղարկաւորութեան հանդէս մը ընելէն ետքը՝ Սեւիլլայէն Վալլատոլիտ տարին, Վալլատոլիտէն Ս. Դոմինիկոս, անկից ալ Գուպա, ուր որ մինչեւ հիմա կեցած է: — Փերդինան-

դոսին հրամանաւը, գերեզմանին վրայ աս տապանագիրը դրուեցաւ. Կաստիլիայի ու Լէոնի (Թագաւորութեան) համար Կոլոմբոս Նոր Աշխարհք մը գտաւ։

Բարթողիմէոս եղբայրը ծովապետին մահուընէն ետեւ շատ չապրեցաւ։ Տիեկոյ Կոլոմբոս՝ ծովապետին մեծ որդին չորս տարի վերջը փոխարքայի պատուով Ս. Դոմինիկոս խրկուեցաւ։ Սպանիայի արքունեաց ամենէն երեւելի իշխանին՝ Ալպայի դքսին աղջկան հետ կարգուած էր։ Իսկ երկրորդ որդին Ֆերդինանդոս ինք զինքն ուսման տուաւ եւ հօրը պատմութիւնը գրեց։



